

ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՈՒՍՏԻՆՈՎԻՉ ՉԵՌՆԵՆԿՈ



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


**2**

ՓԵՏՐՎԱՐ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1984** թվականի փետրվարի 13-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի արտահերթ պլենումը:

Կենտկոմի քաղբյուրոյի հանձնարարությամբ պլենումը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Յու. Վ. Անդրոպովի մահվան առթիվ Կենտկոմի պլենումի մասնակիցները մեկ րոպե վշտալի լռությամբ հարգեցին Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի հիշատակը:

Կենտկոմի պլենումը նշեց, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական ամբողջ ժողովուրդը ծանր կորուստ կրեցին: Կյանքից հեռացավ կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչը, բոցաշունչ հայրենասերը, լենինյանը, խաղաղության ու կոմունիզմի անխոնջ մարտիկը:

Կուսակցության կամքով գտնվելով կուսակցական ու պետական աշխատանքի կարևորագույն պոստերում, Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը իր բոլոր ուժերը, գիտելիքները և հսկայական կենսական փորձը նվիրաբերում էր կուսակցության քաղաքականության իրականացմանը, մասսաների հետ կուսակցության կապերի ամրապնդմանը, Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդմանը:

Յու. Վ. Անդրոպովը մեծ ուշադրություն էր նվիրում ՍՄԿԿ XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի ետհամագումարյան պլենումների մշակած՝ արտադրության համակողմանի ինտենսիֆիկացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման, կադրերի պատասխանատվության բարձրացման, կազմակերպվածության ու կարգապահության ուժեղացման, ժողովրդի կյանքի նյութական ու հոգևոր մակարդակի անշեղ աճի գծի կենսագործմանը:

Յու. Վ. Անդրոպովը մեծ ավանդ է ներդրել սոցիալիստական ընկերակցության երկրների բազմակողմանի համագործակցության զարգացման, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության ու համախմբվածության ամրապնդման գործում, ի պաշտպանություն ժողովուրդների ազատության ու անկախության արդարացի պայքարի: Նրա ղեկավարությամբ միջազգային ասպարեզում հետևողականորեն և հաստատակամորեն իրականացվում էր մեր կուսակցության ու պետության արտաքին քաղաքականության լենինյան կուրսը՝ ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքի

վերացման, իմպերիալիզմի ագրեսիվ մեքենայություններին խորտակիչ հակահարված հասցնելու, խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման կուրսը:

Պլենումն ընդգծեց, որ այս վշտալի օրերին կոմունիստները, ամբողջ սովետական ժողովուրդը իրենց շարքերը է՛լ ավելի սերտորեն են համախմբում կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը, լի են վճռականությամբ անձնվիրաբար պայքարելու հանուն կուսակցության լենինյան ներքին ու արտաքին քաղաքականության կենսագործման:

Կենտկոմի պլենումի մասնակիցները խորին ցավակցություն հայտնեցին հանգուցյալի հարազատներին և մերձավորներին:

Կենտկոմի պլենումը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրելու հարցը:

Կենտկոմի քաղբյուրոյի հանձնարարությամբ այդ հարցի առթիվ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ա. Տիխոնովը: Նա առաջարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրել ընկ. Կ. Ու. Չեռնենկոյին:

Պլենումը միաձայն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընտրեց ընկ. Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյին:

Այնուհետև պլենումում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն: Նա սրտագին շնորհակալություն հայտնեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի կողմից իրեն ցույց տրված բարձր վստահության համար:

Ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, կոմունիստական կուսակցությանը հավաստիացրեց, որ իր բոլոր ուժերը, գիտելիքներն ու կենսական փորձը կգործադրի մեր երկրում կոմունիստական շինարարության խնդիրների հաջող կատարման համար, ՍՍՀՄ-ի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման՝ ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրների լուծման գործում ժառանգորդության ապահովման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման, խաղաղության ամրապնդման, կուսակցության լենինյան ներքին ու արտաքին քաղաքականության իրականացման գործում, որ վարում են կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը:

Դրանով Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

# ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

*Թանկագին ընկերնե՛ր:*

*Կենտրոնական կոմիտեի անդամներին ի սրտե շնորհակալություն եմ հայտնում ինձ ցույց տրված բարձր պատվի՝ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրելու համար: Ես լիովին գիտակցում եմ այն մեծ պատասխանատվությունը, որ դրվում է ինձ վրա: Հասկանում եմ, թե ինչպիսի կարևոր, ինչպիսի բացառիկորեն բարդ աշխատանք է սպասվում: Կենտրոնական կոմիտեին, կուսակցությանը հավաստիացնում եմ, որ բոլոր ուժերս, գիտելիքներս, իմ ամբողջ փորձը կգործադրեմ, որպեսզի արդարացնեմ վստահությունը, որպեսզի ձեզ հետ միասին շարունակենք մեր կուսակցության այն սկզբունքային գիծը, որ հետևողականորեն ու հաստատակամորեն կենսագործում էր Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը:*

*Կազմակերպչական տաղանդ, ստեղծագործական պայծառ միտք, տեսության ու քաղաքականության մեջ հավատարմություն լենինիզմին, նորի սուր զգացողություն և մասսաների կենդանի փորձը իր մեջ խտացնելու ընդունակություն, անհաշտ վերաբերմունք այն ամենի նկատմամբ, ինչը խորթ է մեր աշխարհայացքին ու ապրելակերպին, մեր բարոյականությանը, անձնական հմայք ու համեստություն՝ այս ամենի շնորհիվ Յուրի Վլադիմիրովիչը հսկայական հեղինակություն և հարգանք էր վաստակել կուսակցության և ժողովրդի մեջ:*

*Կուսակցությունը նրան հանձնարարում էր աշխատանքի բարդ և պատասխանատու տեղամասեր: Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի քաղաքական ու մարդկային լավագույն հատկանիշները առանձնակի ցայտունությամբ բացահայտվեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստերում: Նա իրեն չէր խնայում՝ ձգտելով միշտ գտնվել իր առջև դրված խնդիրների բարձրության վրա:*

*Յուրի Վլադիմիրովիչը անձնական ծանրակշիռ ավանդ ներդրեց արդի փուլում կուսակցության համակողմանիորեն կշռադատված և ռեալիստական կուրսի՝ զարգացած սոցիալիզմի կատարելագործման կուրսի, մշակման ուղղությամբ Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի կոլեկտիվ գործունեության մեջ: Նրա ղեկավարությամբ անցան ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան ու դեկտեմբերյան պլենումները, որոնք կարևոր ուղենիշ եղան կուսակցության ու ժողովրդի կյանքում: Պլենումների որոշումներում հետագա ստեղծագործական զարգացում և կոնկրետացում ստացավ ՍՄԿԿ XXVI համագումարի քաղաքական գիծը:*

*Յու. Վ. Անդրոպովը շատ ուժ ու եռանդ էր նվիրաբերում սովետական մարդկանց ստեղծարար աշխատանքի խաղաղ պայմանների ապահովման, միջազգային ասպարեզում սոցիալիզմի դիրքերի ամրապնդման համար մղվող պայքարին:*

*Յուրի Վլադիմիրովիչը լավ հասկանում էր. կուսակցության հեղինակության աղբյուրն այն է, որ իր ղեկավար դիրքը, իր ավանգարդային պատվավոր դերը կուսակցությունը նվաճել է և ամրապնդում է ժողովրդին անձնվիրաբար ծառայելով, աշխատավորների շահերը ճշգրիտ արտահայտելու, գործողությունների մարքս-լենինյան ճշմարիտ ծրագրով նրանց զինելու կարողությամբ:*

*ՍՄԿԿ-ի ներքին ու արտաքին քաղաքականության ճշտության, ժամանակի պահանջներին ու ոգուն նրա համապատասխանության համոզիչ վկայությունն է այդ քաղաքականությանը ցույց տրվող համաժողովրդական ջերմ պաշտպանությունը: Կուսակցությունը անսասանորեն ընթանում է ընտրած ուղիով՝ կոմունիստական արարման ու խաղաղության ուղիով:*

Այդպես է եղել մինչև հիմա։ Այդպես կլինի միշտ։

Բայց մենք բոլորս էլ հասկանում ենք, ընկերնե՛ր, որ այդ ուղիով ընթանալու միայն ցանկությունը քիչ է։ Պետք է կարողանալ ոչ միայն առաջադրել ճիշտ նպատակներ, այլև համառորեն հասնել դրանց, հաղթահարելով ամեն տեսակ դժվարություններ։ Պետք է ռեալիստորեն գնահատել ձեռք բերվածը, առանց գերագնահատելու, բայց և առանց նսեմացնելու այն։ Միայն այսպիսի մոտեցումն է զերծ պահում քաղաքականության մեջ սխալներ գործելուց, ցանկալին իրականության տեղ ընդունելու գայթակղությունից, թույլ է տալիս պարզորոշ տեսնել, ինչպես Լենինն է ասել, թե «Հատկապես ինչն ենք մենք «ավարտել» և ինչը չենք «ավարտել»»։

Մեր կուսակցության ու պետության ղեկավարի պոստում Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովին, ընկերնե՛ր, վիճակվեց գտնվել շատ կարճ, ցավալիորեն կարճ ժամանակ։ Մենք բոլորս կզգանք նրա պակասը։ Նա կյանքից հեռացավ այն մեծ ու լարված աշխատանքի ամենաթեժ պահին, որ նպատակ ուներ հուժկու թափ հաղորդել ժողովրդական տնտեսության զարգացմանը, հաղթահարել 70—80-ական թվականների սահմանագծին երկրին հանդիպած դժվարությունները։ Բայց բոլորս էլ գիտենք, թե կուսակցությանն ինչքան շատ բան հաջողվեց անել այդ կարճ ժամանակամիջոցում, թե նոր ու արդյունավետ ինչքան շատ բաներ քաղաքացիության իրավունք ստացան և հաստատվեցին պրակտիկայում։ Շարունակել և կոլեկտիվ ջանքերով է՛լ ավելի առաջ մղել Յուրի Վլադիմիրովիչի ղեկավարությամբ սկսված աշխատանքը՝ ահա նրա հիշատակին պատշաճը մատուցելու, քաղաքականության մեջ ժառանգորդությունն ապահովելու լավագույն եղանակը։

Ժառանգորդությունը ոչ թե վերացական հասկացություն է, այլ կենդանի, ռեալ գործ։ Եվ նրա էությունը ամենից առաջ այն է, որ առանց կանգ առնելու ընթանանք առաջ, ընթանանք՝ հենվելով նախկինում ամբողջ ձեռք բերվածի վրա, ստեղծագործաբար հարստացնելով ձեռք բերվածը, կոմունիստների, բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի կոլեկտիվ միտքը, եռանդը կենտրոնացնելով չլուծված խնդիրների, ներկայի և ապագայի հանգուցային պրոբլեմների վրա։ Եվ այս ամենը մեզ շատ բան է պարտավորեցնում։

Մեր կուսակցության ուժը նրա միասնության մեջ է, մարքսիզմ-լենինիզմին հավատարմության մեջ, մասսաների ստեղծագործական ակտիվությունը զարգացնելու և ուղղություն տալու, նրանց գաղափարապես ու կազմակերպորեն համախմբելու ընդունակության մեջ՝ առաջնորդվելով փորձված լենինյան սկզբունքներով ու մեթոդներով։ Դուք գիտեք, ընկերներ, թե մեր Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն, Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը վերջին ժամանակներս ինչպիսի հսկայական ուշադրություն են նվիրել պետական ապարատի աշխատանքի կատարելագործման, կուսակցական ղեկավարման ոճի բարելավման հարցերին։ Դրանցից մեկը պետական ու տնտեսական մարմինների խնդիրներից կուսակցական կոմիտեների ֆունկցիաների հստակ սահմանազատումն է, նրանց աշխատանքի կրկնօրինակման վերացումը։ Սա քաղաքական նշանակություն ունեցող խոշոր հարց է։ Եվ անկեղծ ասած, ամեն ինչ չէ, որ այստեղ, ինչպես հարկն է, կարգավորված է։

Պատահում է, որ սովետների, մինիստրությունների, ձեռնարկությունների աշխատողները հանդես չեն բերում անհրաժեշտ ինքնուրույնություն, կուսակցական մարմինների վրա են գցում այն հարցերը, որ պետք է հենց իրենք լուծեին։ Տնտեսական ղեկավարների փոխարեն աշխատելու պրակտիկան անտարբեր է դարձնում կադրերին։ Ավելին, դա հղի է կուսակցական կոմիտեի՝ որպես քաղաքական ղեկավարման մարմնի դերի թուլացման վտանգով։ Տնտեսությամբ զբաղվելը կուսակցական կոմիտեների համար նախ և առաջ նշանակում է զբաղվել տնտեսությունը վարող մարդկանցով։ Սա հարկավոր է միշտ հիշել։

Ընկերներ, մեկուկես ամիս առաջ, Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում մենք տվեցինք երկրի սոցիալ-տնտեսական զարգացման բնագավառում տիրող վիճակի համակողմանի գնահատականը։ Ընդունված որոշման մեջ հատկապես ընդգծված է, որ այժմ կարևոր է պահպանել ձեռք բերված տեմպը, խնդիրների



գործնական լուծման ընդհանուր տրամադրությունը, անշեղորեն բարձրացնել էկոնոմիկայի կուսակցական ու պետական ղեկավարման մակարդակը, ավելի ակտիվորեն զարգացնել դրական միտումները, դրանց կայուն բնույթ տալ։ Պլենումի այս հիմնադրույթների հետևողական կատարումը մեր ուղղակի պարտականությունն է։

Մեր ամբողջ փորձը հաստատում է. կուսակցության ուժի կարևորագույն աղբյուրը միշտ եղել է, կա և կլինի նրա կապը մասսաների հետ, միլիոնավոր աշխատավորների քաղաքացիական ակտիվությունը, նրանց՝ տիրոջ վերաբերմունքը արտադրության գործերին, հասարակական կյանքի պրոբլեմներին։

Կոմունիստների կուսակցության պարտքն է իր կուրսը, իր վճիռները, գործողությունները մշտապես համադրել նախ և առաջ բանվոր դասակարգի խոհերի հետ, նրա սոցիալ-քաղաքական ու դասակարգային վիթխարի զգայնունակության հետ։

Վլադիմիր Իլյիչ Լենինը միշտ բարձր էր գնահատում բանվոր մարդու շիտակությունը, նրա դատողությունների կենսական հիմնավորվածությունն ու հստակությունը, զգայուն կերպով էր վերաբերվում նրա կարծիքին, իրադարձությունների ու մարդկանց գնահատմանը, փնտրում և նրանց մեջ էր գտնում ամենահրատապ հարցերի պատասխանները։

Անսալ բանվորական միջավայրից բխող, սոցիալիստական շինարարության առաջավոր գծից եկող խոսքին, խորհուրդ անել աշխատավոր մարդկանց հետ՝ սա այսօր էլ պետք է լինի յուրաքանչյուր ղեկավար կոմունիստի առաջնագույն պարտականությունը, նրա ներքին խոր պահանջմունքը։

Կարողանալ ժամանակին տեսնել և զորավիգ լինել ժողովրդական նախաձեռնությանը, ընդ որում՝ ամենալայն առումով՝ աշխատատեղում կատարվող գործի նկատմամբ տիրոջական, ստեղծագործական վերաբերմունքից սկսած մինչև ակտիվ մասնակցությունը պետության, հասարակության կառավարմանը, սա է մեր առաջադիմության մեծագույն, կարելի է ասել՝ անսպառ ռեզերվը։

Մեր էկոնոմիկան իր յուրաքանչյուր խոշոր նվաճումով այս կամ այն չափով պարտական է աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնություններին, նրանց սեփական, ինչպես ընդունված է ասել՝ հանդիպական պլաններին։

Խոր գոհունակություն է պատճառում այն, որ երկրի աշխատավորական կոլեկտիվները լայնորեն արձագանքեցին դեկտեմբերյան պլենումի կոչին՝ հասնել աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի 0,5 տոկոս լրացուցիչ իջեցման։ Այն հայրենասիրական խանդավառությունը, եռանդն ու գործարարությունը, որոնցով աշխատավորները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները ձեռնամուխ են եղել այդ խնդրի լուծմանը, վստահություն են ներշնչում, որ հաջողությունը կապահովվի։

Կարծում եմ, որ պետք է քննության առնել այն հարցը, որ դրա շնորհիվ ստացվելիք բոլոր միջոցներն ու ռեսուրսները, իսկ դրանք քիչ չեն, հատկացվեն սովետական մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը, բժշկական սպասարկմանը, բնակարանային շինարարությանը։ Դա լիովին կհամապատասխաներ կուսակցության քաղաքականության բարձրագույն նպատակին՝ մարդու բարօրության նկատմամբ համակողմանի հոգատարությանը։

Առհասարակ, ընկերներ, մենք ըստ երևույթին պետք է մտածենք այն մասին, որ աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունները, նորարարությունը ավելի լավ խթանվեն նյութապես և բարոյապես։

Սովետական կարգերի բուն հիմքում է դրված սոցիալական արդարությունը։ Եվ դրանում է նրա հսկայական ուժը։ Ուստի շատ կարևոր է, որ դա անշեղորեն կիրառվի ամենօրյա գործերում, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է աշխատավարձին ու պարգևավճարներին, բնակարանների կամ ուղեգրերի բաշխմանը, պարգևատրումներին, մի խոսքով՝ պետք է հասնել այն բանին, որ ամեն ինչ արվի արդարությամբ, մեր ընդհանուր գործի մեջ յուրաքանչյուր մարդու ներդրած աշխատանքային ավանդին համապատասխան։

Քիչ անելիքներ չունեն կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները։ Շատ բան էլ կախված է հենց աշխատավորական կոլեկտիվներից։ Նրանք այժմ ունեն օրենսդրական կարգով ամրապնդված մեծ իրավունքներ։ Միայն մնում է, որ դրանք ավելի լրիվ օգտագործվեն։

Վերջին ժամանակներս կուսակցությունը հարստացել է սոցիալիստական հասարակության ղեկավարման նոր փորձով։ Մենք սկսել ենք ավելի լավ օգտագործել մեր կարգերի առավելություններն ու հնարավորությունները։ Անտարակույս, դրանց թվին են պատկանում մասսաների կազմակերպվածությունն ու գիտակցականությունը։ Այստեղից էլ՝ մեր ուշադրությունը կարգուկանոնի, կարգապահության ամրապնդմանը։

Կազմակերպվածության, կարգուկանոնի հարցերը մեզ համար հանգուցային, սկզբունքային բնույթ են կրում։ Սրանում երկու կարծիք չի կարող լինել։ Ամեն մի անկազմակերպվածություն, անպատասխանատվություն հասարակության համար վերածվում են ոչ միայն նյութական ծախսերի։ Դրանք սոցիալական, բարոյական լուրջ վնաս են հասցնում։ Այս բանը մենք՝ կոմունիստներս, լավ ենք հասկանում, հասկանում են միլիոնավոր սովետական մարդիկ։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ հիրավի համաժողովրդական հավանության արժանացան աշխատանքային, արտադրական, պլանային, պետական կարգապահության բարձրացման, սոցիալիստական օրինականության ամրապնդման նպատակներով կուսակցության ձեռնարկած միջոցառումները։

Այս բնագավառում հաջողվել է արդեն ինչ-որ բան անել։ Եվ բոլորը գիտեն, թե դա ինչպիսի բարերար ներգործություն է ունեցել արտադրական գործերի, մեր հասարակական կյանքի վրա և պարզապես մարդկանց տրամադրության վրա։ Բայց ճիշտ չէր լինի կարծել, թե ամեն ինչ արդեն արված է։ Ո՛չ, ընկերներ, կյանքն ուսուցանում է, որ այստեղ ինքնահանգստացումը բնավ թույլատրելի չէ։

Ինչ վերաբերում է մեր էկոնոմիկայի զարգացման հիմնական ուղղություններին, ապա դրանք հստակորեն սահմանված են կուսակցության կողմից։ Ինտենսիվացումը, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արագ արմատավորումը, կոմպլեքսային խոշոր ծրագրերի իրականացումը՝ այս ամենը վերջին հաշվով պետք է որակապես նոր մակարդակի բարձրացնի մեր հասարակության արտադրողական ուժերը։

Լուրջ վերակառուցման կարիք ունեն էկոնոմիկայի կառավարման համակարգը, մեր ամբողջ տնտեսական մեխանիզմը։ Այս ասպարեզում աշխատանքը դեռ նոր է սկսվել։ Դա ընդգրկում է ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման և նրանց պատասխանատվության բարձրացման լայնամասշտաբ տնտեսափորձը։ Որոնվում են սպասարկումների ոլորտում տնտեսավարության նոր ձևեր ու մեթոդներ։ Անտարակույս, դրանք օգտակար շատ բան կտան, մեզ կօգնեն լուծելու ստրատեգիապես կարևոր պրոբլեմը՝ բարձրացնելու ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետությունը։

Սակայն եկեք ինքներս մեզ հարց տանք. իսկ այնպես չի՞ ստացվի, որ տնտեսափորձերի արդյունքների սպասելը որոշ տնտեսական ղեկավարների կօգնի քողարկել իրենց պասիվությունը, հին ձևով աշխատելու ձգտումը։ Տնտեսական կառուցվածքների նորացումը, իհարկե, պատասխանատու գործ է։ Այստեղ չի խանգարի նաև վաղնջական իմաստուն կանոնի պահպանումը՝ յոթ անգամ չափիր, մեկ անգամ ձևիր։ Բայց սա բնավ չի արդարացնում նրանց, ովքեր առհասարակ չեն ուզում հաշվի առնել փոփոխված պայմանները, կյանքի նոր պահանջները։

Բոլոր մակարդակներում հանդես բերել ավելի շատ ինքնուրույնություն, համարձակորեն որոնումներ կատարել, եթե հարկավոր է՝ արդարացված ռիսկի դիմել հանուն էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, ժողովրդի բարեկեցության աճի՝ ահա թե մենք ինչ ենք սպասում մեր տնտեսական կադրերից։

Դուք գիտեք, որ ՍՄԿԿ Կենտկոմն ու կառավարությունը անցյալ տարի մշա-



կեցին և մի շարք որոշումներ ընդունեցին էկոնոմիկայի զարգացման սկզբունքային հարցերի վերաբերյալ։ Այդ որոշումները կուսակցական ու տնտեսական մարմինների ձեռքը տվեցին արտադրության արդյունավետության բարձրացման, երկրի տնտեսական զարգացման պրոցեսի արագացման որոշակի լծակներ։

Նախատեսված միջոցառումները, իսկ դրանք ունեն ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական մեծ նշանակություն, կկենսագործվեն լոկ այն դեպքում, եթե դրանց կատարումը դառնա յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր աշխատողի ամենօրյա աշխատանքի գլխավոր բովանդակությունը։

Լուծելով այսօրվա խնդիրները, մենք նախադրյալներ ենք ստեղծում ապագայում անհամեմատ ավելի բարձր բնագծերի հասնելու համար։ Միգուցե մեր վաղվա օրվա, տասներկուերորդ հնգամյակի մասին տակավին վաղ է հանգամանորեն խոսելը, բայց առաջիկա աշխատանքի գլխավոր պրոբլեմները, գլխավոր ուղղությունները երևում են արդեն հիմա։

Նոր հնգամյակը նախ և առաջ պետք է դառնա արտադրության մեջ որակական խոր փոփոխությունների սկիզբը, դառնա մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում վճռական բեկման հնգամյակ։ Ժամանակակից նյութատեխնիկական բազան և կառավարման համակարգը պետք է ձեռք բերեն նոր, ավելի բարձր հատկանիշներ։

Այժմ պակաս կարևոր չէ, որ ապահովվի սովետական հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր առաջադիմության ավելի ու ավելի սերտ փոխադարձ կապ։ Էկոնոմիկան անկարելի է որակապես նոր մակարդակի բարձրացնել՝ առանց ստեղծելու դրա համար անհրաժեշտ սոցիալական և գաղափարախոսական նախադրյալներ։ Հավասարապես անկարելի է լուծել սոցիալիստական գիտակցության զարգացման հասունացած պրոբլեմները՝ առանց հենվելու տնտեսական ու սոցիալական քաղաքականության ամուր հիմքի վրա։

Կառուցել նոր աշխարհ՝ նշանակում է անդուլ կերպով հոգալ նոր աշխարհի մարդու ձևավորման մասին, նրա գաղափարաբարոյական աճի մասին։ Ինչպես հայտնի է, գաղափարախոսական, մասսայաքաղաքական աշխատանքի հարցերը հենց այս տեսանկյունից քննեց Կենտկոմի հունիսյան պլենումը։ Պլենումի հիմնադրույթներին համապատասխան, կուսակցությունը կձգտի աշխատանքը լիովին համապատասխանեցնել զարգացած սոցիալիզմի կատարելագործման մեծ ու բարդ խնդիրների բնույթին։

Իմաստավորել այս խնդիրները իրենց կոմպլեքսի մեջ, սահմանել դրանց լուծման երկարաժամկետ հստակ ստրատեգիան, ցույց տալ մեր ընթացիկ գործերի կապը կոմունիստական հեռանկարի հետ՝ ահա թե մեզ ինչ պետք է տա կուսակցական ծրագրի նոր խմբագրումը։ Դրա նախապատրաստմանը Կենտրոնական կոմիտեն հսկայական նշանակություն է տալիս։

Ընկերնե՛ր, մեր երկրի հետագա զարգացման պլանները մշակելիս մենք չենք կարող հաշվի չառնել աշխարհում ստեղծված դրությունը։ Իսկ այդ դրությունը, ինչպես գիտեք, այժմ բարդ է և լարված։ Նման պայմաններում առավել մեծ նշանակություն է ձեռք բերում արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության ու սովետական պետության ճիշտ կուրսը։

Կայուն խաղաղության, ժողովուրդների ազատության ու անկախության պայքարը միշտ էլ գտնվում էր Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի ուշադրության կենտրոնում։ Կենտկոմի քաղբյուրոն և մեր պետական իշխանության բարձրագույն մարմինները նրա ղեկավարությամբ ձևավորել են այդ ազնիվ սկզբունքներին համապատասխանող ակտիվ արտաքին քաղաքականություն, մարդկության համաշխարհային միջուկային պատերազմի սպառնալիքից փրկելու նպատակին ուղղված քաղաքականություն։ Խաղաղության այդ լենինյան քաղաքականությունը, որի հիմնական գծերը արդի պատմական փուլում սահմանված են ՍՄԿԿ-ի վերջին համագումարների որոշումներով, համապատասխանում է սովետական ժողովրդի և ըստ էության աշխարհի նաև մյուս ժողո-

վուրդների արմատական շահերին։ Եվ մենք վճռականորեն հայտարարում ենք. այդ քաղաքականությունից մենք ոչ մի քայլ չենք ընկրկի։

Միանգամայն պարզ է, ընկերներ, որ խաղաղության պահպանման ու ամրապնդման գործի հաջողությունը զգալի չափով կախված է այն բանից, թե որքան մեծ կլինի սոցիալիստական երկրների ազդեցությունը համաշխարհային ասպարեզում, թե որքան ակտիվ, նպատակասլաց և համաձայնեցված կլինեն նրանց գործողությունները։ Մեր երկրները կենսականորեն շահագրգռված են, որ խաղաղություն լինի։ Հանուն այդ նպատակի մենք կձգտենք ընդլայնել համագործակցությունը սոցիալիզմի բոլոր երկրների հետ։ Ըստ ամենայնի զարգացնելով և խորացնելով համախմբվածությունն ու համագործակցությունը սոցիալիստական ընկերակցության երկրների հետ՝ բոլոր ոլորտներում, իհարկե՝ ներառյալ նաև մի այնպիսի կարևոր ոլորտ, ինչպիսին է տնտեսականը, մենք դրանով իսկ մեծ ավանդ կներդնենք խաղաղության, առաջադիմության և ժողովուրդների անվտանգության գործում։

Դիմելով եղբայրական երկրներին, մենք ասում ենք. հանձին Սովետական Միության, դուք այսուհետև էլ կունենաք հուսալի բարեկամի և հավատարիմ դաշնակցի։

Մեր կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքականության հիմքերից մեկը եղել է և կլինի համերաշխությունը այն ժողովուրդների հետ, որոնք թոթափել են գաղութային կախման լուծը և թևակոխել ինքնուրույն զարգացման ուղի։ Եվ, իհարկե, հատկապես այն ժողովուրդների հետ, որոնք հարկադրված են վանելու իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի գրոհները, ուժեր, որոնք արյունալի բռնացման և պատերազմական հրդեհների շատ վտանգավոր օջախներ են ստեղծում աշխարհի մեկ այս, մեկ այն շրջանում։ Պաշտպանել ժողովուրդների արդար գործը, հանդես գալ վերոհիշյալ օջախների վերացման օգտին՝ սա նույնպես աշխարհի կայուն խաղաղության պայքարի անհրաժեշտ և կարևոր ուղղությունն է մեր օրերին։ Այս հարցերում մեր կուսակցության սկզբունքային դիրքավորումը պարզ է, հստակ ու ազնիվ, և մենք այդ դիրքավորմանը կհետևենք անշեղորեն։

Այժմ՝ կապիտալիստական երկրների հետ մեր հարաբերությունների մասին։ Մեծ Լենինը մեզ ավանդել է տարբեր հասարակարգերի պատկանող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը։ Մենք միշտ էլ հավատարիմ ենք այդ սկզբունքին։ Այժմ՝ միջուկային զենքի և գերճշգրիտ հրթիռների դարում այդ սկզբունքը ժողովուրդներին հարկավոր է ավելի, քան երբևէ։ Ցավոք, կապիտալիստական երկրների որոշ ղեկավարներ, ինչպես երևում է, դրանում իրենց պարզ հաշիվ չեն տալիս կամ էլ չեն ուզում տալ։

Մենք լավ ենք տեսնում այն սպառնալիքը, որ այսօր մարդկության համար ստեղծում են իմպերիալիզմի ագրեսիվ ուժերի անխոհեմ, արկածախնդրական գործողությունները, և այս մասին մենք ասում ենք ամբողջ ձայնով, այդ վտանգի վրա հրավիրելով ամբողջ երկրագնդի ժողովուրդների ուշադրությունը։ Մենք ռազմական գերազանցության կարիք չունենք, մենք մտադիր չենք ուրիշներին թելադրելու մեր կամքը։ Բայց մենք թույլ չենք տա խախտել ձեռք բերված ռազմական հավասարակշռությունը։ Եվ թող ոչ ոքի մեջ դույզն ինչ կասկած չմնա. մենք այսուհետև էլ կհոգանք այն մասին, որ ամրապնդենք մեր երկրի պաշտպանունակությունը, որ մենք բավարար միջոցներ ունենանք ռազմատենչ արկածախնդիրների տաք գլուխները սառեցնելու համար։ Սա, ընկերներ, խաղաղության պահպանման շատ էական նախադրյալն է։

Սովետական Միությունը, որպես սոցիալիստական մեծ տերություն, լիովին գիտակցում է ժողովուրդների հանդեպ ունեցած իր պատասխանատվությունը խաղաղության պահպանման ու ամրապնդման համար։ Մեր դռները բաց են բոլոր մայրցամաքների պետությունների հետ փոխշահավետ, խաղաղ համագործակցության համար։ Մենք կողմնակից ենք, որ միջազգային բոլոր վիճելի պրոբլեմները խաղաղությամբ լուծվեն լուրջ, իրավահավասար, կոնստրուկտիվ բանակցությունների միջոցով։



ՍՍՀՄ-ը լիովին կհամագործակցի այն բոլոր պետությունների հետ, որոնք պատրաստ են պրակտիկ գործերով օգնելու միջազգային լարվածության նվազեցմանը, աշխարհում ստեղծելու վստահության մթնոլորտ։ Այլ խոսքով՝ նրանց հետ, ովքեր իրոք կընթանան ոչ թե դեպի պատերազմի նախապատրաստում, այլ դեպի խաղաղության հիմքերի ամրապնդում։ Եվ մենք գտնում ենք, որ նույն նպատակներով պետք է լիովին օգտագործվեն բոլոր առկա լծակները, իհարկե, ներառյալ նաև մի այնպիսի լծակ, ինչպիսին է Միավորված ազգերի կազմակերպությունը, որը ստեղծվել է հենց խաղաղության պահպանման ու ամրապնդման համար։

Ընկերնե՛ր, մեզ՝ սովետական կոմունիստներիս, անկեղծորեն ուրախացնում է, որ մարդկության խաղաղ ապագայի և առաջադիմության համար մղվող պայքարում մենք ձեռք-ձեռքի տված ենք ընթանում մեր դասակարգային միլիոնավոր եղբայրների հետ, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման բազմաթիվ ջոկատների հետ։

Անշեղորեն հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքին՝ մենք ջերմ համակրանքով և խորին հարգանքով ենք վերաբերվում այն պայքարին, որ մեր արտասահմանցի ընկերները մղում են հանուն աշխատավորների շահերի ու իրավունքների, և մեր պարտքն ենք համարում համակողմանիորեն ամրապնդել մեր փոխադարձ կապերը։

Ահա թե այսօր ինչ կցանկանայինք ասել միջազգային գործերում մեր կուսակցության գծի մասին։ Եվ մենք վստահ ենք, որ այդ գիծը ամբողջ հոգով ջերմորեն պաշտպանում է սովետական ժողովուրդը։

Ընկերնե՛ր։

Սովետական մարդիկ իրենց բոլոր նվաճումները անխզելիորեն կապում են կուսակցության գործունեության հետ։ Անսահմանորեն նվիրված մասսաներին, կուսակցությունը վայելում է նրանց լիակատար վստահությունը։

Կուսակցական կազմակերպություններում արդեն ավարտվել է հաշվետու-ընտրական կամպանիան։ Այդ կամպանիան վերստին ցույց տվեց կոմունիստների գիտակցականության ու ակտիվության բարձր մակարդակը։ Ղեկավար պոստերում ընտրվեցին հեղինակավոր, փորձառու, գիտակ մարդիկ։

Պլենումի աշխատանքին մասնակցում են կուսակցության երկրկոմների ու մարզկոմների առաջին քարտուղարները։ Ձեզ, ընկերնե՛ր, ուզում ենք դիմել հատկապես։ Կենտրոնական կոմիտեն լավ գիտե, թե որքան լայն է ձեր պարտականությունների, ձեր հոգսերի շրջանակը։ Գիտե, թե ձեզանից ինչքան շատ բան է կախված նաև մեր ընթացիկ, մերձակա և ստրատեգիական խնդիրների լուծման գործում։ Կենտկոմի քաղբյուրոն վստահ է, որ դուք անհրաժեշտ ամեն ինչ կանեք արդյունաբերական արտադրության աճի կայուն տեմպերի ապահովման, պարենային ծրագրի հաջող կատարման, մասսաների աշխատանքային ակտիվության զարգացման համար, ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակին ուղղված միջոցառումների իրականացման համար և դրանով իսկ՝ կուսակցության ավանգարդային դերի բարձրացման համար։

Մեր կուսակցության մեջ ամեն մի ընտրովի պոստ պատասխանատու պոստ է։ Կուսակցական կոմիտեի կազմում ընտրվելը պետք է դիտել որպես կուսակցության անդամների կողմից իրենց ընկերներին տրված վստահության յուրօրինակ վարկ։ Եվ այդ վստահությունը պետք է արդարացվի անձնվեր աշխատանքով։ Այսպիսին է տեղի ունեցած ժողովների ու կոնֆերանսների մասնակիցների պատվիրանը։ Այժմ՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների շեմին, կուսակցությունը այդ խստապահանջ պատվիրանը տալիս է նաև այն կոմունիստներին, որոնք առաջադրված են դեպուտատության թեկնածուներ, ընտրվելու են պետական իշխանության բարձրագույն մարմնի կազմում։

Սովետական կոմունիստների անսպառ ուժը նրանց շարքերի համախմբվածության մեջ է։ Այդ ուժը լիակատար չափով է բացահայտվում, երբ, Լենինի բառերով ասած, «Մենք բոլորս՝ կուսակցության անդամներս, գործում ենք մեկ մարդու պես»։

Հենց այդպես համերաշխորեն, համախմբված է գործում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, նրա ղեկավար կորիզը՝ Կենտկոմի քաղբյուրոն։ Սա թույլ է տալիս ընդունել ճշտված, համակողմանիորեն կշռադատված որոշումներ, որոնք տանում են դեպի բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության դաշինքի, ՍՍՀ Միության ժողովուրդների եղբայրական բարեկամության ամրապնդում։

Իրոք, կուսակցական, գործարար և ստեղծագործական մթնոլորտը, որի ստեղծման մեջ այնքան շատ ուժ ներդրեց Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը, եղել է և կլինի կուսակցության Կենտրոնական կոմիտեի աշխատանքի պարտադիր պայմանը։ Սա ՍՄԿԿ-ի հեղինակության հետագա աճի գրավականն է, մեր առջև ծառացած՝ կոմունիստական արարման մեծ ու բարդ խնդիրների հաջող լուծման գրավականը։

# ԸՆԿԵՐ Ն. Ա. ՏԻԽՈՆՈՎԻ ՃԱՌԸ

Թանկագին ընկերնե՛ր։

Կոմունիստական կուսակցությունը, մեր ժողովուրդը, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժումը ծանր կորուստ կրեցին։ Կտրվեց Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի՝ մեր կուսակցության և սովետական պետության ականավոր գործչի, սոցիալիստական հայրենիքի բոցաշունչ հայրենասերի, խաղաղության և կոմունիզմի անխոնջ մարտիկի կյանքի թելը։

Յուրի Վլադիմիրովիչը Կենտրոնական կոմիտեն գլխավորում էր կարճ ժամանակահատված, մեկ տարուց մի փոքր ավելի։ Բայց որքան շատ բան արվեց այդ ժամանակամիջոցում։ Հետևելով XXVI համագումարի կուրսին, ստեղծագործաբար հարստացնելով այն, կուսակցությունը ՍՄԿԿ Կենտկոմի ղեկավարությամբ կարողացավ երկիրը վստահորեն առաջ տանել տնտեսական ու սոցիալական առաջադիմության բոլոր ուղղություններով։

Բազմաբեղուն էր Յուրի Վլադիմիրովիչի գործունեությունը նաև այն պատասխանատու պոստերում, որ կուսակցությունը վստահել էր նրան, նա իր բոլոր ուժերն ու գիտելիքները ի սպաս էր դնում ժողովրդի շահերին։

Մեզանից յուրաքանչյուրի հիշողության մեջ թարմ են Յուրի Վլադիմիրովիչի խորիմաստ ելույթները Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և հաջորդ պլենումներում, որոնցում տրված է սոցիալիզմի առավելությունների իրացման, կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմների լուծման հստակ ծրագիրը։

Նա հմտորեն ու եռանդուն կերպով ուղղություն էր տալիս Կենտրոնական կոմիտեի, քաղբյուրոյի գործունեությանը էկոնոմիկայի արագ զարգացման, ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման, կազմակերպվածության և կարգապահության ամրապնդման նպատակով կոմունիստներին, բոլոր աշխատավորներին մոբիլիզացնելու բնագավառում։

Հենվելով կոլեկտիվ փորձի վրա, զգայուն կերպով ընկալելով հասարակական զարգացման պահանջմունքները, Յուրի Վլադիմիրովիչը անձնական մեծ ավանդ ներդրեց սովետական պետության հզորության ուժեղացման, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման ուղղությամբ կուսակցության կողմից տարվող աշխատանքի մեջ։

Նա հաստատակամորեն պայքարում էր կուսակցության խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսի՝ ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքը վերացնելու, իմպերիալիզմի ագրեսիվ դավերին վճռական հակահարված տալու կուրսի հետևողական իրականացման համար։

Մենք բոլորս խորապես ապրում ենք այն մեծ վիշտը, որ համակեց մեր կուսակցությանը, ամբողջ սովետական ժողովրդին։ Բայց կոմունիստ լենին-



յանների պարտքն է է՛լ ավելի սերտորեն համախմբել իրենց շարքերը, ամրապնդել կուսակցության և ժողովրդի միասնությունը։

Կենտկոմի քաղբյուրոն այն հաստատ համոզմունքն է արտահայտում, որ Կենտրոնական կոմիտեի պլենումը ամբողջ երկրի առջև, ամբողջ աշխարհի առջև կցուցադրի կուսակցության անսասան կամքը այսուհետև էլ հաստատապես ու հետևողականորեն առաջ ընթանալու լենինյան ճիշտ կուրսով։

Հաստատակամորեն և նպատակասլաց կերպով կվարվի արտադրության ինտենսիվացման, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, պարենային ծրագրի իրագործման, սովետական մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման գիծը, որը մշակվեց ՍՄԿԿ պատմական XXVI համագումարի և Կենտկոմի ետհամագումարյան պլենումների կողմից։

Կուսակցությունը այսուհետև էլ կամրապնդի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության անխախտ դաշինքը, մեր հայրենիքի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։

ՍՄԿԿ-ն և Սովետական պետությունը միշտ հավատարիմ կլինեն բոլոր երկրների ժողովուրդների խաղաղության, բարեկամության և համագործակցության իդեալներին, սոցիալական առաջադիմության իդեալներին։

Թանկագին ընկերնե՛ր։

Քաղբյուրոն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի մասին հարցը և միահամուռ կերպով ինձ հանձնարարեց պլենումին առաջարկել մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընտրել ընկեր Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյին։

Կոնստանտին Ուստինովիչը կյանքի հարուստ դպրոց է անցել։ Նա գիտե թե՛ գյուղացիական ոչ դյուրին աշխատանքը, թե՛ զինվորական ծառայությունը և թե գյուղական շրջկոմի առօրյան։

Նա շատ տարիներ կուսակցական աշխատանքի պատասխանատու տեղամասեր է գլխավորել Կրասնոյարսկի, Պենզայի, Մոլդավիայի կուսակցական կազմակերպություններում, ՍՄԿԿ Կենտկոմի ապարատում։

Որտեղ էլ որ աշխատել է Կոնստանտին Ուստինովիչը, նա իրեն միշտ դրսևորել է որպես մասսաների տաղանդավոր կազմակերպիչ, մարքս-լենինյան գաղափարների բոցաշունչ պրոպագանդիստ, մեր մեծ կուսակցության քաղաքականության կենսագործման պայքարի աներեր մարտիկ։

Կոմունիստներին, սովետական մարդկանց Կոնստանտին Ուստինովիչը լավ ծանոթ է որպես կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ, լենինյան տիպի այնպիսի ղեկավարների հավատարիմ զինակից, ինչպիսիք էին Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը և Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը։

Աշխատելով Կենտկոմի քաղբյուրոյում և քարտուղարությունում, Կոնստանտին Ուստինովիչը շատ բան է արել կուսակցական և պետական ղեկավարման լենինյան ոճի զարգացման ու հաստատման համար, որին բնորոշ են հասարակական զարգացման հիմնական հարցերի խոր ըմբռնումը, ձեռք բերվածի և չլուծված պրոբլեմների գնահատման նկատմամբ ռեալիստական մոտեցումը, կադրերի նկատմամբ բարձր պահանջկոտությունը և միևնույն ժամանակ նրանց հանդեպ բարյացակամ վերաբերմունքը, աշխատավորների նախաձեռնության և փորձի վրա հենվելը։

Կոնստանտին Ուստինովիչը աչքի է ընկնում իր եռանդով, ամեն մի գործի նկատմամբ նորարարական վերաբերմունքով մարդկանց խանդավառելու, ընկերներին համերաշխ կոլեկտիվ աշխատանքի համախմբելու կարողությամբ։

Կցանկանայի առանձնապես ընդգծել մասսաների հետ շփվելու նրա մշտական պահանջը, նրա ուշադրությունը ամեն մի մարդու բախտի նկատմամբ՝ լինի տաղանդավոր գիտնական թե անվանի մետալուրգ, զինվորի մայր թե երիտասարդ գրող։

Կոնստանտին Ուստինովիչին աչքի ընկնող դեր է պատկանում զարգացած սոցիալիստական հասարակության կատարելագործման տեսական խոշոր

պրոբլեմների մշակման, տեսական հեռանկարով ՍՄԿԿ-ի գաղափարախոսական գործունեության ամբողջական կոնցեպցիայի ստեղծման բնագավառում։

Կոնստանտին Ուստինովիչը ամենայն ակտիվությամբ մասնակցում է մեր խաղաղասիրական արտաքին քաղաքականության ստրատեգիական ուղղությունների ձևավորմանը, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության և համախմբվածության ամրապնդման ասպարեզում ՍՄԿԿ-ի գործունեությանը։

Մեր զինվորական աշխատողները գիտեն, թե Կոնստանտին Ուստինովիչը որքան շատ է զբաղվում երկրի պաշտպանունակության ամրապնդման հարցերով, ժամանակակից տեխնիկայով զինված ուժերի հագեցման, բանակի և նավատորմի անձնակազմի գաղափարական կոփման հարցերով։

Քաղբյուրոն վստահ է, որ Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի պոստում արժանավոր կերպով կգլխավորի մեր կուսակցության մարտական շտաբը։

Կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ, սերտորեն համախմբված լենինյան Կենտրոնական կոմիտեի և նրա ղեկավար միջուկի շուրջը, զինված կուսակցության XXVI համագումարի, նրա Կենտրոնական կոմիտեի եռհամագումարյան պլենումների մշակած գործողությունների պարզորոշ ու հստակ ծրագրով, լավատեսությամբ են նայում ապագային և լի են վճռականությամբ իրենց անձնվեր աշխատանքով ապահովելու մեր մեծ հայրենիքի հետագա բարգավաճումը։

# ԸՆԿԵՐ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԵԼՈՒՅԹԸ

Ընկերնե՛ր։ Մենք ավարտում ենք Կենտկոմի մեր արտահերթ պլենումը, որը գումարվել է կուսակցության ու ժողովրդի կյանքի պատասխանատու պահին։ Պլենումն անցավ միասնության և համախմբվածության իրադրության մեջ։ Պլենումում կուսակցության ու ժողովրդի հանդեպ վիթխարի պատասխանատվության զգացումով լուծվեցին ղեկավարության ժառանգորդության հարցերը։

Պլենումը ցույց տվեց, որ կուսակցությունն այսուհետ ևս կընթանա ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.), հունիսյան և դեկտեմբերյան (1983 թ.) պլենումների մշակած լենինյան կուրսով։ Այդ բանը առանձնահատուկ ուժով դրսևորվեց ընկեր Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյին միահամուռ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի պոստում ընտրելու, կուսակցության և պետության ներքին քաղաքականության և արտաքին քաղաքական գործունեության պրոբլեմների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի այսօրվա պլենումում նրա ելույթում արտահայտված դրույթներն ու հետևությունները լիովին պաշտպանելու մեջ։

Թույլ տվեք քաղբյուրոյի անունից վստահություն հայտնել, որ Կենտկոմի անդամները, պլենումի բոլոր մասնակիցները, վերադառնալով տեղերը, կուսակցական կազմակերպությունները, կգործեն միասնության ու համախմբվածության, բարձր պահանջկոտության ու պատասխանատվության ոգով, որոնցով բնութագրվում է կուսակցության Կենտրոնական կոմիտեի ներկա պլենումը։

Բոլորիդ հաջողություններ ենք ցանկանում աշխատանքում։

Պլենումը հայտարարվում է փակված։

---

# ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՈՒՍՏԻՆՈՎԻՉ ՉԵՌՆԵՆԿՈ

Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն ծնվել է 1911 թվականի սեպտեմբերի 24-ին, Կրասնոյարսկի երկրամասի Նովոսյոլովոյի շրջանի Բոլշայա Տես գյուղում, ազգությունը՝ ռուս։

ՍՄԿԿ անդամ է 1931 թվականից։ Կրթությունը՝ բարձրագույն. ավարտել է մանկավարժական ինստիտուտը և ՀամԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր կուսկազմակերպիչների բարձրագույն դպրոցը։

Աշխատանքային կյանքը Կ. Ու. Չեռնենկոն սկսել է վաղ տարիքից, վարձու աշխատանք կատարելով կուլակների մոտ։ Նրա ամբողջ հետագա աշխատանքային գործունեությունը կապված է կոմերիտական, իսկ այնուհետև՝ կուսակցական մարմիններում կատարած ղեկավար աշխատանքի հետ։ 1929—1930 թվականներին Կ. Ու. Չեռնենկոն եղել է ՀամԼԿԵՄ Կրասնոյարսկի երկրամասի Նովոսյոլովոյի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչը։ 1930 թվականին նա կամավոր մեկնել է կարմիր բանակ։ Մինչև 1933 թվականը ծառայել է սահմանապահ զորքերում, եղել է սահմանապահ ուղեկալի կուսակցական կազմակերպության քարտուղար։

Բանակում ծառայությունն ավարտելուց հետո Կ. Ու. Չեռնենկոն աշխատել է Կրասնոյարսկի երկրամասում. կուսակցության Նովոսյոլովոյի և Ույարի շրջկոմների պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ, Կրասնոյարսկի երկրամասի կուսակցական լուսավորության տան դիրեկտոր, կուսակցության Կրասնոյարսկի երկրկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ, քարտուղար։

1943 թվականից Կ. Ու. Չեռնենկոն սովորում է ՀամԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր կուսկազմակերպիչների բարձրագույն դպրոցում։ Ուսումն ավարտելուց հետո 1945 թվականից աշխատում է որպես կուսակցության Պենզայի մարզկոմի քարտուղար։ 1948 թվականին գործուղվում է Մոլդավական ՍՍՀ և հաստատվում որպես Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ։ Աշխատելով այդ պաշտոնում, նա շատ ուժեր ու գիտելիքներ է նվիրաբերում հանրապետությունում տնտեսական և կուլտուրական շինարարությանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։

1956 թվականին Կ. Ու. Չեռնենկոն աշխատանքի է առաջ քաշվում ՍՄԿԿ Կենտկոմի ապարատում, որտեղ նա գլխավորում է պրոպագանդայի բաժնի սեկտորը և միաժամանակ հաստատվում է որպես «Ագիտատոր» հանդեսի խմբագրական կոլեգիայի անդամ։ 1960 թվականից նա աշխատում է որպես ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղարության պետ։ 1965 թվականին Կ. Ու. Չեռնենկոն հաստատվում է որպես ՍՄԿԿ Կենտկոմի ընդհանուր բաժնի վարիչ։ 1966—1971 թվականներին նա ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու էր։ Կուսակցության XXIV համագումարում (1971 թ. մարտ) ընտրվում է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անդամ, իսկ 1976 թվականի մարտին, կուսակցության XXV համագումարից հետո կայացած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում՝ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար։

1977 թվականից նա ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու է, իսկ 1978 թվականից՝ քաղբյուրոյի անդամ։ ՍՍՀՄ 7—10-րդ գումարումների Գերագույն սովետի դեպուտատ է, ՌՍՖՍՀ 10-րդ գումարման Գերագույն սովետի դեպուտատ։

Կ. Ու. Չեռնենկոն Եվրոպայի անվտանգության ու համագործակցության միջազգային խորհրդակցությունում (Հելսինկի, 1975 թվական) սովետական պատվիրակության անդամ էր, մասնակցել է զինաթափման հարցերի շուրջը Վիեննայում կայացած բանակցություններին (1979 թվական)։

Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն կոմունիստական կուսակցության և սովետական պետության նշանավոր գործիչ է։ Բոլոր պոստերում, որ նրան հանձնարարել է կուսակցությունը, նա դրսևորել է կազմակերպչական մեծ ընդունակություններ, կուսակցական սկզբունքայնություն, հավատարմություն Լենինի մեծ գործին, կոմունիզմի իդեալներին։ Կ. Ու. Չեռնենկոն մի շարք գիտական աշխատությունների հեղինակ է, որոնք նվիրված են սովետական հասարակության կյանքում կուսակցության ղեկավար դերի բարձրացման, կուսակցական և պետական աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման հրատապ հարցերին։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում Կ. Ու. Չեռնենկոն հանդես եկավ զեկուցումով, որտեղ սահմանված են արդի պայմաններում ՍՄԿԿ-ի գաղափարախոսական գործունեության բարելավման գլխավոր ուղղությունները։

Հայրենիքի հանդեպ ունեցած մեծ ծառայությունների համար Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոն երկու անգամ արժանացել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման և պարգևատրվել Լենինի երեք շքանշանով, Աշխատանքային կարմիր դրոշի երեք շքանշանով, Սովետական Միության շատ մեդալներով։ Նա լենինյան մրցանակի դափնեկիր է։

Կ. Ու. Չեռնենկոն պարգևատրվել է սոցիալիստական երկրների բարձրագույն պարգևներով։

---



ՅՈՒՐԻ ՎԼԱԴԻՄԻՐՈՎԻՉ ԱՆԴՐՈՊՈՎ



# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ

# ԴԻՄՈՒՄԸ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆԸ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, ամբողջ սովետական ժողովուրդը ծանր կորուստ կրեցին: Կտրվեց լենինյան կուսակցության ու սովետական պետության ականավոր գործիչ, սոցիալիստական հայրենիքի բոցաշունչ հայրենասեր, խաղաղության և կոմունիզմի անխոնջ մարտիկ Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի կյանքի թելը:

Նրա կյանքը կուսակցության ու ժողովրդի շահերին, Լենինի մեծ գործին անձնվիրաբար ծառայելու տիպար է: Այն բոլոր պոստերում, որտեղ կուսակցության կամքով աշխատել է Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը, նա իր ուժերը, գիտելիքները, հսկայական կենսափորձը նվիրաբերել է կուսակցության քաղաքականության անշեղ իրականացմանը, կոմունիստական գաղափարների հաղթանակի պայքարին:

Քաղաքական խոշոր ղեկավարի հատկանիշները վառ կերպով դրսևորվեցին Յու. Վ. Անդրոպովի ամբողջ բազմակողմանի գործունեության մեջ՝ կոմերիտական աշխատանքում և պարտիզանական շարժման կազմակերպման գործում Կարելիայում Հայրենական մեծ պատերազմի տարիներին, կուսակցական ու դիվանագիտական գործունեության պատասխանատու տեղամասերում: Նա մեծ աշխատանք է ներդրել մեր պետության անվտանգության ամրապնդման գործում:

Ընկեր Անդրոպովի՝ լենինյան տիպի ղեկավարի ակնառու ընդունակությունները և կազմակերպչական տաղանդը ամբողջ ուժով բացահայտվեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստերում աշխատելիս:

Յու. Վ. Անդրոպովին կարճ ժամանակ վիճակվեց գլխավորել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն: Բայց այդ ժամանակամիջոցում կուսակցությունը, ընթանալով XXVI համագումարի կուրսով, ստեղծագործաբար հարստացնելով այդ կուրսը, ապահովեց երկրի վստահ առաջընթացը տնտեսական ու սոցիալական առաջադիմության բոլոր ուղղություններում:

Կուսակցության և ժողովրդի կյանքում, նրանց անխախտ միասնության ամրապնդման գործում կարևոր ուղենիշեր դարձան ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան ու դեկտեմբերյան պլենումները: Պլենումների որոշումներում, Յու. Վ. Անդրոպովի ելույթներում զարգացված և կոնկրետացված է կուսակցության արդի ստրատեգիան՝ հասուն սոցիալիզմի կատարելագործման ստրատեգիան:

Կուսակցության ու ժողովրդի ջանքերն այդ ժամանակամիջոցում կենտրոնացված են եղել էկոնոմիկայի զարգացումն արագացնելու, ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու, կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու, մասսաների ստեղծագործական ակտիվությունը զարգացնելու վրա:

Կուսակցության ձեռնարկած միջոցառումները ենթարկված են մեկ նպատակի՝ սովետական մարդկանց բարեկեցության աճին, սովետական պետության հզորության ուժեղացմանը: Այս ամենի մեջ մեծ են Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի ծառայությունները:

Նշանակալից է Յու. Վ. Անդրոպովի ավանդը սոցիալիստական ընկերակցության երկրների համակողմանի համագործակցության զարգացման, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնության ու համախմբվածության ամրապնդման, ժողովուրդների ազատության ու անկախության պայքարի պաշտպանության գործում:

Նրա ղեկավարությամբ ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական պետությունը միջազգային ասպարեզում հետևողականորեն և հաստատակամորեն իրականացնում էին արտաքին քաղաքականության լենինյան կուրսը՝ ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքը վերացնելու, իմպերիալիզմի ագրեսիվ մեքենայություններին խորտակիչ հակահարված հասցնելու, խաղաղությունն ու ժողովուրդների անվտանգությունն ամրապնդելու կուրսը:

Այս վշտալի օրերին կոմունիստները, ամբողջ սովետական ժողովուրդը իրենց շարքերը է՛լ ավելի սերտորեն են համախմբում կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը: Սովետական Միության աշխատավորները հանձին կոմունիստական կուսակցության տեսնում են իրենց փորձված, կոլեկտիվ առաջնորդին, լի են ժողովրդի արմատական շահերն արտահայտող՝ կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության կենսագործման համար անձնվիրաբար պայքարելու վճռականությամբ: Կուսակցության լենինյան կուրսը անսասան է: Կուսակցությունը զինված է գործողությունների պարզ ու հստակ ծրագրով, որ մշակել են ՍՄԿԿ XXVI համագումարը, կուսակցության Կենտրոնական կոմիտեի ետհամագումարյան պլենումները:

ՍՄԿԿ-ն այսուհետև էլ հաստատակամորեն ու նպատակասլաց կերպով կվարի արտադրության համակողմանի ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, կազմակերպվածության ու կարգապահության ուժեղացման, ժողովրդի կյանքի նյութական ու հոգևոր մակարդակի անշեղ աճի գիծը: Նա կամրապնդի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության ու մտավորականության անխախտ դաշինքը, ՍՍՀՄ-ի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, կզարգացնի սոցիալիստական դեմոկրատիան, մարդկանց կդաստիարակի սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, կոմունիզմի վեհ իդեալներին նվիրվածության ոգով:

Ներկայիս բարդ, վտանգավոր չափով սրված միջազգային իրադրության մեջ ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը իրենց առաջնագույն պարտքն են համարում հետևողականորեն պաշտպանել խաղաղության գործը, ցուցաբերել զսպվածություն և զգոնություն, վճռականորեն վիժեցնել իմպերիալիզմի արկածախնդրական դիտավորությունները, ամրապնդել երկրի պաշտպանական հզորությունը:

Սովետական ժողովուրդը միջազգային վիճելի հարցերն ուժի միջոցով լուծելու համոզված հակառակորդ է: Անպատերազմ աշխարհը մեր իդեալն է: Կայուն խաղաղության համար մղվող պայքարում մեզ հետ են սոցիալիզմի եղբայրական երկրները, կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, ազգային ու սոցիալական ազատագրության մարտիկները, ջերմամիջուկային աղետի կանխման օգտին հանդես եկող ժողովրդական լայն զանգվածները:

Մեր կուսակցությունը և պետությունը այսուհետև էլ անսասանորեն և անշեղորեն կկենսագործեն տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները: Մենք ուզում ենք խաղաղ ապրել բոլոր երկրների հետ, ակտիվորեն համագործակցել այն կառավարությունների ու կազմակերպությունների հետ, որոնք պատրաստ են ազնվաբար և կոնստրուկտիվորեն աշխատել հանուն խաղաղության:

Սովետական ժողովուրդը հաստատ գիտե. կուսակցությունը, Կենտրոնական կոմիտեն և նրա ղեկավար կորիզը անսասանորեն հավատարիմ են լե-

նինյան դրոշին, մեծ Հոկտեմբերի գործին: Կուսակցությունը սրբության պես թանկ է գնահատում ժողովրդի վստահությունը և իր գործունեության բարձրագույն նպատակն է համարում հոգածությունը սովետական մարդկանց բարօրության ու երջանկության մասին: Կուսակցության ու ժողովրդի միասնությունը եղել է, կա և կլինի մեր ուժի աղբյուրը:

Կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց հիշողության մեջ Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը ընդմիշտ կմնա որպես Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքին անսահմանորեն նվիրված, սկզբունքային ու համեստ մարդ, որպես աշխատանքի մարդկանց մոտիկ, նրանց կարիքների ու հոգսերի նկատմամբ զգայուն մարդ, որը կարողանում էր ամեն ինչ ենթարկել սոցիալիստական հայրենիքի շահերին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը խորին վստահություն են հայտնում, որ կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ մի նոր ուժով կցուցադրեն իրենց դասակարգային գիտակցականությունն ու կազմակերպվածությունը, իրենց կոլեկտիվիստական բարձր հատկությունները, նպատակասլաց անձնվեր աշխատանքով կապահովեն ժողովրդատնտեսական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը, մեր մեծ հայրենիքի հետագա բարգավաճումը:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1984 թվականի հունվարի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումը՝ Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի կազմի մասնակցությամբ:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումներից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթի բովանդակած դրույթներից ու հետևություններից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. Ներսիսյանը, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման փականագործ-գործիքագործ ընկ. Ս. Ս. Ֆահրադյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Հարությունյանը, Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի կոլտնտեսության բրիգադավար ընկ. Բ. Գ. Մնացականյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Օհանյանը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստր ընկ. Հ. Վ. Թարջումանյանը, ՀԿԿ Մարտունու շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Հ. Ավագյանը, Ախուրյանի շրջանի Ախուրյան գյուղի կոլտնտեսության բրիգադավար ընկ. Հ. Ա. Գասպարյանը, Հայկական ՍՍՀ բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստր ընկ. Ռ. Ա. Մինասյանը, ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ծ. Բ. Դավթյանը, «Երևանշին» շինմոնտաժային արտադրական միավորման բրիգադավար ընկ. Հ. Հ. Աբրահամյանը, ՀԿԿ Արագածի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Զ. Գ. Գևորգյանը, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր ընկ. Մ. Ա. Սեմերջյանը, Լենինականի բամբակագործվածքային արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Գ. Ս. Դարբինյանը, ժողովրդական դեպուտատների Հրազդանի շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Ռ. Ա. Պետրոսյանը:

Քննարկված հարցի առթիվ ՀԿԿ Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:

Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. Պոլյակովը:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ԵՎ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ, ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ԵԼՈՒՅԹԻ ԲՈՎԱՆԴԱԿԱԾ ԴՐՈՒՅԹՆԵՐԻՑ ՈՒ ՀԵՏԵՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ԲԽՈՂ՝ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը*

*Ընկերնե՛ր։*

*Ինչպես հայտնի է, 1983 թվականի դեկտեմբերին կայացավ ՍՄԿԿ կենտրոնական կոմիտեի պլենումը, որի քննարկած հարցերը կենսական կարևորություն ունեն երկրի համար։*

*Պլենումը ամբողջովին և լիովին հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի գործունեությանը կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների մշակած ներքին և արտաքին քաղաքականության կենսագործման ուղղությամբ։*

*Կուսակցության XXVI համագումարի որոշումների կենսագործման համար՝ սովետական մարդկանց անձնվեր աշխատանքի շնորհիվ մեր հայրենիքը վստահորեն ընթանում է տնտեսական և սոցիալական առաջընթացի ուղիով։ Դրական արդյունքներ է տալիս նոյեմբերյան պլենումի հիմնադրույթներին համապատասխան սոցիալիստական տնտեսավարումը կատարելագործելու, կազմակերպվածությունն ու կարգապահությունը, կադրերի ձեռներեցությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու կուրսի հետևողական իրականացումը։*

*Պլենումը միահամուռ հավանություն տվեց և պաշտպանեց ժողովրդական տնտեսության հետագա զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ*

* *Տպագրվում է համառոտումներով։*



*Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի ելույթում տրված գնահատականները և հետևությունները։ Ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթի տեքստը քաղաքական կարևորագույն փաստաթուղթ է, որը հստակորեն արտահայտում է արդի փուլում կուսակցության և սովետական պետության սոցիալ-տնտեսական քաղաքականությունը։*

*Կենտկոմի պլենումի հավանությանն արժանացած և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի հաստատած՝ հնգամյակի չորրորդ տարվա ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման պլանը համապատասխանում է կուսակցության գլխավոր գծին, ծառայում սովետական ժողովրդի արմատական շահերին։ Այն նպատակամղված է հանրային արտադրության հետագա դինամիկ զարգացմանն ու արդյունավետության բարձրացմանը, ժողովրդի բարեկեցության աճին, նախատեսում է այն ամեն անհրաժեշտը, ինչ հարկավոր է երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակի վրա պահպանելու համար։*

*Կենսագործելով կուսակցության համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումների որոշումները, հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները ամբողջությամբ վերցրած հաջողությամբ են կատարում առաջադրված տնտեսական և քաղաքական խնդիրները։ Նրանք 1983 թվականին լուրջ քննություն բռնեցին։ Հիշենք, թե մեզ համար որքան դժվարին էր անցած ձմեռը։ Դանդաղեցին արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերը, նվազեց անասնապահության մթերատվությունը, փաստորեն կանգ առան շինարարական աշխատանքները, ոչ հանքային նյութերի հանույթը։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, Մինիստրների խորհուրդը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները մշակեցին և իրականացրին միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս՝ առաջացած դժվարությունները հաղթահարելու, կորուստները նվազագույնի հասցնելու համար։ Կուսակցական կազմակերպությունները հմտորեն օգտագործեցին աշխատանքային և քաղաքական այն ոգևորությունը, որ հարուցեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումները, աշխատավորների ջանքերը նպատակամղեցին այդ միջոցառումների իրականացմանը, հանրապետության առջև ծառացած խնդիրների, պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանը։*

*Ամրապնդվեցին աշխատանքային կարգապահությունը, կարգուկանոնը։ Բարձրացավ պահանջկոտությունը բոլոր մակարդակների կադրերի նկատմամբ։ Տարբերքին հարկավոր էր հակադրել մեծագույն կազմակերպվածություն, կրկնապատկված եռանդ, աշխատել ավելի համառորեն, ավելի արդյունավետ։ Այդպես էլ եղավ։*

*Այդ ամենը հնարավորություն ընձեռեց արդեն ապրիլ—մայիսին շտկելու դրությունը, նորմալացնելու, կայունացնելու արդյունաբերության ճյուղերի աշխատանքը, նախադրյալներ ստեղծելու տարին այնպես եզրափակելու համար, որպեսզի արդյունաբերությունը երեք տարվա արդյունքներով գերազանցեր հնգամյակի կանխանշումները։*

*Այսօր մենք կարող ենք ասել, որ հասել ենք նպատակին։ Հնգամյակի առանցքային տարվա պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները կատարվել և գերակատարվել են։ Ապրանքային արտադրության պլանների 102—103 տոկոսով կատարման բնագիծը նվաճել են մեր արդյունաբերության աշխատողները (պլանը կատարվել է 102,2 տոկոսով)։ Արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 5,2 տոկոսով, իսկ երեք տարվա արդյունքներով՝ 17,1 տոկոսով, հնգամյա պլանով նախատեսված աճի 15 տոկոսի փոխարեն։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2,7 տոկոսով։*

*Գյուղի աշխատավորները, հաղթահարելով ձմռան դժվարությունները, ստիպված էին դիմագրավել նաև ուշացած գարնան հորդառատ անձրևներին, հետագա սաստիկ կարկտահարություններին։ Մեծ էր կուլտուրաների առանձին տեսակներին, հատկապես խաղողին հասցված վնասը։ Հարկ եղավ կատարել խոշոր չափերի կրկնացանք, կրկնասածիլում։ Մեծացվեց բերքի խնամքը։ Ագ-*

րոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարվեցին բերքահավաքի աշխատանքները։

Եվ այսօր մենք գոհունակությամբ ենք նշում, որ գյուղի աշխատավորները գյուղատնտեսական կուլտուրաների բոլոր հիմնական տեսակների գծով կատարել են պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները։ Առաջին անգամ գնվեցին 113,1 հազար տոննա միս, 317,9 հազար տոննա կաթ, 358,2 միլիոն ձու։ Կուտակվեց ավելի քան 2,5 միլիոն տոննա կոշտ և հյութալի կեր, դա կերարտադրության մեջ մեր հասումների երկրորդ արդյունքն է։ Պետությանը վաճառվեցին 125,4 հազար տոննա պտուղ, 306,2 հազար տոննա բանջարեղեն, 143,9 հազար տոննա շաքարի ճակնդեղ, 102,5 հազար տոննա կարտոֆիլ, 64,1 հազար տոննա հացահատիկ։

Մեր շինարարները որոշ չափով բարելավել են իրենց աշխատանքի ցուցանիշները։ Կապալային աշխատանքների պլանը գերակատարվել է, դրանց ծավալների աճը կազմել է 5,3 տոկոս։ Պետական կապիտալ ներդրումների հաշվին գործարկվել են 12 տոկոսով ավելի հիմնական ֆոնդեր, քան 1982 թվականին, շահագործման է հանձնվել 806,4 հազար քառակուսի մետր բնակտարածություն (պլանը կատարվել է 101,1 տոկոսով)։ Կատարվել և գերակատարվել են դպրոցների, նախադպրոցական հիմնարկությունների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների գործարկման պլանները։ Կարողություններ են գործարկվել արդյունաբերական շատ ձեռնարկություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում, տրանսպորտում և այլուր։

Դրական արդյունքների են հասել տրանսպորտի և կապի, կենցաղսպասարկման ոլորտի աշխատողները, որոնք կայուն կերպով կատարում են պլանային առաջադրանքները։

Արգասավոր աշխատեցին մեր գիտության, գրականության և արվեստի գործիչները։

Անվիճելի են անցյալ տարի ձեռք բերված հաջողությունները, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Բայց մեր աշխատանքում, ընկերներ, դեռևս կան շատ թերություններ, լուրջ թերացումներ։ Այն, ինչին մենք հասել ենք, առայժմ լիովին չի համապատասխանում մեր հնարավորություններին, որոնք ավելի ու ավելի են ընդլայնվում։

Այսօր, քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի արդյունքները և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները՝ պլենումի որոշումների, ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթի պարունակած դրույթների ու հետևությունների լույսի ներքո, մենք ձեռք բերածի քննադատական վերլուծության հիման վրա պետք է բոլոր առումներով որոշենք մեր աշխատանքի ուղիները և դրա բարելավման միջոցները, ապահովելու համար տնտեսական և կուլտուրական շինարարության, կուսակցական աշխատանքի հետագա բարելավման՝ կուսակցության առաջադրած նոր, բարձր պահանջների կատարումը։

Անցած տարին ցույց տվեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի մշակած կուրսը արդարացնում է իրեն։ Մեր կենսագործունեության բոլոր օղակներում կազմակերպվածության և կարգուկանոնի ըստ ամենայնի բարձրացումը, պետական, պլանային և աշխատանքային կարգապահության ամրապնդումը, աշխատանքի ոճի ու մեթոդների հետևողական բարելավումը տալիս են իրենց արդյունքները։ Մեր կադրերը ճիշտ հետևություններ են արել պլենումի որոշումներից և վերակառուցել են իրենց աշխատանքը։ Բայց՝ ոչ բոլորը։ Կան նաև այնպիսիք, որոնք այն ամենին, ինչ արվում է, վերաբերվում են որպես հերթական կամպանիա՝ բռնելով սպասողական դիրք։

Այսօր հարկ է մեկ անգամ ևս շեշտել, որ ամեն ինչում կազմակերպվածության ու կարգուկանոնի ամրապնդումը, էկոնոմիկայի ինտենսիվացումը, դրա արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, արտադրանքի որակի բարելավումը, բոլոր տեսակի ռեսուրսների խնայողությունը, առկա արտադրատեխնիկական և գիտական պոտենցիալի խելամիտ օգտագործումը, տնտեսավարման բարելավումը, աշխատանքի ոճի ու մեթոդների համակողմանի կատարելագործումը մշտական, մնայուն խնդիրներ են։

Դեկտեմբերյան պլենումը վերստին շեշտեց այդ խնդիրների կարևորությունը և բոլոր կուսակցական կազմակերպություններից ու կոմիտեներից, սովետական, տնտեսական մարմիններից պահանջեց անշեղորեն իրականացնել դրանք։ Նոր, ավելի բարդ անելիքների առաջադրումն ու լուծումը պահանջում են ամենուրեք հետևողականորեն հաղթահարել իներցիան, հրաժարվել աշխատանքի հնացած մեթոդներից, ակտիվ պայքար մղել անտնտեսվարության ու վատնողականության, անպատասխանատվության ու քարացածության դեմ։ Եվ հետևաբար բոլոր մակարդակների ու օղակների կադրերը պարտավոր են իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները համապատասխանեցնել (և որքան շուտ, այնքան լավ) այդ խնդիրներին, քննադատաբար վերաբերվել իրենց գործունեության արդյունքներին, պատասխանատվություն զգալ բոլոր կանխագծումների կատարման համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերին կայացած պլենումում, երբ քննարկվեցին հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թվականի պլանն ու բյուջեն, վկայակոչվեցին անբավարար աշխատանքի, վատ տնտեսավարման, պետական պլանային կարգապահության խախտման օրինակներ։ Այն ժամանակ պլենումում ասվեց, և այժմ մեկ անգամ ևս հարկ ենք համարում շեշտել, մենք միշտ և համարձակ պետք է բացահայտենք մեր աշխատանքի թերությունները։ Մենք ոչ ոքից և ոչինչ չունենք թաքցնելու։ Եվ որքան լավ հասկանանք մեր թերությունները, այնքան դյուրին կհաղթահարենք դրանք։ Մեր գործունեության արդյունքների քննադատական գնահատությունը միշտ պետք է մեր կյանքի նորմը լինի։ Ոչ ոք չի կարող մեզանից ավելի սուր զգալ մեր թերությունները, ոչ ոք մեզանից ավելի շահագրգիռ ձեռնամուխ չի լինի դրանց վերացմանը։

Մի՞թե կարելի է հաշտվել այն վիճակի հետ, երբ մեզանում պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները չեն կատարում մի ամբողջ շարք արդյունաբերական ձեռնարկություններ, շինարարական, տրանսպորտային և այլ կազմակերպություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, առանձին ճյուղեր։ Չէ՛ որ 41 արդյունաբերական ձեռնարկություններ և միավորումներ, կամ դրանց ընդհանուր թվի 7,4 տոկոսը, 1983 թվականին չեն կատարել ապրանքային արտադրանքի արտադրապլանները, 36-ը՝ իրացման պլանները։ Աշխատանքի արտադրողականության աճի պլանը չեն կատարել 95 միավորումներ ու ձեռնարկություններ։

Կապալային աշխատանքների պլանների կատարումը չեն ապահովել արդյունաբերական շինարարության մինիստրությունը, «Հայտրանսշինը», «Հայթունելշինը», «Հայգունմետշինը» և շինարարական այլ կազմակերպություններ։

11 շրջան չի կատարել բանջարեղենի մթերման պլանային առաջադրանքները, 4 շրջան՝ կարտոֆիլինը, 9 շրջան՝ պտղինը, 4 շրջան չեն կատարել կաթի մթերման պլանը։ 15 շրջանում կաթի մթերումների ծավալները նվազել են 1982 թվականի համեմատությամբ։ Պլանային առաջադրանքների կատարումը չեն ապահովել մեծ թվով տնտեսություններ։

Մի՞թե թույլատրելի է, երբ շատ ձեռնարկություններ ու կազմակերպություններ, ասենք և՝ ամբողջ մինիստրություններ, կատարում են ոչ թե հաստատված պլանները, այլ ճշգրտվածները։

Ինչի՞ մասին է խոսում սա։ Առաջին հերթին՝ պլանային և պետական ցածր կարգապահության մասին։

Մի շարք մինիստրություններ ու գերատեսչություններ, մեր շատ ձեռնարկություններ, ըստ երեք տարվա արդյունքների, արդյունաբերական արտադրության ծավալների աճի տեմպերով չեն հասել հնգամյա պլանով նախատեսված բնագծերին, և այս դեպքում էլ նրանց համար 1984 թվականին պլանավորել են արտադրության այնպիսի ծավալներ, որոնք հնարավորություն չեն ընձեռում փակելու ճեղքվածքը։ Այսպես, թեթև արդյունաբերության մինիստրությունը

երեք տարվա միագումարով ետ է մնում հնգամյա պլանով նախատեսված աճի տեմպերից 3,6 տոկոսային կետով: Մինչդեռ 1984 թվականին պլանավորված են արտադրության այնպիսի ծավալներ, որոնք բավարար չեն այդ խզումը վերացնելու համար: Շինանյութերի արդյունաբերության մինիստրությանը, որը հնգամյակի նախանշած աճի տեմպերից ետ է մնացել 3 տոկոսային կետով, չի պլանավորված դրա փոխհատուցումը: Չորս տարվա միագումարով ետ մնալը չեն հաղթահարում պտուղ-բանջարեղենի տնտեսության, արդյունաբերական շինարարության մինիստրությունները:

Հարկ կա՞ ասելու, ընկերներ, որ նման պրակտիկան միանգամայն անթույլատրելի է:

Ինչո՞վ կարելի է բացատրել սա: Մեզ թվում է՝ առաջին հերթին թե՛ նշված մինիստրությունների ղեկավարների անբավարար պատասխանատվությամբ և թե պետպլանի, կառավարության, Կենտկոմի ցածր պահանջկոտությամբ: Այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ ընկերներ Ա. Գևորգյանը, Լ. Ղազարյանը, Ռ. Սուխուդյանը, Է. Ավագյանը իրենց ազատել են պատասխանատվությունից, իրավունք վերապահել չկատարելու հնգամյա պլանը: Իսկ կառավարությունը, պետպլանը ընկերներին ուղղելու փոխարեն, ընդառաջում են նրանց:

Նույնպիսի վարքագիծ են դրսևորում նաև միութենական ենթակայության մի շարք միավորումների ու ձեռնարկությունների դիրեկտորներ:

Պլենումը պետք է դատապարտի նման վարքագիծը և մեր բոլոր տնտեսական աշխատողներից պահանջի ամենագործուն միջոցները ձեռնարկել հնգամյակի պլանային առաջադրանքների անվերապահ կատարումը լրիվ ծավալով ապահովելու համար:

Ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում առանձնակի ուշադրություն է հատկացվել արտադրանքի մատակարարումների պայմանագրային պարտավորությունների խստիվ կատարման անհրաժեշտության վրա: Վերջին ժամանակներս մեր հանրապետությունում այդ ուղղությամբ որոշակի աշխատանք է կատարվել: Եվ կարծես թե տեղաշարժեր կան: Բացի այդ սկզբունքային պրոբլեմն առայժմ մինչև վերջ լուծված չէ: Դեռևս կան մի քանի տասնյակ միավորումներ և ձեռնարկություններ, որոնք չեն ապահովում մատակարարումների պլանների լրիվ կատարումը: Մատակարարումների կարգապահությունը պայմանավորված է ոչ միայն ձեռնարկություններով: Այստեղ պետք է հավասար պատասխանատվություն կրեն և իրենց աշխատանքը բարելավեն թե՛ նյութատեխնիկական մատակարարման, թե՛ տրանսպորտային մարմինները և թե կառավարման բոլոր այն օղակները, որոնք կոչված են ապահովելու արտադրապրոցեսի, արտադրանքի առաքման անխափանությունն ու համաչափությունը:

Այս ամենը մեկ անգամ ևս վկայում է, որ պետական, պլանային կարգապահության հետևողական ամրապնդումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է և պետք է մշտապես գտնվի կուսակցական կազմակերպությունների և կոմիտեների ուշադրության կենտրոնում:

Արդյունաբերական արտադրության ծավալների աճի հնգամյա պլանի կատարման համար իրական նախադրյալներ ստեղծելու նպատակով Հայաստանի Կոմկուսի Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերին կայացած պլենումը անհրաժեշտ համարեց առաջադրել ապրանքային արտադրանքի արտադրության 1984 թվականի պլանները 2—3 տոկոսային կետով գերակատարելու խնդիրը: Տարվա պլանը՝ 102—103 տոկոսով. ահա մեր բնագծերը, ահա մեր կուսակցական խնդիրը արդյունաբերության մեջ:

Ընթացիկ տարում այդ բնագծերի նվաճման առաջնահերթ պայմանը ամենուրեք աշխատանքի հստակ կազմակերպումն է՝ սկսած արտադրամասերից, գործարաններից ու միավորումներից, վերջացրած մինիստրություններով, գերատեսչություններով, հանրապետական բոլոր մարմիններով: Յուրաքանչյուր ճյուղում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում պետք է լիապես պարզորոշ լինի, թե ինչպիսի ուղիներով, ինչ միջոցներով ու եղանակներով պետք է կատարվեն սոցիալիստական պարտավորությունները, նվաճվեն ռեսուրսների, նյութերի, հումքի և էներգիայի բոլոր տեսակների խնա-



յողության, աշխատանքի արտադրողականության աճի, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման, արտադրանքի որակի բարձրացման՝ պլաններով նախատեսված առաջադրանքները:

Կարևորագույն խնդիրների շարքում, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որոնց լուծմանը պետք է նպատակամղվեն մեր ջանքերը, կենտրոնական տեղերից մեկը պատկանում է արտադրության արդյունավետության և, առաջին հերթին, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:

Մեղանում քիչ բան չի արվում այդ արմատական խնդրի լուծման համար: Բայց, ցավոք, հանրապետությունում դեռևս շատ են ձեռնարկությունները (դրանց թիվը նշվեց վերևում), որոնց համար աշխատանքի արտադրողականության բարձրացումը մնում է յուրօրինակ «աքիլլեսյան գարշապար»: Կան ձեռնարկություններ, որոնք իջեցրել են աշխատանքի արտադրողականության ձեռք բերված մակարդակը: Մի շարք ձեռնարկություններում ստեղծվել է անթույլատրելի հարաբերակցություն աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի տեմպերի միջև: Իսկ առաջընթացի ապահովման համար միշտ պետք է ձգտել աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճի: Դա տնտեսական զարգացման օբյեկտիվ օրենք է, երբեք չի կարելի մոռանալ այդ:

Խնդիրն այն է, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության և աշխատանքի կազմակերպման և կառավարման կատարելագործման, աշխատողների որակավորման բարձրացման շնորհիվ ապահովվի աշխատանքի արտադրողականության կայուն աճ: Ցավոք, այդ խնդրի լուծմանը ինչպես հարկն է ձեռնամուխ չեն լինում շատ ձեռնարկությունների, առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ:

1983 թվականի 9 ամսվա արդյունքներով թեթև արդյունաբերության մինիստրության 19 ձեռնարկություններ թույլ են տվել աշխատանքի արտադրողականության աճի նկատմամբ միջին աշխատավարձի աճի գերազանցում: Նույնպիսի վիճակ է ստեղծվել սննդի արդյունաբերության մինիստրության 8 ձեռնարկություններում, տեղական արդյունաբերության մինիստրության 4 ձեռնարկություններում, մի շարք միութենական ենթակայության արդյունաբերական ձեռնարկություններում:

Հանրապետության Մինիստրների խորհուրդը, կուսակցական կոմիտեները պետք է խստացնեն պահանջկոտությունը մինիստրությունների և ձեռնարկությունների ղեկավարների նկատմամբ և հասնեն այն բանին, որ շտկվի ստեղծված վիճակը: Աշխատանքի արտադրողականության աճի ցուցանիշը պետք է ամենավճռականներից մեկը լինի յուրաքանչյուր ձեռնարկության, աշխատավորական կոլեկտիվի գործունեությունը գնահատելիս:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հավանություն տվեց ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում արված առաջարկությանը, որ կոնկրետ խնդիր դրվի կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների առջև՝ հասնել աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ նվազեցման 0,5 տոկոսով:

Դա պլենումը դիտեց որպես կուսակցության լրացուցիչ առաջադրանք պլանին:

Միանգամայն ակնհայտ է, որ աշխատանքի արտադրողականության լրացուցիչ աճը և ինքնարժեքի լրացուցիչ իջեցումը պետք է ձեռք բերվեն ի հաշիվ ինտենսիվ գործոնների:

Առանձնապես շատ բանի կարելի է հասնել աշխատանքի կազմակերպումն ու խթանումը կատարելագործելու, մասնավորապես՝ բրիգադային կապալի միջոցով: Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի արագացման փոքր ռեզերվ չէ նաև աշխատանքի նորմավորման բարելավումը:

Մենք պետք է ակտիվորեն ձեռնամուխ լինենք նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը: Կյանքն արդեն ինքն է մեզ կողմնորոշում դեպի խնայողական վերաբերմունքը վառելիքի, մետաղի և նյութական այլ ռեսուրս-

ների նկատմամբ։ Ասենք, պլաններում էլ ձեռնարկությունների առջև խնդիր է դրված ռեսուրսների պահանջարկի մի մասն ապահովել խնայողության հաշվին։

Ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը պետք է դառնա մեր տնտեսավարման անվերապահ սկզբունքը։

Իսկ այդպե՞ս է արդյոք։ Ո՛չ, այդպես չէ։ Շատ ձեռնարկություններում ու տնտեսություններում մեծ են կորուստները, հաճախ չափազանցվում են նյութատեխնիկական պահանջմունքները, դանդաղ է ընթանում նյութախնայողական և էներգախնայողական տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրումը, իսկ երբեմն էլ առհասարակ գրեթե ոչինչ չի արվում այդ ասպարեզում։ Մենք ունենք խնայողության մեծ ռեզերվներ։ Սակայն պատշաճ կարգուկանոնի բացակայությունն այդ գործում, նորմավորման թերությունները, թույլ վերահսկողությունը հնարավորություն են ստեղծում շռայլումների, ռեսուրսների վատնման, տարբեր չարաշահումների համար։

Վերցնենք թեկուզ բենզինի ծախսման հարցը ավտոտրանսպորտային ձեռնարկություններում։ Հավելագրումների առկայությունը, լուրջ թերությունները ուղեգրերը լրացնելու, հաշվառման ու հաշվետվության գործում հանգեցնում են բենզինի շռայլումների։ Գաղտնիք չէ, որ առանձին անազնիվ վարորդներ, օգտվելով դրանից, բենզինը վաճառում են մասնավոր ավտոտերերին, մեր ավտոձեռնարկությունները վերածելով բենզինի անվճար դոնորների։ Կամ՝ քի՞չ են փաստերը, երբ ձեռնարկությունների մոտակայքում վաճառում են հենց այդտեղից դուրս տարած նյութերը, պահեստամասեր, այլ և այլ իրեր։

Բոլոր մինիստրություններում ու գերատեսչություններում, յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր տնտեսությունում պետք է միջոցներ մշակվեն ու իրականացվեն հումքի, նյութերի, վառելիքի և էներգիայի ծախսումները նվազեցնելու համար։ Պետք է գործուն միջոցների դիմել դրանց ծախսման նորմավորումը, հաշվառումն ու հաշվետվությունը բարելավելու, սոցիալիստական սեփականության պահպանությունն ուժեղացնելու համար։ Անհրաժեշտ է ամենուրեք կազմակերպել սոցիալիստական պարտավորությունների մշակումը և ընդունումն այդ նպատակով, խնայողության հատուկ հաշիվներ բացել ձեռնարկությունների, կառույցների, սովխոզների, բոլոր կազմակերպությունների համար և ակտիվորեն խրախուսել նրանց, ովքեր առավել բարձր արդյունքների կհասնեն։

Մյուս կողմից, մեր վարչական մարմինները պետք է կտրուկ միջոցներ ձեռնարկեն ժողովրդական բարիքի նկատմամբ ամեն տեսակ ոտնձգությունները խափանելու, այդ բարիքի վատնումով ու շռայլումով զբաղվող անձանց ի հայտ բերելու և խստիվ պատժելու համար։

Հարկավոր է հաստատակամորեն շարունակել ժողովրդական տնտեսության արդյունավետության ռեզերվների որոնումը։

Ընկեր Յու. Վ. Անդրոպովը իր ելույթում կուսակցական կազմակերպությունների ուշադրությունն է հրավիրում այն բանին, որ անհրաժեշտ է բարձրացնել սարքավորումների աշխատանքի հերթափոխայնությունը։ Այստեղ կան արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության աճի հսկայական ռեզերվներ։

Այս առումով մեծ խնդիրներ են ծառացած հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների առջև։ Ցանկացած ճյուղում կարող ենք գտնել սարքավորումների անբավարար օգտագործման փաստեր։

Չնայած հանրապետության մեքենաշինության մեջ սարքավորումների հերթափոխայնության գործակցի բարձրացմանը (1983 թ. այն կազմել է 1,32, 1982 թվականի 1,30-ի փոխարեն), այս գործում մենք ունենք դեռևս լուրջ թերություններ։ Մեքենաշինական ձեռնարկությունների հետազոտված քանակի 64,4 տոկոսը չի հասել հերթափոխայնության գործակցի պլանային մակարդակին։ Ցածր է թվածրագրային կառավարմամբ հաստոցների, ավտոմատացված գծերի հերթափոխայնության գործակիցը։

Հիմնական արտադրության մեջ սարքավորումների հերթափոխայնության գործակցի պլանային մակարդակը հիմնականում չեն ապահովել էլեկտրա-



տեխնիկական, հաստոցաշինական, քիմիական մեքենաշինության, սարքաշինության, թեթև ու սննդի մեքենաշինության ճյուղերը։ Մի շարք ձեռնարկություններ, այդ թվում՝ «Հայքիմմաշ», «Բյուրեղ» արտադրական միավորումները, Չարենցավանի գործիքաշինական և հաստոցաշինական արտադրամիավորումները, Արթիկի վակուումային էլեկտրավառարանների գործարանը, Ստեփանավանի բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների գործարանը և այլ ձեռնարկություններ ոչ միայն չեն ապահովել պլանային մակարդակը, այլև 1982 թվականի համեմատությամբ նվազեցրել են այդ գործակիցը։

Մենք պետք է մեծ ուշադրություն դարձնենք մեքենաշինության պրոբլեմներին։ Չէ որ դա մեր առաջատար ճյուղն է։ Այստեղ է արտադրվում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի շուրջ 30 տոկոսը։ Սա բարձր ցուցանիշ է։ Մենք նպատակադրվել ենք է՛լ ավելի մեծացնելու դրա բաժինը արդյունաբերության մեջ։ Ուրեմն դրա լավ աշխատանքով մեծապես պայմանավորված են ընդհանրապես մեր արդյունաբերության հաջողությունները։ Մյուս կողմից, մենք չպետք է մոռանանք, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրը լուծվելու է հայրենական մեքենաշինության արմատական բարելավման հիման վրա։ Իսկ դա նշանակում է, որ մենք մեքենաշինության մեջ, կարողությունների մեծացմանը զուգընթաց, այդ բնագավառի զարգացման առաջադրանքները լիովին կատարելով հանդերձ, պետք է ըստ ամենայնի բարելավենք մեքենաշինական ճյուղերի աշխատանքը, շեշտը դնենք թողարկվող արտադրանքի որակի, դրա տեխնիկական մակարդակի բարձրացման վրա։ Իսկ դա կուսակցական կոմիտեներից և կազմակերպություններից պահանջում է առանձնահատուկ եռանդով և պատասխանատվությամբ ձեռնամուխ լինել բոլոր աշխատողների՝ թե՛ բանվորների, թե՛ ինժեներների և թե արտադրության բոլոր մյուս մասնագետների որակավորման բարձրացմանը։ Այստեղ առանձնապես կարևոր է, որ ապահովվի մեր ինժեներ-տեխնոլոգների և ինժեներ-կոնստրուկտորների ստեղծագործական աշխատանքը։

Այստեղ, ինչպես յուրաքանչյուր արտադրության մեջ, բարձր որակավորման բանվորների ու մասնագետների բարեխիղճ, որակյալ աշխատանքի համաձուլվածքը, արտադրության լավ կազմակերպման պարագայում, կապահովի գլխավոր խնդրի լուծումը՝ մեքենաշինության մակարդակի բարձրացումը, դրանով իսկ լայն հնարավորություններ ստեղծելով գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար։

Դուք լավ գիտեք, որ հանրապետությունում արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի ավելի քան 80 տոկոսը ստացվել է ձեռնարկությունների վերակառուցման և տեխնիկական վերազինման հաշվին։ Այս կուրսը մենք այսուհետև էլ պետք է շարունակենք։ Շեշտը դնել վերակառուցման վրա՝ նշանակում է շեշտը դնել ժողովրդական տնտեսության ճյուղերի արդյունավետության բարձրացման վրա։ Ուստի մենք այսուհետ ևս նոր արտադրական օբյեկտներ ստեղծելով և կառուցելով դրանք այնտեղ, ուր ձեռնտու է և անհրաժեշտ, միաժամանակ պետք է ուժեղացնենք ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերակառուցման աշխատանքը, արագացնենք դրանց տեխնիկական վերազինումը, որպեսզի դրանք հագեցվեն տեխնիկական բարձր մակարդակի տեխնոլոգիական և այլ սարքավորումներով, ապահովեն աշխատանքի բարձր արտադրողականություն և արտադրանքի ու աշխատանքի բարձր որակ։

Ժողովրդական տնտեսությունը պետք է հետևողականորեն զինվի բարձրարդյունավետ տեխնիկայով, իսկ դրա համար մենք պետք է թողարկենք հենց այդպիսի տեխնիկա։ Չէ՛ որ հանրապետության արդյունաբերության թողարկած մեքենաներն ու սարքավորումները օգտագործվում են երկրի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։ Իսկ եթե դրանք բարձրարդյունավետ չեն, զիջում են հայրենական և արտասահմանյան համանման լավագույն նմուշներին, ուրեմն չեն կարող նպաստել արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այստեղից էլ՝ մեր բարձր պատասխանատվությունը և մեր խնդիրները։

Արտադրանքի որակի բարձրացումը մեր կուսակցության ու պետության արդի տնտեսական և տեխնիկական քաղաքականության գլխավոր նպատակներից մեկն է։ Վերջին տարիներս հանրապետությունում այդ ասպարեզում քիչ բան չի արվել։ Բարձրորակ արտադրանք են թողարկում հանրապետության արդյունաբերական շատ միավորումներ ու ձեռնարկություններ, որոնց դրական աշխատանքը մենք բազմիցս դրվատել ենք։

Սակայն, ցավոք, քիչ չեն և այնպիսիք, որոնք հարկ եղած միջոցներ չեն ձեռնարկում որակի բարձրացման, ստանդարտների պահանջները և տեխնիկական պայմանները խստիվ պահպանելու համար, շարունակում են թողարկել և սպառողներին մատակարարել ցածրորակ արտադրանք, որը հարուցում է գնորդների արդարացի գանգատներն ու դժգոհությունը, դառնում չվաճառվող, ոչ գնայուն ապրանքաքանակի գոյացման աղբյուր, հանգեցնում ծախսվող աշխատանքային, նյութական, էներգետիկ և այլ ռեսուրսների չհատուցվող կորուստների։

Չնայած այն հանգամանքին, որ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում ավելանում է պետական որականիշով թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը, և այդ ցուցանիշով մեր հանրապետությունը երկրորդ տեղն է գրավում երկրում, այնուհանդերձ, մեզ չի բավարարում որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանքի թողարկումն ավելացնելու նպատակով իրականացվող աշխատանքը։ Մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների, արտադրական միավորումների ու ձեռնարկությունների անբավարար աշխատանքի հետևանքով 1983 թվականին այդտեղ նվազել է որակի բարձրագույն կատեգորիայի արտադրատեսակների քանակը։ Ավելին՝ ցածրորակության պատճառով 48 արտադրատեսակ զրկվել է որականիշից։ Անթույլատրելի է, որ որականիշով արտադրանքի քանակը դանդաղ է ավելանում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ոլորտում։ Լուրջ քննադատության է արժանի և այն, որ մի շարք ձեռնարկություններում պետական որականիշով արտադրանքի ծավալը տարիներ շարունակ մնում է անփոփոխ։ Այսպես՝ «Հայավտո» արտադրամիավորումում այն կազմում է ընդհանուր ծավալի 0,2 տոկոսը, «Հայապակի» արտադրամիավորումում՝ 1,5, Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանում՝ 1,2, «Հաստոցանորմալ» գործարանում՝ 2,5, Երևանի մետաքսի կոմբինատում՝ 3, կերամիկական իրերի կոմբինատում՝ 4,8, Լենինականի հղկող հաստոցների գործարանում՝ 6,1, հեծանիվների գործարանում՝ 4,2, Կիրովականի մորթեղենի ֆաբրիկայում՝ 4,6, տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 4,4 տոկոս։

Հանրապետության շուրջ 100 ձեռնարկություններ ու միավորումներ, որոնց արտադրանքը ենթակա է ատեստավորման, այդ թվում՝ «Սևանի» և «Հայվեբելակմեքենա» արտադրամիավորումները, Երևանի մահուդի ֆաբրիկան, Լենինականի էլեկտրակենցաղսարք գործարանը, Լուսակերտի փականաբռնակների գործարանը և մի շարք այլ ձեռնարկություններ պետական որականիշով ոչ մի արտադրատեսակ չեն թողարկում։ Այդ բոլոր ձեռնարկությունները, ըստ էության, ետ մնացողներ են, որովհետև դրանք չեն կատարում կուսակցության հիմնական պահանջներից մեկը՝ ըստ ամենայնի բարձրացնել թողարկվող արտադրանքի որակը, ապահովել տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներ ունեցող, ժամանակակից լավագույն նմուշների մակարդակին համապատասխանող արտադրանքի թողարկումը։

Արդյոք ժամանակը չէ՞, որ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները գործնականորեն բարձրացնեն պահանջկոտությունը հիշյալ ձեռնարկությունների ղեկավարների հանդեպ արտադրանքի որակի բարելավման հարցում։

Մեր արտադրանքը, հանրապետությունում պատրաստվող մեքենաներն ու սարքավորումները, բոլոր արտադրատեսակները պետք է լինեն բարձրորակ, այնպիսիք, որ դրանց գերապատվություն տրվի ներմուծվող ապրանքների համեմատությամբ։ Սա կարևոր է ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական առումով։



Խոսելով այս մասին, հարկ ենք համարում մեկ անգամ էլ շեշտել անհրաժեշտ քանակությամբ և ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների թողարկման կարևորությունը։ Մեր պարտքն է, պատվի գործը շուկան այնպես հագեցնել ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքներով, որ լիովին բավարարվի գնորդների պահանջարկը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում հատկապես շեշտվեց, որ էկոնոմիկայի ասպարեզում մեր բոլոր ջանքերը վերջին հաշվով նպատակամղված են ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը։ Սա մեր պլանների գլխավոր սոցիալ-քաղաքական նպատակն է։ Այդ ուղղությամբ ձեռք բերված հաջողություններն անվիճելի են։ Անշեղորեն բարձրանում է ժողովրդի բարեկեցությունը, բարելավվում բնակչության սպասարկումը։ Սակայն սպասարկման ոլորտի աշխատանքի մակարդակը դեռևս չի համապատասխանում ներկայացվող բարձր պահանջներին, այստեղ քիչ չեն չլուծված պրոբլեմները, թերություններն ու թերացումները։

Մանրածախ ապրանքաշրջանառության պլանը 1983 թվականին հանրապետությունում կատարվել է 94,2 տոկոսով, պետական առևտրի համակարգում՝ 95,1, սպառողական կոոպերացիայի համակարգում՝ 91,8 տոկոսով։ Չնայած 1982 թվականի համեմատությամբ ապրանքաշրջանառության 3,2 տոկոս աճին, 1983-ի պլանով նախատեսվածից քիչ է վաճառվել ավելի քան 171 միլիոն ռուբլու ապրանք։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գտնում է, որ պլանների թերակատարումը ոչ միայն շուկայի կոնյունկտուրայի փոփոխության, այլև առավելապես առևտրի մինիստրության և Հայկոոպի վարչության կազմակերպչական աշխատանքի ցածր մակարդակի հետևանքն է, առևտրական կազմակերպությունների գործունեության կառավարման և կոորդինացման՝ իրենց ֆունկցիաների անբավարար կատարման հետևանքը։

Առևտրական շատ կազմակերպություններում լուրջ թերություններ կան ապրանքների փոխադրման ու բաշխման գործում, չի ապահովվում դրանց մանրումը, ռիթմիկ ու օպերատիվ առաքումը գնորդին։ Հանրապետության առևտրի մինիստրության կողմից հարկ եղած վերահսկողության բացակայության հետևանքով մեծածախ բազաները չեն ապահովում ապրանքների ռիթմիկ առաքումը մանրածախ ցանցին, դրանով իսկ ստեղծելով ապրանքների արհեստական դեֆիցիտ։ Անցյալ տարվա միայն նոյեմբեր ամսվա երրորդ տասնօրյակում բազաներից բաց է թողնվել բոլոր ապրանքների 51 տոկոսը, այդ թվում վերջին երկու օրվա ընթացքում՝ ավելի քան 12 տոկոսը։

Առևտրական կազմակերպությունների անբավարար կազմակերպչական աշխատանքից զատ, մանրածախ ապրանքաշրջանառության պլանի թերակատարման պատճառներից մեկն էլ այն է, որ պահպանվում է, իսկ մի շարք դեպքերում խորանում մի կողմից՝ բնակչության պահանջարկի և մյուս կողմից՝ շատ ապրանքների տեսականու և որակի անհամապատասխանությունը։

Ներկայումս հանրապետություն է ներմուծվում ժողովրդական սպառման ավելի քան 900 անուն ապրանք։ Այդ ապրանքների ցանկի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դրանց մեծ մասի արտադրությունը կարելի է կազմակերպել հանրապետության ձեռնարկություններում, հատկապես միութենական ենթակայության ձեռնարկություններում։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է իր իրավունքներն ավելի ակտիվորեն օգտագործի ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կազմակերպման գործում։ Չէ՞ որ նա իրավունք ունի ձեռնարկությունների համար, անկախ դրանց գերատեսչական պատկանելությունից, սահմանել աշխատավարձի ֆոնդի ռուբլու դիմաց հիշյալ ապրանքների թողարկման առաջադրանքները։ Ինչպես նշվեց Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, խելամիտ օգտագործման դեպքում այդ ցուցանիշը կարող է դառնալ ձեռնարկության և մինիստրության վրա ներգործելու լուրջ լծակ։

Մինչդեռ հանրապետության տարածքում գտնվող միութենական ենթակայության շատ ձեռնարկություններում աշխատավարձի ֆոնդի մեկ ռուբլու

դիմաց թողարկվող ժողովրդական սպառման ապրանքների քանակը շատ փոքր է և 20 կոպեկից չի անցնում։ Դրանց թվում են «Հայլալու», «Էլեկտրոն» արտադրամիավորումները, Երևանի սարքերի գործարանը և այլ ձեռնարկություններ։

Անհրաժեշտ է նշել նաև, որ հանրապետությունում բարվոք վիճակում չէ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության կոորդինացման գործը։ Այստեղ պետք է ավելի ակտիվ դեր խաղան նաև մեր առևտրական կազմակերպությունները, որոնց ղեկավարները (ընկ. ընկ. Ս. Սաֆարյան և Է. Սարգըսյան) ինչ-ինչ պատճառներով չեզոքություն են հանդես բերում, բավարարվելով միայն առկա թերությունների քննադատությամբ, իսկ գործարար, կոնստրուկտիվ առաջարկություններով հանդես չեն գալիս։

Կենցաղսպասարկման մինիստրությունը (ընկ. Ս. Թումանյան), շարունակելով տվյալ բնագավառի նյութատեխնիկական բազայի զարգացման աշխատանքը, ակտիվորեն արմատավորելով աշխատանքի ինդուստրիալ մեթոդներ, պետք է հատուկ ուշադրություն նվիրի սպասարկումների ոչ արտադրական տեսակների, այդ թվում և նորոգման աշխատանքների առավել արագ զարգացմանը։ Առանձնապես ետ է մնում գյուղական բնակչության սպասարկումների ոչ արտադրական տեսակների զարգացումը (ըստ առանձին տեսակների՝ 3—15 անգամ պակաս, քան քաղաքում)։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և կենցաղսպասարկումների ծավալների մեծացման հարցերը պետք է իրենց արտացոլումը գտնեն ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և հանրապետության բնակչության սպասարկումների համակարգի զարգացման ներկայումս մշակվող կոմպլեքսային ծրագրում։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, պահանջեց լիովին և բարձր հատուցմամբ գործադրել արտադրական և գիտատեխնիկական առկա պոտենցիալը։ Այս պրոբլեմը հանրապետության ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում, պետք է ասել, առայժմ շատ դանդաղ է լուծվում։

Վերցնենք, օրինակ, թեթև արդյունաբերությունը, որտեղ մանվածքային արտադրությունը ճյուղի ուրիշ շատ ձեռնարկությունների աշխատանքի հիմքն է։ Բայց ինչպե՞ս են այստեղ օգտագործվում դրա կարողությունները։ Բամբակի մանածագործության ասպարեզում՝ 71,7 տոկոսով, մահուդի մանվածքի արտադրությունում՝ 51,7, նուրբ մահուդի մանվածքի արտադրությունում՝ 78,3 տոկոսով։

Նույն վիճակն է մեքենաշինության ասպարեզում և արդյունաբերության մի շարք այլ ճյուղերում։

Պլանավորման թերությունների, արտադրության անբավարար կազմակերպման, արտադրական օբյեկտների սխալ տեղաբաշխման հետևանքով աշխատուժի բացակայության և այլ պատճառների հետ միասին հանրապետությունում կարողությունների օգտագործման ցածր ցուցանիշներն այսօր բացատրվում են նաև նրանով, որ շատ ձեռնարկությունների կողմից արդյունաբերական արտադրանքի թողարկումը պլանավորվում է փոքր ծավալներով, քանի որ այդ արտադրանքը լայն կիրառում չի գտնում, վատ է սպառվում։ Այդ արտադրանքը, եթե կարելի է այսպես արտահայտվել՝ այժմեական չէ։

Մենք այս մասին բազմիցս խոսել ենք մեր պլենումներում, նախազգուշացրել, որ եթե չապահովենք տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներով արդիական ապրանքների թողարկումը, ապա սպառող չենք գտնի, պատվերներ չենք ստանա, իսկ դա կհանգեցնի թերբեռնման և որպես հետևանք՝ արտադրական առկա պոտենցիալի վատ օգտագործման։ Կյանքը հաստատում է այդ։

Ահա թե ինչու կարողությունների օգտագործման արդյունավետության բարձրացման համար արտադրության և աշխատանքի կառավարումը, կազմակերպումը բարելավելու հետ մեկտեղ մենք պետք է պարտադիր կերպով հասնենք այն բանին, որ թողարկենք արդիական լայն պահանջարկ վայելող, տեխ-



նիկական ու տնտեսական բարձր հատկանիշներ ունեցող արտադրանք։ Այս հարցում, եթե ուզում եք, մենք պետք է առաջինը դուրս գանք շուկա։ Ընդ որում, արտադրանքի մշակման, պատրաստման որակը պետք է լինի շատ բարձր։

Այդ նպատակին հասնելու և առհասարակ մեր ամբողջ էկոնոմիկայի հաջող զարգացման համար անհրաժեշտ է մշտապես և հաստատակամորեն զբաղվել գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ։ Այս առումով, սակայն, մեզանում ամեն ինչ չէ, որ բարվոք է։ Մինչև օրս էլ հանրապետությունում ինչպես հարկն է կարգավորված չէ գիտատեխնիկական աշխատանքների ողջ կոմպլեքսի կազմակերպումը, ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղեր դոփում են տեղում, չեն կատարում նոր տեխնիկայի ներդրման պլանները, ասենք նաև, որ այդ պլանների մասշտաբայնությունն էլ առավել ցանկալի տեղիք է տալիս։

Վերցնենք թեկուզ շինանյութերի արդյունաբերության օրինակը։ Չէ՞ որ սա այն ճյուղն է, որտեղ, իր յուրահատկության բերումով, մենք պետք է սեփական ուժերով ավելի մեծ չափի գիտահետազոտական աշխատանքներ կատարեինք և դրանց արդյունքներն արմատավորեինք արտադրության մեջ, նպատակ ունենալով կոմպլեքսայնորեն, առավելագույն արդյունավետությամբ օգտագործել մեր ոչ հանքային շինանյութերը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, թողարկվող արտադրանքի որակը։

Ժողովրդական տնտեսության մեր ամենահին ճյուղերից մեկը, ցավոք, դեռևս ունի նույնքան հին չլուծված բազմաթիվ հարցեր։ Վաղուց մեզանում արմատացած այն վնասակար հոգեբանությունը, թե մեր հանրապետությունը հարուստ է քարերով, ոչ հանքային շինանյութերով, հանգեցրել է այդ նյութերի անփույթ, անհաշվենկատ օգտագործման։ Տեխնոլոգիայի հետամնացության պատճառով շատ ցածր, անթույլատրելիորեն ցածր է շինանյութերի կորզման արդյունավետության աստիճանը։

Ճիշտ է, շինանյութերի արդյունաբերության մինիստրության ղեկավարությունը վերջին տարիներս միջոցառումներ է մշակում և իրականացնում արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման նպատակով։ Սակայն այդ միջոցառումները դեռևս չեն ամրապնդվում ֆինանսական և նյութատեխնիկական անհրաժեշտ ռեսուրսներով, հետևողական կազմակերպական աշխատանքով։ Դրանց իրականացումը կարիք ունի միութենական մինիստրության և հանրապետության կառավարության ակտիվ օժանդակությանը։

Մարմար ենք հանում, կեսից ավելին կորցնում ենք։ Տուֆ, ֆելզիտ ենք հանում, դարձյալ կորցնում ենք։ Սրան գումարած՝ ինչպես հարկն է չենք օգտագործում քարի ջարդոնը, որի կույտերը արդեն միլիոնավոր խորանարդ մետրի են հասնում։ Պեռլիտը, լցանյութերը և այլ շինանյութեր օգտագործվում են ոչ ռացիոնալ կերպով, միակողմանիորեն։ Ուրիշ սպառողներ մեր պեռլիտն օգտագործում են վերամշակած, իսկ մենք՝ ոչ։ Պատճառը մեկն է՝ պահպանողականությունը, որ հանդես են բերում ինչպես մեր մինիստրությունը, հետազոտական ու նախագծային ինստիտուտները, որոնց պարտքն է կատարել մեր ոչ հանքային շինանյութերի կոմպլեքսային օգտագործման մշակումներ, հետազոտություններ և իրացնել դրանց արդյունքները, այնպես էլ շինարարները, որոնք արտադրության մեջ շատ վատ ու դանդաղ են ներդնում նորը։ Իսկ հանրապետության պետշինը, որը պետք է այդ աշխատանքներին ուղղություն տա, լինի այդ գործի գաղափարախոսը, առհասարակ մի կողմ է քաշվել։

Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումներով, գիտատեխնիկական առաջընթացի արագացման վերաբերյալ Կենտկոմի հայտնի որոշումով, կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները պետք է ըստ ամենայնի ակտիվացնեն իրենց գործունեությունն այս ասպարեզում, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը նպատակամղեն գիտատեխնիկական առաջընթացի արագացման մեր ծրագրերի անվերապահ կատարմանը, մշտապես հիշելով, որ դա արտադրության արդյունավետության,

աշխատանքի արտադրողականության աճի և արտադրանքի բարձր որակի ապահովման ամենաճիշտ ուղին է։

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներից, ՀԿԿ Կենտկոմը և կառավարությունը մշակել են համապատասխան միջոցառումներ հանրապետությունում գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու համար։

Պետք է բարձրացնել մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների տնտեսական ու տեխնիկական ղեկավարների պատասխանատվությունը գիտատեխնիկական առաջընթացի արագացման համար, ընդ որում՝ ոչ թե խոսքով, այլ գործով։

Հանրապետությունում կապիտալ շինարարության մասշտաբներն աճում են։ Ինչպես բազմիցս նշվել է, դրա հետ է ուղղակիորեն կապված արդյունաբերական արտադրության զորացման, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման մեր պլանների իրականացումը, սոցիալական շատ հարցերի լուծումը։

Հնգամյակի անցած երեք տարում իրացվել են 520 մլն ռուբլով ավելի պետական կապիտալ ներդրումներ, քան տասներորդ հնգամյակի նույն ժամանակամիջոցում։ Երեք տարվա գումարով մենք իրացրել ենք հնգամյա կանխանշումների մակարդակին հավասար կապիտալ ներդրումներ։ Ինչպես տեսայինք վերը, 1983 թվականին շինարարները որոշ չափով բարելավել են աշխատանքի ցուցանիշները։

Սակայն կապիտալ շինարարության մեջ տիրող վիճակը դեռևս մեզ չի բավարարում։ Բանն այն է, որ ինչպես արտադրական, այնպես էլ ոչ արտադրական շինարարության մեջ լրիվ չափով չեն իրացվել կապիտալ ներդրումների հնգամյա պլանով նախատեսվածից բարձր ամենամյա լիմիտները։ Չի ապահովվում կարողությունների և օբյեկտների ժամանակին գործարկումը արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։ Շինարարական կոմպլեքսը չի ապահովում բնակարանների, սոցիալական, կուլտուր-կենցաղային նշանակության այլ օբյեկտների շինարարության պլանների կայուն, համաչափ և լրիվ կատարումը։

Շինարարական կազմակերպությունների ղեկավարների երկարաշունչ բացատրությունները աշխատանքի ձախողումների օբյեկտիվ պատճառների վերաբերյալ անհիմն են, քանի որ տարեցտարի ավելանում են այդ ճյուղում կատարվող ներդրումները, ամրապնդվում է նրա ինդուստրիալ բազան, կառույցներն ավելի լավ են հագեցվում տեխնիկայով։ Կան համապատասխան նախագծային ինստիտուտներ։ Կան կադրեր։ Բայց հստակություն ու ձեռնեբեցություն չկա կադրերի աշխատանքում, չկա պատշաճ պատասխանատվություն, նրանց նկատմամբ բարձր պահանջկոտություն հանդես չի բերվում պարտականությունների անբասիր կատարման, առաջադրված խնդիրների անվերապահ լուծման համար։

Կապիտալ շինարարության մեջ մենք ցանկալի բեկման չենք հասնի, եթե չապահովենք ինվեստիցիոն պրոցեսի պրոբլեմների կոմպլեքսային լուծումը։ Բանն այն է, որ այստեղ չկա գործողությունների կշռադատված, սիստեմային ծրագիր, չնայած որ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարը պահանջեց հենց այդպիսի ծրագիր մշակել և իրականացնել։

Մեզանում ջանում են հարցերը լուծել մաս առ մաս։ Կապալառուների և պատվիրատուների փոխգործողության և փոխպատասխանատվության լավ մտածված համակարգի կիրառման, իրենց պարտականությունները չկատարելու համար նրանց խստորեն պատժելու փոխարեն՝ սովորույթ են դարձել թերի ձեռնարկումները, կիսամիջոցները, խրատական հորդորները։

Մենք մեկ անգամ չէ, որ խոսել ենք մասսայական բնակարանային շինարարության որակի բարձրացման, կառուցվող շենքերի ճարտարապետական տեսքի բարելավման անհրաժեշտության մասին։ Բայց առայժմ շոշափելի դրական արդյունքներ չկան։ Հանրապետության Մինիստրների խորհուրդը այդպես էլ չկարողացավ հասնել կենսականորեն կարևոր այդ պրոբլեմի լուծմանը։



Եվ դարձյալ այն պատճառով, որ չկա գործողությունների հստակ ծրագիր։ Չկա բնակարանային շինարարության հեռանկարային կոմպլեքսային պլան՝ հիմնըված դեմոգրաֆիական զարգացմամբ պայմանավորված նրա ստրուկտուրայի ճշգրիտ հաշվառման վրա, չկան նոր նախագծեր, շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների վերակառուցման՝ այդ նախագծերին համապատասխանող պլաններ և այլն։ Պետպլանն էլ իր հերթին կոնստրուկտիվ, նպատակասլաց առաջարկություններ չի անում, ակտիվ պլանավորման միջոցով չի ներգործում իրադրության վրա։

Իբրև արդյունք, մենք կառուցում ենք հին ձևով, և որ ամենակարևորն է՝ տակավին թանկ, ճարտարապետական տեսակետից անարտահայտիչ։ Էլ չենք խոսում այն մասին, որ կառուցապատման համար առանց նպատակային խընդիրներ լուծելու զբաղեցնում ենք մեզ համար այնքան թանկ հողատարածություններ։

Գլխավոր հետևությունը, որ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի, մեր այսօրվա պլենումի որոշումներից պետք է անեն ընկերներ Հ. Հայրապետյանը, Կ. Մարությանը, Է. Ավագյանը, Գ. Թադևոսյանը, կապիտալ շինարարության հետ առնչություն ունեցող մյուս ընկերները, այն է, որ նրանք պետք է մեծագույն պատասխանատվությամբ լուծեն շինարարության հարցերը, հանդես բերեն ստեղծագործական մոտեցում, միշտ նկատի ունենան, որ այստեղ պետք է լիովին բացառված լինեն նեղ գերատեսչական նկատառումները, պահպանողականությունը, ինքնապահովագրումը, ձևամոլությունը։

Եվ ապա։ Շինարարությունը միայն շինարարական կազմակերպությունների գործը չէ, պատվիրատուները պետք է նրանց հավասար պատասխանատվություն կրեն կապիտալ շինարարության վիճակի համար։ Չի կարելի քննադատությունից պատսպարել այն պատվիրատուներին, որոնց մեղքով ձախողվում է շինարարությունը և օբյեկտի գործարկումը։ Ահա ձեզ երկու ակնբախ օրինակ։ Պատվիրատուի՝ «Պոլիվինիլացետատ» գործարանի դիրեկցիայի մեղքով մի ամբողջ տարի ձգձգվում էր երկրի համար շատ անհրաժեշտ արտադրանքի թողարկման կարողությունների գործարկումը, որի պատճառով հանրապետությունն արդարացիորեն քննադատվեց դիրեկտիվ մարմինների կողմից։

Կամ՝ մելամինի արտադրության լրացուցիչ կարողությունները նախատեսված ժամկետներում չեն գործարկվում, քանի որ պատվիրատուն՝ Կիրովականի քիմգործարանի դիրեկցիան, ժամանակին չի ապահովում սարքավորումների մատակարարումը։ Մենք պետք է վճռականորեն ազատվենք այս թերություններից։

Չի կարելի, ընկերնե՛ր, հանդուրժել շինարարության ցածր որակը։ Չէ՞ որ վատ շենքերը փաստորեն անբարեխիղճ աշխատանքի, անպատասխանատվության հուշարձաններ են դառնում երկար ու երկար տարիներ։ Սերունդները բարի խոսքով չեն հիշի նրանց, ովքեր այդքան անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերել մեր մայրաքաղաքի, մեր յուրաքանչյուր քաղաքի նկատմամբ։

Մենք իրավունք չունենք ցածր որակով աշխատելու գործունեության և ոչ մի ասպարեզում։ Տնտեսական մեծ վնասից բացի, մենք նաև բարոյական մեծ կորուստ ենք կրում։ Մեր երեխաները, երիտասարդությունը դաստիարակվում են նաև այն ամենով, ինչը նրանց շրջապատում է, ինչ նրանք օգտագործում են, հագնում են, սպառում։ Մի խոսքով, թե՛ շինարարության և թե արտադրանքի ու աշխատանքի որակով է պայմանավորված նաև մեր դաստիարակչական խնդիրների լուծումը։

Ընկերնե՛ր։

Կենտկոմի պլենումը պահանջեց, շեշտում է զեկուցողը, շխուլացող ուշադրություն նվիրել տրանսպորտի աշխատանքին, ավելի արագ և լրիվ օգտագործել նրա խոշոր ռեզերվներն ու հնարավորությունները։ Հարկավոր է կրճատել տրանսպորտային ծախսերը, բեռների ոչ ռացիոնալ փոխադրումները, բացառել հանդիպական փոխադրումները։

Այդ հարցերի լուծման նկատառումով պետք է ակտիվորեն աշխատի հան-

ընկ. Ջ. Կուրբանովը, շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Հակոբյանը մտածելու շատ բան ունեն։

Հանրապետությունում ամեն տարի գյուղատնտեսական շրջանառությունից դուրս են մնում բավականաչափ ոռոգելի հողատարածություններ։ Ներտնտեսային ոռոգման ցանցերի ու կառուցվածքների, ոռոգման տեխնիկայի անսարքության, հողերի հարթաչափման բացակայության և այլ պատճառներով միայն անցյալ տարի չի ջրվել 11,1 հազար հեկտար ոռոգելի հող։

Սրանք տագնապալի փաստեր են և վկայում են այն մասին, որ համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, տեղական կուսակցական, սովետական, գյուղատնտեսական ու ջրատնտեսական մարմինները դեռևս պատշաճ պատասխանատվությամբ չեն վերաբերվում հանրապետության ոռոգելի ֆոնդի օգտագործմանը։

«Հայգլխջրշինի» (ընկ. Մ. Գևորգյան) կողմից ջրատնտեսական շինարարությունը առաջվա նման կատարվում է ոչ կոմպլեքսային ձևով։ Ջրամբարների շինարարության տեմպերը զգալիորեն գերազանցում են հողերի յուրացման տեմպերին։ «Հայգյուղտեխպետկոմը», «Հայգլխջրշինը» և հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը բավարար միջոցներ չեն ձեռնարկում կուլտուր-տեխնիկական աշխատանքների պլանների կատարման համար։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է գործնական միջոցառումներ մշակի հողագործության գիտականորեն հիմնավորված համակարգերի արմատավորման, հանդակների մելիորատիվ վիճակի բարելավման, կուլտուր-տեխնիկական աշխատանքների տեմպերի արագացման, ջրատնտեսական համակարգերի շահագործման կատարելագործման, ոռոգման արդյունավետ եղանակների և ցանքերի ռացիոնալ կառուցվածքի լայն արմատավորման հիման վրա ոռոգելի հողերից արագ և բարձր հատույցում ապահովելու նպատակով։ Մենք պետք է առավելագույն հատույցում ստանանք ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարից։

Դեռևս ցածր է անասնապահության ինտենսիվացման մակարդակը։ Հայտնի է, որ անասնապահության ինտենսիվությունը գլխավորապես պայմանավորված է յուրաքանչյուր գլուխ անասունի և առանձնապես մայրական կազմի ինտենսիվ օգտագործումով։

Մինչդեռ առանձին շրջաններում և շատ տնտեսություններում գյուղատնտեսության մինիստրության, կուսակցության շրջկոմների, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմների և շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդների թողտվությամբ բարձիթողի է մատնված ցեղաբուծական աշխատանքը և անասունների արհեստական սերմնավորումը, ցածր է նախրի վերարտադրության, անասունների ռացիոնալ կերակրման կազմակերպման գործը։

Առանձնապես մեծ թերություններ կան կովերի ռացիոնալ օգտագործման գործում։ Հինգ—ութ տարեկան հասակում, այսինքն՝ առավել բարձր մթերատվության շրջանում, կովերի զգալի խոտանման պատճառով հանրապետության կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում դրանց գլխաքանակը աճում է աննշան տեմպերով, բարձր է տասը տարեկանից մեծ կովերի տեսակարար կշիռը։ Ազիզբեկովի, Եղեգնաձորի, Շամշադինի, Իջևանի, Կրասնոսելսկի, Սևանի, Թալինի, Գուգարքի և այլ շրջանների առանձին տնտեսություններում տասը տարեկանից մեծ կովերի տեսակարար կշիռը կազմում է 40—60 տոկոս։ Որպես հետևանք, զգալիորեն իջնում է նախրի մթերատվությունը։ Եվ այս պայմաններում էլ դանդաղորեն է նորացվում կովերի գլխաքանակը։

Հետաքրքրական է նշել, որ մերձբալթյան հանրապետությունների տնտեսություններում 10 տարեկանից մեծ կովերի տեսակարար կշիռը 1—2 տոկոսից չի անցնում։

Նախրի վերարտադրության համար մեզանում ծայրահեղորեն անբավարար են օգտագործվում տնտեսություններում եղած էգ մոզիները։ Հանրապե-



տության տնտեսություններում տարեկան պահվում են երկու տարեկանից բարձր ավելի քան 44 հազար գլուխ չզուգավորված մոզիներ։ Եվ միայն 30—34 հազար գլուխ երինջներ են փոխադրվում կովերի խումբ։ Կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում կովերի խոտանումը 3—5 կետով գերազանցում է դրանց համալրմանը։ Այս ամենը հանգեցնում է մայրացու գլխաքանակի խնամքի ոչ մթերատու ժամանակաշրջանի մեծացման, հորթերի, մսի, կաթի զգալի թերստացման։

Նաև դրանով պետք է բացատրել այն, որ կաթի մթերման 1983 թվականի պլանը չեն կատարել Կալինինոյի շրջանը (շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Մեհրաբյան)՝ 97 տոկոս, Թումանյանի շրջանը (շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Սիմոնյան)՝ 95,6 տոկոս, Մասիսի և Սևանի շրջանները։ Տասնհինգ շրջաններ, այդ թվում նաև վերոհիշյալները, նվազեցրել են կաթի մթերման ծավալները։ Մսի վաճառքի պլանը չի կատարել և պետությանը 1982 թվականից պակաս միս է վաճառել Իջևանի շրջանը (շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ջ. Անանյան)։

Մենք պետք է վճռականորեն բարելավենք թռչնի մսի արտադրությունը, առանձնակի ուշադրություն նվիրելով դրա որակը ամենաբարձր մակարդակի հասցնելուն։

Լիովին համաձայնելով արդյունաբերության կողմից կերի որակը բարձրացնելու անհրաժեշտության մասին թռչնապահների արդարացի պահանջներին և մթերումների մինիստրության (ընկ. Ռ. Շահբազյան) առջև խնդիր դնելով սպառիչ միջոցներ ձեռնարկել բրոյլերային համալիրները լիարժեք կերով ապահովելու համար, մենք այսօր անհրաժեշտ ենք համարում գյուղատնտեսության մինիստրությանը (ընկ. ընկ. Հ. Թարջումանյան, Վ. Սերոբյան) և «Հայթռչնարդին» (ընկ. Ա. Ազատյան) մեկ անգամ ևս մատնանշել այդ վարչության աշխատանքներում առկա լուրջ թերությունները։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ թռչնի մսի արտադրության և պետությանը վաճառքի պլանների թերակատարման գլխավոր պատճառները կազմակերպական-տեխնոլոգիական կարգի թերություններն են, պատշաճ վերահսկողության և հանձնարարված գործի համար տնտեսությունների ղեկավարներին և մասնագետներին ներկայացվող պահանջկոտության բացակայությունը։ Բազմաթիվ լուրջ թերություններ կան նաև միս արտադրող պետական համալիրների աշխատանքում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը նման վիճակը համարում է անթույլատրելի և գյուղատնտեսության մինիստրությունից պահանջում է անհետաձգելի միջոցներ ձեռնարկել ապահովելու պլանների կատարումը։ Մենք պարտավոր ենք անասնապահությունն ավելի արագորեն փոխադրել ինտենսիվ ուղու վրա։ Ինչո՞ւ ենք մենք այսպես սուր դնում հարցը։

Հաշվարկները ցույց են տալիս, որ 1990 թվականին մսի և կաթի արտադրության մարզում պարենային ծրագրով նախատեսված բնագծերին հասնելու համար անասնապահության մթերատվության ներկա մակարդակի պայմաններում մենք պետք է անասունների գլխաքանակը մեծացնենք 100 հազար պայմանական գլխով, այդ թվում՝ 40 հազար գլուխ կով, իսկ դա կպահանջի ավելի քան 200 միլիոն ռուբլի լրացուցիչ կապիտալ ներդրումներ անասնապահական շենքերի կառուցման համար, կերի կուլտուրաներին լրացուցիչ հատկացնել 50—55 հազար հեկտար վարելահող և ներգրավել 4—4,5 հազար միավոր լրացուցիչ մարդկային ռեսուրսներ։

Ինտենսիվացումը հնարավորություն կտա ոչ միայն մեծացնելու անասնապահական մթերքների արտադրության ծավալները, այլև ազատել զգալի կապիտալ ներդրումներ, դրանք օգտագործել գյուղի սոցիալական զարգացման համար։

Հանրապետության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը, պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխպետկոմը», մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է մշակեն և իրականաց-

նեն անասնապահության ինտենսիվացման, բոլոր գյուղատնտեսական կենդանիների ռացիոնալ օգտագործման մի ամբողջ շարք լրացուցիչ միջոցառումներ։ Այս բնագավառում մենք փորձ ունենք, ընդ որում՝ շատ ուսանելի։

Հրազդանի շրջանի Ջրառատի կաթնային համալիրի 1.000 գլուխ կովերի միջին կաթնատվությունը կազմել է 4.200 կիլոգրամ։ Ուրախալի է, որ այդ ցուցանիշը ձեռք է բերվել լեռնային պայմաններում։ Նաիրիի շրջանի Նոր Երզնկա գյուղում յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը կազմել է 5.070 կիլոգրամ։ Թվարկումը կարելի է շարունակել։ Նման բնագծեր նվաճելու պոտենցիալ հնարավորություններ կան հանրապետության բոլոր շրջաններում։ Ամեն ինչ պայմանավորված է միայն գործի կազմակերպումով, գրագետ, լավ աշխատանքով։

Քիչ ռեզերվներ չկան ոչխարաբուծության ինտենսիվացման ասպարեզում։ Ամեն տարի հանրապետության կոլտնտեսությունները և պետական տնտեսությունները ստանում են մոտ 300 հազար գլուխ արու գառներ, որոնցից միայն 20—25 հազար գլուխն է բտվում և պետությանը հանձնվում նույն տարում։

Մինչդեռ, ինչպես այդ մասին արդեն ասվել է մեր պլենումներից մեկում, ոչխարների վաղ ծնի արմատավորման և գառների վաղ բտման կազմակերպման պարագայում կարելի է բտել 250—260 հազար գլուխ արու գառներ, դրանց կենդանի քաշը հասցնելով 40—45 կիլոգրամի, որը հնարավորություն կընձեռի ստանալու 5—6 հազար տոննա միս, տնտեսելու 50—60 հազար տոննա բարձրորակ խոտ, ազատելու զգալի քանակությամբ աշխատող ձեռքեր և անասնապահական շենքեր։ Այստեղ նույնպես պահանջվում է միայն աշխատանքի ավելի լավ կազմակերպում, գործի նկատմամբ ավելի շահագրգիռ վերաբերմունք։

Ահա արդեն մեկ տարի է, ինչ գործում են շրջանային ագրոարդյունաբերական միավորումները։ Անցած ժամանակամիջոցում կառավարման այդ մարմինները որոշակի աշխատանք են կատարել կոլտնտեսությունների, սովխոզների, ագրոարդյունաբերական համալիրի այլ ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարումը բարելավելու, գործունեությունը կոորդինացնելու, դրանց տնտեսական ինքնուրույնությունն ու ձեռներեցությունը բարձրացնելու նպատակով։

Դրա հետ մեկտեղ որոշ շրջանային ագրոարդյունաբերական միավորումների խորհուրդներ թարմ շունչ չեն հաղորդել աշխատանքին, չեն հասել ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ձեռնարկությունների կողմից պետական պլանների կատարման ապահովման, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, ցածր շահութաբեր և վնասաբեր տնտեսությունների գործունեության բարելավման։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովը (ընկ. Վ. Մովսիսյան), կուսակցության շրջկոմները պետք է հետևողականորեն բարելավեն շրջանային միավորումների և նրանց խորհուրդների աշխատանքը, ապահովեն առաջավոր փորձի տարածումը։

Անհրաժեշտ է ավելի լայնորեն արմատավորել կոլեկտիվ և ընտանեկան կապալը, որը նպաստում է գյուղի աշխատավորների աշխատանքային ակտիվության, կարգապահության բարձրացմանը և տնտեսական հաշվարկի ամրապնդմանը։

Գյուղատնտեսության զարգացման ինչպես ընթացիկ, այնպես էլ հեռանկարային խնդիրները լուծելիս մենք պետք է ավելի ու ավելի մեծ ուշադրություն նվիրենք տնտեսագիտական աշխատանքի կատարելագործմանը, ավելի խոր վերլուծենք կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրաֆինանսական գործունեությունը, հասնենք ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի արդյունավետության բարձրացման։

Բանն այն է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության և գնումների պլանները մի կերպ կատարելու ետևից ընկած, հաճախ մոռացության է մատնվում գործի տնտեսագիտական կողմը։



Ցավոք, մեզանում դեռ շատ են այնպիսի աշխատողները, որոնք օգտվելով նրանից, որ մենք խիստ շահագրգռված ենք մեծ քանակությամբ մթերքներ արտադրել բնակչության պահանջարկը առավել լրիվ բավարարելու համար, չարաշահում են դա, մթերքներն արտադրում են մեծ ծախսերի գնով, որը բարձրացնում է դրանց ինքնարժեքը։ Ընդ որում, հաճախ անտեսվում է որակը։ Մի խոսքով, նրանց համար միևնույն է, թե ինչ կարժենա արտադրանքը, ապրանքային ինչ տեսք կունենա, միայն թե կատարվի պլանը։ Չէ՞ որ հաղթողներին չեն դատում։ Հարկավոր է վճռականորեն ազատվել դրանից։ Մենք պետք է ոչ միայն ավելի շատ արտադրենք, այլև տանք բարձր որակի և ցածր ինքնաժեք ունեցող արտադրանք։

Մի շարք շրջանների շատ տնտեսություններ կոշտ և հյութալի կեր կուտակելիս հաշվի չեն առնում, թե ինչ ծախսերի գնով են դրանք արտադրվում, ինչպիսին է դրանց որակը և վերջապես ինչպես են օգտագործվում։ Կեր պատրաստող արտադրամասերը, որ բավական թանկ արժեն, աշխատում են առանց պատշաճ հատուցման։ Մեքենայացման նույնքան թանկարժեք միջոցները վատ շահագործման պատճառով օգտագործվում են անարդյունավետ։ Ոչ սրտացավ տնտեսավարման այս և այլ փաստեր, բնականաբար, հանգեցնում են անասնապահական մթերքների թանկացման։

Այսպես, նույն Ամասիայի շրջանում վերջին տարիներս մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը հասել է 37 ռուբլու՝ 1975 թվականի 25 ռուբլու փոխարեն, մսինը համապատասխանաբար 254 ռուբլու՝ 170-ի փոխարեն։ Մեկ ցենտներ կաթի արտադրության վրա ծախսվող մարդ-ժամերի քանակը զգալիորեն գերազանցում է սահմանված նորման։

Արագածի շրջանում մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը 1975 թվականին կազմել է 25,4 ռուբլի, իսկ 1982 թվականին այդ ցուցանիշը հասել է մոտ 40 ռուբլու, իսկ մի շարք տնտեսություններում՝ նույնիսկ 42—46 ռուբլու (Գեղաձոր, Ծաղկահովիտ, Ույա թաղա)։ Շամշադինի շրջանում մեկ աշխատողին ընկնող անասնապահական համախառն արտադրանքը 1975 թվականի համեմատությամբ աճել է 16 տոկոսով (4,2 հազար ռուբլուց՝ 4,9 հազար ռուբլու), իսկ միջին աշխատավարձը՝ 41 տոկոսով։

Նման թերություններ կան նաև հանրապետության մի շարք այլ շրջաններում (Ազիզբեկով, Մարտունի, Գուգարք, Սևան, Իջևան, Գորիս, Թալին և այլն)։

Այս թվերը ցույց են տալիս տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների անբավարար աշխատանքը, տնտեսագիտական աշխատանքի ցածր մակարդակը։

Ինչպես տեսնում եք, մեր տնտեսվարները շատ տեղերում տնտեսագիտության հետ հաշվի չեն նստում, իսկ կուսակցական կոմիտեները սկզբունքային գնահատական չեն տալիս դրան։ Նշենք նաև այս հարցում գյուղատնտեսության մինիստրության տնտեսագիտական ծառայության պասիվ, հայեցողական դիրքը։ Այդ ծառայությունը, որ ղեկավարում է մինիստրի տեղակալ ընկ. Մ. Բաբաջանյանը, պարտավոր է առաջին հերթին և ըստ ամենայնի բարելավել տնտեսագիտական աշխատանքը տնտեսություններում։

Անտնտեսվարություն և շռայլություն թույլ տվող տնտեսական ղեկավարները պետք է դատապարտվեն։ Իսկ եթե գործերը չշտկեն, ապա՝ խստագույնս պատժվեն։ Չի կարելի միջոցները քամուն տալ։ Անտնտեսվարության և շռայլումների դեմ մղվող պայքարը պետք է ընդգրկի մեր էկոնոմիկայի բոլոր ոլորտները։

Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացումը մեծապես պայմանավորված է արտադրության մեջ գիտության հասումների արմատավորման գործի բարելավմամբ։ Անհրաժեշտ է ուժեղացնել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատու նոր սորտերի սելեկցիայի աշխատանքը և բարձր մթերատու անասունների բուծումը, արագացնել դրանց տարածումը հանրապետության տնտեսություններում։ Հարկավոր է հետևողականորեն կենսագործել խաղողի և պտղատու այգիների ինտենսիվացման ներկայիս կուրսը։ Պետք

է լայն ճակատով ձեռնամուխ լինել աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանը։

Մեր ջանքերը միշտ պետք է նպատակամղված լինեն պարենային ծրագրով առաջադրված խնդիրների լուծմանը։

Հնգամյակի չորրորդ տարում գյուղատնտեսության մեջ գործերի վիճակը բարելավելու համար, ինչպես նշեց Կենտկոմի պլենումը, անհրաժեշտ է, որ տեղական կուսակցական, սովետական, տնտեսական մարմինները, գյուղի աշխատավորները ապահովեն անասունների ձմեռման և գարնանացանի հաջող անցկացումը, մի խոսքով՝ մի նոր քայլ անեն դաշտերի ու ֆերմաների արտադրանքի ավելացման ճանապարհին։

Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ամենալուրջ ուշադրությունը նվիրվեց շրջակա միջավայրի պահպանման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերին, շեշտում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Մեր հանրապետությունում, ինչպես հայտնի է, այդ ուղղությամբ մեծ աշխատանք է կատարվում։ Մենք փակել ենք և փակում ենք զանազան արտադրություններ, որոնք վատթարացնում էին Երևան քաղաքի էկոլոգիական իրադրությունը։ Սակայն ինքնահանգստացման հիմք չկա։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը պահանջեց բնապահպանման աշխատանքներին հաղորդել առավել հաստատակամություն և նպատակասլացություն։ «Այստեղ, թերևս ավելի, քան որևէ այլ ոլորտում, գերատեսչական մոտեցումն անհանդուրժելի է,— նշված է ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում։— Դա կտրուկ նվազեցնում է կապիտալ ներդրումների օգտագործման արդյունավետությունը, խոչընդոտում միասնական քաղաքականություն վարելը բնապահպանման միջոցառումներ իրականացնելիս, անպատասխանատվություն հարուցում ընդունվող որոշումների էկոլոգիական հետևանքների համար, հանգեցնում թվացյալ տնտեսման, որը, ի վերջո, վերածվում է մեծ կորուստների»։

Ինչպես նախագծային հիմնարկությունների ու պատվիրատուների, այնպես էլ շինարարական կազմակերպությունների մեղքով անբավարար է ընթանում բնապահպանման որոշ օբյեկտների շինարարությունը։ Համապատասխան պատվիրատուները, արդյունաբերական շինարարության ու գյուղական շինարարության մինիստրությունները և «Գլխմոնտաժհատուկշինը» պետք է կտրուկ փոխեն իրենց վերաբերմունքը այս կարևոր գործում։

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի պահանջից, բնության պահպանության պրոբլեմին հարկավոր է մոտենալ կոմպլեքսայնորեն, համապետական դիրքերից, վճռականորեն բարելավել շրջակա միջավայրի վիճակի կառավարման ու վերահսկման ողջ համակարգը։

Բոլոր այն հարցերի լուծումը, որոնց մասին մենք խոսեցինք, անկախ նրանից, դրանք վերաբերում են նոր տեխնիկային թե տեխնոլոգիային, աշխատանքի արտադրողականությանը թե ռեսուրսների խնայողությանը, արտադրության կազմակերպմանը թե կառավարմանը, անասնապահության մթերատվությանը, բուսաբուծության բերքատվությանը թե բնության պահպանությանը, կարիք ունի մեր գիտական հիմնարկությունների ակտիվ մասնակցության։ Ուստի կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողականորեն ձգտեն այն բանին, որ գիտությունն ավելի արդյունավետ օգնի ժողովրդատնտեսական հրատապ խնդիրների լուծմանը։

Մեր գիտությունը մեծ հնարավորություններ ունի։ Ապահովվում է նրա համակողմանի զարգացումը։ Մենք ունենք լավ պատրաստված գիտական շատ աշխատողներ։ Խնդիրն այն է, որ այդ ամենն օգտագործվի արգասավոր կերպով, ամրապնդվեն գիտության կապերը արտադրության հետ։

Սակայն, հարկ է շեշտել, որ այստեղ առկա է խզում խոսքի և գործի միջև։ Գիտության և արտադրության կապերի ամրապնդման կոչերն ու պահանջները ինչպես հարկն է չեն զուգորդվում կազմակերպչական աշխատանքի հետ։ Անհրաժեշտ է հստակորեն որոշել այն կոնկրետ թեմաներն ու խնդիրները, որ, հաշվի առնելով ունեցած հնարավորությունները, պետք է լուծեն կոնկրետ



գիտական հիմնարկությունները և դրանք դիրեկտիվ կարգով մուծել նրանց գիտահետազոտական աշխատանքների պլանների մեջ։ Մի խոսքով, չի կարելի գործը ինքնահոսի մատնել։ Այս առումով պետք է ավելի հետևողական աշխատեն հանրապետության պետպլանը, գիտությունների ակադեմիայի նախագահությունը և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը։

Ինչպես նշված է ընկեր Յու .Վ. Անդրոպովի ելույթում, սահմանելով ընթացիկ խնդիրները, չի կարելի աչքաթող անել ժողովրդական տնտեսության զարգացման ստրատեգիական պրոբլեմները։ Կուսակցությունը պահանջում է զգալիորեն ակտիվացնել էկոնոմիկայի ղեկավարումը կատարելագործելու, աշխատավորական կոլեկտիվների ձեռներեցությունն առավել խթանելու աշխատանքը։

Ժողովրդական տնտեսության զարգացման առավել արդյունավետ ուղղությունների, ինտենսիվ ուղիով երկրի էկոնոմիկայի արագ զարգացման հնարավորություն ընձեռող գլխավոր օղակների ճիշտ ընտրությունը պլենումը համարեց պլանավորման և կառավարման կատարելագործման հասունացած խնդիրներից մեկը։ Պլենումն առաջադրեց կառավարման ողջ մեխանիզմի կատարելագործման այնպիսի ծրագրի մշակման հարցը, որը լիովին համապատասխանի զարգացած սոցիալիզմի էկոնոմիկային և լուծվելիք պրոբլեմների բնույթին։

Մեր էկոնոմիկայի կատարելագործման կարևոր փուլ կդառնա մի շարք մինիստրություններում անցկացվող էքսպերիմենտը պլանավորման ու տնտեսական գործունեության ասպարեզում արտադրական միավորումների (ձեռնարկությունների) իրավունքների ընդլայնման և աշխատանքի արդյունքների համար նրանց պատասխանատվությունն ուժեղացնելու ուղղությամբ։

Մեր հանրապետությունում, ինչպես գիտեք, այդպիսի փորձի մեջ ներգրավված են էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունները, որոնք թողարկում են հանրապետության միութենական ենթակայության արդյունաբերության արտադրանքի ծավալի շուրջ 20 տոկոսը։

Այստեղից էլ հիշյալ ձեռնարկությունների ինչպես ղեկավարների ու կուսակցական կազմակերպությունների, այնպես էլ այն շրջանների ու քաղաքների կուսակցական կոմիտեների բարձր պատասխանատվությունը, որոնց տարածքում դրանք գտնվում են։ Գիտափորձն այստեղ պետք է անցկացվի լրիվ ծավալով, իրականացնելով դրա բոլոր պահանջները, հատուկ ուշադրություն նվիրելով կառավարման տարրերի մանրակրկիտ ստուգմանը։ Էքսպերիմենտի վրա պետք է ուշադրություն դարձնեն նաև մյուս ճյուղերը։ Չէ՛ որ խնդիր է դրվում տասներկուերորդ հնգամյակ թևակոխել լավ կարգավորված տնտեսական մեխանիզմով։ Իսկ դա նշանակում է, որ դրան հարկավոր է վաղօրոք պատրաստվել։

Մենք պետք է լիովին իրականացնենք հանրապետության ժողովրդական տնտեսության, հատկապես արդյունաբերության կառուցվածքի կատարելագործման վերաբերյալ Հայաստանի կոմկուսի XXVI և XXVII համագումարների որոշումները, ավելի ակտիվորեն զարգացնենք արտադրության նվազ նյութատար, նվազ էներգատար ճյուղերը, առաջ տանենք բնության պահպանության աշխատանքը և այլն։

Մենք պետք է կատարելագործենք, է՛լ ավելի բարձրացնենք ռեգիոնալ պլանավորման մակարդակը, ի հայտ բերենք հանրապետության ռեգիոնների սոցիալական ու տնտեսական զարգացման մակարդակների նպատակային հավասարեցման ուղիներն ու մեթոդները, ապահովենք դրանց արդյունավետ, համամասնական զարգացումը, հատուկ ուշադրություն դարձնելով լեռնային ու նախալեռնային շրջանների առավել արագ զարգացմանը։

Անհրաժեշտ է, որ հանրապետության կառավարությունը մշակի գյուղի տնտեսական և սոցիալական զարգացման մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի կոմպլեքսային ծրագիր։ Մենք բազմիցս ասել ենք և կրկին շեշտում ենք, որ մեզ համար կարևորագույն խնդիր է՝ դադարեցնել գյուղական

սկզբունքը կիրառվի ոչ թե ձևականորեն, այլ ըստ էության, կիրառվի մինչև վերջ հետևողականորեն:

Այդ կարևոր որոշման պահանջների իրականացման համար ՀԿԿ Կենտկոմը մշակել է կոնկրետ միջոցառումներ: Հանձնարարված է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին, ՀԱՄԽ-ին, ՀԼԿԵՄ Կենտկոմին, կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին ևս ձեռնարկել համապատասխան միջոցներ որոշման լույսի ներքո աշխատանքի ոճն ու մեթոդները կատարելագործելու նպատակով:

Կադրերի հետ տարվող աշխատանքը պետք է նպատակամղված լինի կատարողական կարգապահության ամրապնդմանը, հանձնարարված գործի համար կուսակցության ու ժողովրդի հանդեպ նրանց պատասխանատվության բարձրացմանը: Պետք է վճռականորեն վերջ տալ գոռոզամտության, ամբարտավանության, կոպտության դրսևորումներին, ոչ մի զիջողություն չանել նրանց, ովքեր բռնում են պետությանը խաբելու, պաշտոնական դիրքը չարաշահելու ճանապարհը, խախտում են կուսակցական բարոյականության նորմերը: Պետք է ամենայն խստությամբ վերաբերվել այդ երևույթներին: Փորձը ցույց է տալիս, որ հարկ եղած կուսակցական խստապահանջության բացակայությունը, անտեղի բարեհոգությունը սխալ վարքագիծ դրսևորողների, անվայել արարքներ թույլ տվողների նկատմամբ հանգեցնում են առանձին աշխատողների վերասերման, լուրջ վնաս են հասցնում մեր ընդհանուր գործին:

Մենք պետք է հետևողականորեն ձգտենք, որ բոլոր մակարդակների կադրերը միշտ քննադատաբար վերաբերվեն իրենց աշխատանքի արդյունքներին, մշտապես պատասխանատվություն զգան նախատեսվածի, հանձնարարված գործը ժամանակին և որակով կատարելու համար:

Անհրաժեշտ է խստացնել ընդունված որոշումների կատարման և կադրերի աշխատանքի վերահսկողությունը: Ընդսմին, խոսքն այն մասին չէ, որ անպայման մեծացվի ստուգումների ու հանձնաժողովների թիվը: Ընդհակառակը, խոսքն այն մասին է, որ բարելավվի վերահսկողության որակը, որ ամեն մի ստուգում, ամեն վերահսկողություն լինի գործուն և արդյունավետ, որ դրանից հետո գործերը լավանան ստուգված տեղամասում, որ վերանան թերությունները, իսկ կադրերը վերակառուցեն իրենց աշխատանքը: Մեզ միայն այդպիսի վերահսկողությունն է հարկավոր, և դա է, որ կօգնի գործին:

Բայց մեզանում երբեմն առանձին մարմինների կողմից վերահսկողությունը, ցավոք, վերածվում է, ինչպես շատ դիպուկ բնորոշել է Վ. Ի. Լենինը, «ստուգող հանձնաժողովներ խաղալու» և այդ կերպ վերահսկողության թվացյալ ակտիվություն ցուցաբերելու, հաշվի չառնելով, որ անտեղի ժամանակ և պետական միջոցներ են վատնվում: Քիչ չեն օրինակները, երբ ստուգումները շատ են եղել, բայց և՝ ձևական, մակերեսային: Եվ արդյունքն էլ այն, որ դրանից հետո ոչ մի դրական տեղաշարժ չի նկատվել:

Ցավոք, կան և այնպիսի դեպքեր, երբ անպատասխանատու անցկացված ստուգումը, վերահսկողությունը հանգեցնում են ժամանակին չնկատված ու չկանխված թերությունների խորացման, որը մեծապես վնասում է գործին:

Անհրաժեշտ է վճռականորեն ազատվել ղեկավարման թղթաբանական, գրասենյակային-բյուրոկրատական մեթոդներից, ստերեոտիպ պլաններից ու դեկլարատիվ որոշումներից:

Կուսակցական, սովետական, տնտեսական կադրերը պետք է քաջ ըմբռնեն, որ ղեկավարման լենինյան ոճի հաստատումը կուսակցության տնտեսական և սոցիալական քաղաքականության, կոմունիստական դաստիարակության հաջող իրականացման կարևորագույն նախադրյալն է:

Այն բանով, թե յուրաքանչյուր ձեռնարկությունում և միավորումում կուսակցության որոշումները ինչպես կվերածվեն պրակտիկ գործերի, նշվեց պլենումում, ըստ այդմ էլ պետք է որոշել տնտեսական ղեկավարների, հասարակական կազմակերպությունների կարողությունը՝ մոբիլիզացնելու մարդկանց, աշխատանքում հասնելու վերջնական բարձր արդյունքների:

Կուսակցական կոմիտեները պետք է լիովին հաղթահարեն սովետական,



տնտեսական մարմիններին փոխարինելու, նրանց կրկնօրինակելու պրակտիկան, ավելի շատ հոգան հենց նրանց սեփական ձեռներեցության ու պատասխանատվության զարգացման մասին: Անհրաժեշտ է մշտապես բարձրացնել հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների, կառավարման ողջ ապարատի գործունեության մակարդակը: Պետք է վճռականորեն պայքարել տեղայնության, գերատեսչականության, բյուրոկրատիզմի ու քաշքշուկի ամեն կարգի դրսևորումների դեմ, առաջնորդվելով լենինյան այն ցուցումով, որ սովետական ադմինիստրացիայի մեքենան պետք է աշխատի ճիշտ և կանոնավոր, հստակ ու արագ:

Հանրապետության աշխատավորները լավ տեմպով են սկսել հնգամյակի չորրորդ տարվա պլանների իրականացումը: Առջևում մեզ շատ գործեր են սպասում: Եվ մենք գիտենք, համոզված ենք, որ այն ամենը, ինչ նախատեսված է, պատվով կկատարվի ու կգերակատարվի, կնվաճվեն համակողմանի առաջընթացի նոր, բարձր բնագծեր: Որքան բարդանում են խնդիրները, այնքան ավելի են ամրապնդվում դրանք լուծելու, իրականացնելու մեր կամքը, վճռականությունը:

Մեր երկիրը ընթանում է դեպի ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները: Սովետական հասարակության կյանքի այդ խոշոր քաղաքական իրադարձությունը, անտարակույս, կդառնա սոցիալիստական դեմոկրատիայի ծաղկման մի նոր վկայությունը, կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնության, ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, ընկեր Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը նրանց միաձույլ համախմբվածության ցուցադրումը:

Ավարտենք մեր զեկուցումը կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի խոսքերով. «Միլիոնավոր կոմունիստներ ու անկուսակցականներ անսահմանորեն հավատում են կուսակցությանը և պատրաստ են զորավիգ լինելու էկոնոմիկայի ասպարեզում և կյանքի մյուս ոլորտներում դրության հետագա բարելավման միջոցառումներին: Սա բոլորիս վրա, առանց բացառության՝ յուրաքանչյուրի վրա, հսկայական անձնական պատասխանատվություն է դնում, և մենք պարտավոր ենք արդարացնել ժողովրդի այդ բարձր վստահությունը»:

Թույլ տվեք հավաստիացնել ՍՄԿԿ Կենտկոմին, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ մենք բոլորս՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի մասնակիցներս, միշտ և ամեն բանում բոլորից վեր կդասենք կուսակցության ու ժողովրդի շահերը, տոն կտանք և անձնական օրինակ աշխատանքում, ամեն ինչում անշեղորեն կառաջնորդվենք լենինյան վեհ սկզբունքներով: Եվ անտարակույս, ընկերներ, հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները այսուհետև էլ իրենց բոլոր ուժերն ու եռանդը կնվիրաբերեն կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումների կենսագործմանը, հաջողությամբ կկատարեն տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թվականի և ամբողջությամբ վերցված տասնմեկերորդ հնգամյակի պլանները: (Բուռն ծափահարութիւններ):

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Բ. ՍԱՐԿԻՍՈՎ**
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

*ՔԱՂԱՔԱԿԱՆ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՍԻՍՏԵՄԻ կենսունակությունը բնորոշվում է նրանով, թե որքանով է այն համապատասխանում ժողովրդական լայն զանգվածների արմատական շահերին ու ձգտումներին: Սոցիալիզմը միակ հասարակարգն է, որը օբյեկտիվ անհրաժեշտությամբ կենդանի գործ է դարձնում հումանիզմի ամենավեհ իդեալները, մարդու հոգևոր հարստությունը, նրա բարեկեցությունն ու երջանկությունը: Սովետական սոցիալիստական դեմոկրատիան ընդգրկում է հասարակության կենսագործունեության բոլոր՝ քաղաքական, սոցիալական և տնտեսական ոլորտները: Համաժողովրդական սովետական պետության դեմոկրատիան ապահովում է ժողովրդական լայն զանգվածների մասնակցությունը պետության կառավարման, նրա ներքին և արտաքին քաղաքականության մշակման և իրականացման գործին: «Աշխատավորական մասսաների առավել անմիջական ներգործությունը պետության կառուցվածքի և կառավարման վրա, այսինքն՝ դեմոկրատիզմի առավել բարձր ձևը պետության սովետական տիպի օրոք ձեռք է բերվում նույնպես, նախ՝ նրանով, որ ընտրությունների արարողությունը և դրանք հաճախ կատարելու հնարավորությունը, ինչպես նաև վերընտրությունների և դեպուտատներին ետ կանչելու պայմաններն ավելի հեշտ ու ավելի մատչելի են քաղաքի և գյուղի բանվորներին, քան բուրժուական դեմոկրատիայի լավագույն ձևերի օրոք» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 38, էջ 114)։*

*Լենինյան այս պատգամը ակներևորեն արտացոլվել է սովետների գործունեության մեջ, սկսած գյուղական սովետից մինչև միութենական հանրապետությունների և Սովետական Միության Գերագույն սովետները:*

*ՍՍՀՄ սահմանադրությունն ազդարարում է. «Սովետական Միությունում ամբողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին: Ժողովուրդը պետական իշխանությունն իրականացնում է ժողովրդական դեպուտատների սովետների միջոցով, որոնք ՍՍՀՄ քաղաքական հիմքն են»:*

*«Սովետները նոր պետական ապարատ են... այդ ապարատն այնքան սերտ, անխզելի, հեշտությամբ ստուգվող և վերականգնվող կապ է ստեղծում մասսաների, ժողովրդի մեծամասնության հետ... այդ ապարատը, շնորհիվ այն բանի, որ նրա կազմն ընտրվում և փոխվում է ժողովրդի կամքով, առանց բյուրոկրատական ձևականությունների, շատ ավելի դեմոկրատական է, քան նախկին ապարատները» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 34, էջ 384)։*

*Միավորելով 2 միլիոն 300 հազար դեպուտատների և ավելի քան 30 միլիոն հասարակական ակտիվիստների, ներկայումս սովետները, ղեկավարվելով սահմանադրությամբ իրենց վերապահված իրավունքներով, մեծ ջանքեր են գործադրում տնտեսական և սոցիալական զարգացման պլանների կատարումն ապահովելու, ընտրողների պատվիրանները կենսագործելու, բնակչության բարեկեցությունն է՛լ ավելի բարձրացնելու, իրենց գործունեությունն առավել նպատակասլաց ու բովանդակալից դարձնելու համար:*

*Համաձայն ՍՍՀՄ սահմանադրության, ժողովրդական դեպուտատների բոլոր սովետները կազմում են պետական իշխանության մարմինների միասնական համակարգ, որը գլխավորում է ՍՍՀՄ Գերագույն սովետը: Վերջինս ընդգրկում է միութենական հանրապետությունների 15, ինքնավար հանրապետությունների՝ 20 Գերագույն սովետ, ժողովրդական դեպուտատների երկրամասային, մարզային, ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների, ժողովրդական դեպուտատների շրջանային, քաղաքային, քաղաքի շրջանային, ավանային և գյուղական ավելի քան 51 հազար սովետներ:*

*Սովետների սիստեմում հատուկ տեղ է զբաղեցնում ՍՍՀՄ Գերագույն սովետը՝ ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն մարմինը, որը իրավասու է լուծելու սահմանադրությամբ վերապահված բոլոր հարցերը:*

*Ինչպես ժողովրդական դեպուտատների բոլոր սովետները, ՍՍՀՄ Գերագույն սովետն իր գործունեությունն իրականացնում է ՍՄԿԿ ղեկավարությամբ: Համաձայն ՍՍՀՄ սահմանադրության 6-րդ հոդվածի, ՍՄԿԿ-ն համարվում է սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, պետական և հասարակական կազմակերպությունների միջուկը:*

*Ներկայումս ՍՍՀՄ Գերագույն սովետի գործունեությունը նպատակամղված է ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած վիթխարի խնդիրների կենսագործմանը, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և նոյեմբերյան, 1983 թ. հունիսյան և դեկտեմբերյան պլենումների որոշումների իրագործմանը:*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջաններում պլանից և բյուջեից բացի պարբերաբար քննարկվում են տնտեսական, սոցիալ-կուլտուրական շինարարության և այլ կարևոր հարցեր: ՍՍՀՄ Գերագույն սովետը անմիջականորեն և իր մարմինների՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, պալատների մշտական հանձնաժողովների միջոցով հետևողական աշխատանք է տանում տնտեսական և սոցիալական զարգացման պետական պլանների կատարման ընթացքը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում գործերի իրավիճակը վերահսկելու համար: Այդ աշխատանքը հատկապես ուժեղացավ վերջին տարիներս, ՍՄԿԿ XXVI համագումարի, կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումների լույսի ներքո:*

*ՍՍՀՄ Գերագույն սովետը կազմում է ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտե, ընտրում է ՍՍՀՄ Գերագույն դատարան, նշանակում է ՍՍՀՄ գլխավոր դատախազ: Նրանք նույնպես պատասխանատու են Գերագույն սովետին և հաշվետու են նրան: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նիստերում պարբերաբար քննարկվում են նրանց աշխատանքի մասին հաշվետվություններ: Այդ ամենը վառ կերպով վկայում է սովետական պետական սիստեմում Գերագույն սովետի բացառիկ կարևոր դերի, նրա իսկապես լիիշխանության մասին:*

*Ինչպես ժողովրդական դեպուտատների բոլոր սովետները, Գերագույն սովետը համարվում է պետական իշխանության ներկայացուցչական մարմին: ՍՍՀՄ սահմանադրության համաձայն, ՍՍՀՄ Գերագույն սովետը բաղկացած է երկու իրավահավասար պալատներից՝ Միության սովետից և Ազգությունների սովետից: Պետական իշխանության բարձրագույն մարմնի երկպալատային կառուցվածքը բացատրվում է նրանով, որ ՍՍՀՄ-ը միութենական բազմազգ միասնական պետություն է: ՍՍՀՄ Գերագույն սովետի երկու պալատների և ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների դեպուտատներն ընտրվում են քաղաքացիների կողմից՝ գաղտնի քվեարկությամբ, ընդհանուր, հավասար և անմիջական ընտրական իրավունքի հիման վրա: ՍՍՀՄ Գերագույն սովետը ընտրվում է հինգ տարի ժամկետով: Համաձայն ժողովրդական դեպուտատների ստատուսի մասին ՍՍՀՄ օրենքի, դեպուտատի իրավասությունները սկսվում են նրա ընտրման օրից և ավարտվում ՍՍՀՄ Գերագույն սովետի նոր գումարման ընտրությունների օրը:*

Յուրաքանչյուր ընտրությունների ժամանակ ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմը զգալիորեն թարմանում է։ ՍՍՀՄ Գերագույն սովետի տասներորդ գումարման դեպուտատների 55,4 տոկոսն ընտրվել են առաջին անգամ։

«Սովետները՝ քաղաքական կազմակերպության այդ ձևը, ոչ մի այլ բանի հետ չհամեմատվող հնարավորություն ստեղծեց ի մի բերելու, կուտակելու, ընդհանուրի բարորությանն ի սպաս դնելու ամենալայն մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, ամեն մի հարց լուծելիս հաշվի առնելու կարծիքների և առաջարկությունների վիթխարի ընդգրկումը։ Դա երաշխիք է այնպիսի որոշումների ընդունման, որոնք առավել ճշտորեն և լրիվ են համապատասխանում բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների , սովետական հասարակության բոլոր սերունդների շահերին» (Ю. В. Андропов, Избранные статьи и речи. М., Политиздат, 1983 г., стр. 194):

Եղբայրական սերտ դաշինքով միավորված սովետական ժողովուրդներն այժմ պատրաստվում են պետական մեծ ակտի, մարտի 4-ին նրանք ընտրելու են երկրի պետական իշխանության բարձրագույն մարմինը՝ Սովետական Միության Գերագույն սովետը։

«Մասսան պետք է իրավունք ունենա ընտրելու իր պատասխանատու ղեկավարներին։ Մասսան պետք է իրավունք ունենա փոխելու նրանց, մասսան պետք է իրավունք ունենա իմանալու և ստուգելու նրանց գործունեության յուրաքանչյուր ամենափոքր քայլը։ Մասսան իրավունք պետք է ունենա մասսայի անդամ բոլոր բանվորներին առանց բացառության առաջ քաշելու տնօրինող ֆունկցիաներ կատարելու» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 194)։ Դեմոկրատիայի մասին լենինյան պատգամը դարձել է մեր սոցիալիստական պետության նշանաբանը։

Կոմունիստական կուսակցության նվիրվածության, նրա նկատմամբ անհուն սիրո դրսևորումը եղավ այն, որ ինչպես սովետական ողջ ժողովուրդը, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորները, դեպուտատության իրենց առաջին թեկնածուներ առաջադրեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական պետության ղեկավարներին։

Նախընտրական ժողովներում, դեպուտատության թեկնածուների հետ ընտրողների հանդիպումների ժամանակ անկեղծ ու սրտաբաց խոսակցություն է ծավալվում մեր երկրի գործերի վիճակի մասին, տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրների կատարման ընթացքի մասին։ Ընտրողներն արծարծում են արտադրական ու հասարակական կյանքի շատ էական հարցեր, արտահայտում հետաքրքիր ու օգտակար մտքեր, քննադատական դիտողություններ անում, պատվիրաններ են տալիս։ Դրանց հաշվառումն ու իրականացումն անպայման կնպաստեն տնտեսական ու կուլտուրական շինարարության ողջ գործի հետագա բարելավմանը։

Մեր երկրում պետական իշխանության օրգանների ընտրությունների ժամանակ կոմունիստներն ու անկուսակցականները հանդես են գալիս միասնական բլոկով։ Այդ բլոկի էությունն ակնբախ կերպով արտացոլում է կյանքով հաստատված՝ կուսակցության և ժողովրդի ամրակուռ միասնությունը։

Սովետական երկրում ժողովրդական դեպուտատը, լինի նա կոմունիստ թե անկուսակցական, իր ամենօրյա կյանքում կենսագործում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության քաղաքականությունը։ Ուստի ընտրողները, առաջադրելով դեպուտատության իրենց թեկնածուին և քվեարկելով նրա օգտին, դրանով իսկ քվեարկում են կոմունիստական կուսակցության քաղաքականության օգտին։

Հայտնի է, որ ի տարբերություն կապիտալիստական երկրների, որտեղ նախընտրական կամպանիան ուղեկցվում է ամեն տեսակի խորամանկություններով, ինտրիգներով, կեղծավորությամբ, սուտ խոստումներով, մեր սոցիալիստական դեմոկրատիայի, մեր ընտրությունների առանձնահատկությունն



այն է, որ կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը ժողովրդին տալիս են համակողմանի և լրիվ հաշվետվություն վարվող քաղաքականության արդյունքների, կատարված ու կատարվելիք գործերի մասին, նրա հետ խոսում են նաև չլուծված խնդիրների ու թերությունների մասին։ Եվ այդ բոլորը կատարվում է պարզ, շիտակ ու անկեղծ ձևով, քանի որ կոմունիստական կուսակցությունը չունի ոչ մի այլ մտահոգություն, քան ժողովրդի և պետության շահերը։ Իսկ այդ մեծ վստահությանը ժողովուրդը պատասխանում է աշխատանքային անօրինակ խիզախումներով, կոմունիստական կուսակցության և սովետական պետության մեծ գործին իր անմնացորդ նվիրումով։ Եվ բնական է ու օրինաչափ, որ նախընտրական այս կամպանիան նույնպես ընթանում է ողջ երկրի աշխատավորության քաղաքական ու աշխատանքային անօրինակ վերելքի պայմաններում, որը ցուցադրում է կուսակցության և պետության ներքին ու արտաքին լենինյան քաղաքականության նկատմամբ ջերմ հավանությունը, ցուցադրում է սովետական բազմազգ ժողովրդի կուռ համախմբվածությունը կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը։

Մեր բազմազգ երկրի պայմաններում ինտերնացիոնալիզմն ամենից առաջ երկրի բոլոր ժողովուրդների ազնիվ, բարեխիղճ, անմնացորդ աշխատանքն է հանուն համաժողովրդական ընդհանուր բարօրության։ Սովետական պետության մշտական ամրապնդման, նրա տնտեսական, գիտական, հոգևոր պոտենցիալի զարգացման մասին անդուլ հոգատարությունը դարձել է սովետական ժողովուրդների մեծ բարեկամության անխախտ օրենքը, առանձին վերցրած յուրաքանչյուր ժողովրդի ինտերնացիոնալ վսեմ պարտքը։

Սովետական Հայաստանի, ինչպես և մյուս միութենական հանրապետությունների օրինակն անվիճելիորեն ցույց է տալիս, որ չնայած մեր թշնամիների բարբաջանքներին, սոցիալիստական դեմոկրատիան ոչ միայն չի հանգեցնում ժողովուրդների ազգային անկրկնելի դիմագծի, լեզվի, մշակույթի առանձնահատկությունների և ավանդույթների կորստին, այլև այդ ամենը բարձրացնում է որակական նոր մակարդակի, դարձնում մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդների սեփականությունը։

Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական ինտելիգենցիան, որոնք կոմունիստական կուսակցության կողմից աճել և դաստիարակվել են լենինյան ավանդույթներով, իրենց աշխատանքային փայլուն հաղթանակներով, գիտատեխնիկական հաջողություններով և հայտնագործություններով, գեղարվեստական հրաշալի ստեղծագործություններով փառաբանում են մեր ժողովրդին ու հանրապետությանը։

Եվ ներկա նախընտրական կամպանիան հայ ժողովրդի համար խոր ու լուսավոր իմաստ ունի, քանի որ մեր ժողովուրդը հավասարի իրավունքով իր թեկնածուներն է առաջադրում հզոր Սովետական Միության Գերագույն սովետում ընտրվելու համար։ Մի ժողովուրդ, որը ոչ այնքան վաղ անցյալում զրկված էր ամենատարրական իրավունքներից։

Եվ այսօր, մեր երկրի պետական իշխանության բարձրագույն մարմնի ընտրությունների նախօրյակին, պետական մեծ ակտ կատարելու նախօրյակին, հայ ժողովուրդը առավել խոր է զգում այն մեծագույն ճշմարտությունը, որ միայն մեծ Լենինը և նրա ստեղծած կոմունիստական կուսակցությունը, մեծ Հոկտեմբերն էր, որ մեր ժողովրդին տվեցին նոր, սոցիալիստական պետականություն, որի շնորհիվ նա ապրեց իր սոցիալիստական վերածնունդը, և Սովետական Միության եղբայրական ժողովուրդների ընտանիքում կառուցեց զարգացած սոցիալիստական հասարակարգ։

Եվ այսօր, երբ հայ ժողովուրդն ունի իր նոր սոցիալիստական պետականությունը, մենք առավել խոր ենք զգում նաև այն մեծագույն ճշմարտությունը, որ ոչ ոք այլևս չի կարող խաղալ մեր ժողովրդի բախտի ու պատվի հետ, որ հանձինս սովետական պետության, նրա տնտեսական ու ռազմական հզորության, հանձին սովետական ժողովուրդների բարեկամության՝ ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, ամուր և ապահով է հայ ժողովրդի, ինչպես նաև սովետական մյուս ժողովուրդների թիկունքը։

Հայ ժողովուրդը, մեր հանրապետության աշխատավորությունը, ակտիվորեն մասնակցելով նախընտրական կամպանիային և ընտրություններին, մեկ անգամ ևս կարտահայտեն սոցիալիստական պետականության իրենց բարձր զգացումը, նվիրվածությունը կուսակցության և սովետական պետության վեհ իդեալներին ու գործին։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախորդ ընտրություններից հետո հինգ տարի է անցել։ Ստեղծագործ աշխատանքի հինգ տարիներ են դրանք, որոնք խոսելու, հպարտանալու, ոգևորվելու շատ առիթներ են տալիս։ Անցած ընտրություններից հետո սովետական երկրի կյանքում տեղի ունեցած ամենախոշոր իրադարձությունը ՍՄԿԿ XXVI համագումարն էր, որի պատմական նշանակությունը դուրս է գալիս մեր երկրի սահմաններից։ Այն համոզիչ կերպով հավաստեց, որ մեր պանծալի կուսակցությունը վստահորեն շարունակում է մեծ Հոկտեմբերի գործը, կենսագործում է մեծ Լենինի անմահ գաղափարները։ Այն վառ կերպով ցուցադրեց սովետական հասարակության մշտապես ամրապնդվող սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը։ Համագումարում հաստատվեցին ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները։ Այդ խնդիրների իրականացումը նշանակալից քայլ կլինի Միության բոլոր հանրապետությունների հետագա զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում։ Դա նշանավորում է նաև կարևոր փուլ սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու կատարելագործման, լենինյան ազգային քաղաքականության իրականացման, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության ամրապնդման բնագավառում։

Բոլոր ընտրողներին, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության քաղաքացիներին, Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի վերջերս հրապարակված դիմումի մեջ ասված է. «Հանրագումարի բերելով անցած ժամանակաշրջանում երկրի զարգացման արդյունքները, այսօր կարելի է լիակատար հիմքով սովետական ժողովրդին զեկուցել. կուսակցության մշակած քաղաքական կուրսը անշեղորեն կենսագործվում է, նոր հաջողություններ են ձեռք բերված տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում, մեր երկիրը դարձել է ավելի հարուստ և ուժեղ։ Հետևողականորեն վարվում է լենինյան արտաքին քաղաքականությունը՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության քաղաքականությունը»։

Սոցիալիստական հասարակարգի կառուցման ողջ փորձը վկայում է, որ հնգամյակները մարմնավորում են մեր հայրենիքի նյութական և հոգևոր հարստություններն առավել մեծացնելու և հարստացնելու ծրագրերը։ Ամեն մի հնգամյակ իր հետքն է թողել մեր սովետական հայրենիքի տարեգրության մեջ։ Երկիրն այժմ թևակոխել է տասնմեկերորդ հնգամյա պլանի իրականացման վճռական փուլը։ Եվ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում և ՍՍՀՄ Գերագույն սովետի դեկտեմբերյան նստաշրջանում, երկրում գործերը հաջող են ընթանում։ XXVI համագումարի գաղափարներն ու որոշումները, կուսակցության Կենտկոմի 1982 թ. մայիսյան և նոյեմբերյան, 1983 թ. հունիսյան և դեկտեմբերյան պլենումների որոշումները դարձել են սովետական մարդկանց պրակտիկ կյանքի անբաժանելի մասը։

Սովետական Միության տասներորդ գումարման Գերագույն սովետի իններորդ նստաշրջանի բարձր ամբիոնից հայտարարվեց, որ 1983 թվականի ընթացքում մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը մեծացել է 4 տոկոսով, 1982 թվականի 2,9 տոկոսի փոխարեն։ Գործարկվեց համաշխարհային մասշտաբի այնպիսի մի եզակի կառույց, ինչպիսին է Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ 4,5 հազար կմ երկարությամբ մայր գազամուղը։ Սահմանված ժամկետներից զգալիորեն ավելի արագ գործարկելով այն, սովետական մարդիկ կրկին ապացուցեցին ամերիկյան վարչակազմի խտրական քաղաքականության սնանկությունը, որը զուր ճգնում էր վիժեցնել հզոր գա-



զամուղի շինարարությունը։ Անցած տարում գործողների շարքն են մտել շուրջ 200 պետական նոր ձեռնարկություններ։ Երկրում ձուլվել է 153 մլն տոննա պողպատ, արդյունահանվել է 616 մլն տոննա նավթ, 536 մլրդ խմ գազ։ Ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների ամսական միջին դրամական աշխատավարձը կազմել է 182 ռուբլի, ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կառուցվել են ավելի քան 110 մլն քմ ընդհանուր մակերեսով 2 մլն նոր, բարեկարգ բնակարաններ, բարելավվել են ավելի քան 10 մլն մարդկանց բնակարանային պայմանները։ Գյուղական վայրերում կառուցվել են 33 մլն քմ բնակելի տներ, 509 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ։ Միայն ընթացիկ տարում Միության բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրին կտան բարձրագույն կրթությամբ ավելի քան 2 մլն մասնագետ, և ժողովրդական տնտեսության մեջ նրանց թիվը կհասնի 33 միլիոնի։ Սովետական երկրի սոցիալ-տնտեսական նվաճումները ամփոփված են ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ։

Մեր սոցիալիստական հայրենիքի ողջ պատմությունը ցույց է տալիս, թե սոցիալիզմը ինչպիսի վիթխարի հոգատարություն է ցուցաբերում մարդու, նրա աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման, նրա հոգևոր զարգացման, նրա առողջության և հանգստի նկատմամբ։ Եվ բնական է ու օրինաչափ, որ կուսակցության տնտեսական և սոցիալական քաղաքականությունն անբաժան են իրարից, լրացնում են մեկը մյուսին։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, էկոնոմիկայի բնագավառում մեր բոլոր ջանքերը, վերջին հաշվով, նպատակ ունեն բարձրացնել ժողովրդի կենսամակարդակը։ Սա է մեր պլանների սոցիալ-քաղաքական գլխավոր նպատակը։

Անցած հինգ տարիները արգասաբեր էին նաև Սովետական Հայաստանի համար։ 1981 թ. հունվարին տեղի ունեցավ ՀԿԿ XXVII համագումարը, որը հանրապետության աշխատավորությանը նպատակամղեց կուսակցության տնտեսական ստրատեգիայի կենսագործմանը։ ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը ժամանակին հանգամանորեն քննարկեցին հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագիծը, որը մշակելիս ուշադրությամբ հաշվի առնվեցին մեր հանրապետության բնակլիմայական պայմաններն ու յուրահատկությունները։

Տասնմեկերորդ հնգամյակի խնդիրներն իրենց խորությամբ ու լայնքով վիթխարի են նաև մեր հանրապետության համար։ Ժողովրդական տնտեսության զարգացումը նախատեսված ձևով տարվում է արդյունաբերության աշխատատար, սակավ նյութատար և սակավ էներգատար ճյուղերի ընդլայնման, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները լայնորեն ներդնելու, ինչպես նաև բնական ռեսուրսները արդյունավետ օգտագործելու, բնակչության աշխատանքի և կենցաղի պայմաններն է՛լ ավելի բարելավելու ճանապարհով։

Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հանրապետության աշխատավորները պատվով փակեցին ընթացիկ հնգամյակի երեք տարիները։ Սովետական Հայաստանի տնտեսությունը, դինամիկորեն զարգանալով երկրի միասնական տնտեսական կոմպլեքսում, հասավ նոր հաջողությունների։ Ընթացիկ հնգամյակի երեք տարում ազգային եկամուտն ավելացավ 17,6 տոկոսով՝ նախատեսված 15,8 տոկոսի փոխարեն։ Արդյունաբերական արտադրության ծավալն աճեց 16,8 տոկոսով։ Այս ցուցանիշը նույնպես գերազանցում է հնգամյա պլանի առաջադրանքը։

1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանում սովետական կարգերի հաստատման փաստով մեր ժողովրդի լինել-չլինելու հարցը մեկընդմիշտ լուծվեց նրա հավերժ գոյատևման օգտին։ Այդ հաղթանակը մեր ժողովրդի դարավոր պայքարի տրամաբանական հանրագումարն էր, Հայաստանի կոմունիստական կուսակցության և հայ ժողովրդի մեծ երազանքի իրականացումը, որում նրանք տեսնում էին իրենց ապրելու և պայքարի իմաստը։

Իր բախտը մեկընդմիշտ կապելով ռուս մեծ ժողովրդի հետ, միավորվելով

սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, հայ ժողովուրդն ապրեց մի հրաշալի վերածնունդ, ունեցավ իր սոցիալիստական պետականությունը· Եվ իր սոցիալիստական պետականության լեզվով նա իր հոգու գանձերը պարզեց աշխարհին, համաշխարհային տոնավաճառներ մտավ իր հաշվիչ մեքենաներով, արդիական հաստոցներով, նրբագեղ գորգերով ու շարժական էլեկտրակայաններով, ուժային տրանսֆորմատորներով։ Այս փաստերը պերճախոս կերպով վկայում են, որ մարդկային սերունդների համար անլուծելի թվացող ազգային հարցը կարող էր լուծվել միայն սոցիալիստական դեմոկրատիայի պայմաններում։

Անցած ընտրություններից հետո էր, որ մենք բոլորս ապրեցինք 1981 թվականի մարտի 7-ի բերկրալի օրը։ Այդ օրն էր, որ գործարկվեց ժողովրդի ստեղծագործական սխրանքով, աշխատանքային փառքով կերտված հուշարձաններից մեկը՝ Երևանի մետրոպոլիտենը, որի փաստը կրկին ու կրկին վկայում է մեր հանրապետության ու ժողովրդի նկատմամբ Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական պետության մեծ հոգատարության մասին։

Անցած ընտրություններից հետո էր, որ մենք բոլորս ապրեցինք 1981 թվականի մարտի 21-ի պատմական օրը, երբ գրվեց վերածնված Սովետական Հայաստանի պատմության պայծառ էջերից մեկը, երբ սովետական ժողովուրդների եղբայրական օգնությամբ իրականություն դարձավ լեգենդը, և Արփա գետի ջրերը հասան Սևանա լիճ։

Նախորդ ընտրություններից հետո էր, որ գործարկվեց Իջևան—Հրազդան երկաթուղու առաջին հերթը, մայրաքաղաքի երկու և Լենինականի օդանավակայանների նոր, ժամանակակից շենքերը, իսկ բոլորովին վերջերս էլ՝ Երևանի մարզահամերգային հրաշագեղ համալիրը։ Իսկ որքա՜ն նոր դպրոցներ, մանկապարտեզներ, կամուրջներ, մայրուղիներ, նոր արտադրամասեր, մշակույթի օջախներ են կառուցվել։

Անցյալի հետ ի՞նչ համեմատության մասին կարող է խոսք լինել, երբ այժմ յուրաքանչյուր 6 օրում մեր հանրապետությունն ավելի շատ արդյունաբերական արտադրանք է տալիս, քան ամբողջ 1940 թվականին։ Անցյալի հետ ի՞նչ համեմատության մասին կարող է խոսք լինել, երբ ներկայումս յուրաքանչյուր մեկ օրում Սովետական Հայաստանում արտադրվում է մոտ 40 միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, երբ մեկ օրում արտադրվում է 40 հազար զույգ կաշվե կոշիկ, 45 մետաղահատ հաստոց, 2.500-ից ավելի էլեկտրաշարժիչ, մոտ 15 հազար կենցաղային ժամացույց։

Նախորդ ընտրություններից հետո հանրապետության աշխատավորների հերոսական աշխատանքը բարձր է գնահատվել կուսակցության և պետության կողմից։ 5.479 մարդ պարգևատրվել են միութենական շքանշաններով և մեդալներով։ Նրանցից 41 հոգի արժանացել են Լենինի շքանշանի, 8-ը՝ սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ 12 մարդ արժանացել է Սովետական Միության պատվավոր կոչումների։ Այդ ժամանակամիջոցում 901 մարդ պարգևատրվել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության պատվոգրով, իսկ 699 մարդու շնորհվել են հանրապետության պատվավոր կոչումները։

Իր երեքհազարամյա պատմության ընթացքում ոչ մի անգամ Հայաստանն այնքան հզոր չի եղել, ինչպես այսօր։ Եվ ոչ մի անգամ Հայաստանն այնպես հարուստ չի եղել, ինչպես այժմ։ Ոչ մի անգամ Հայաստանում ապրող հայը այնքան պայծառ հավատով չի նայել իր ապագային, ինչպես ներկայումս։ Եվ ոչ մի անգամ Հայաստանը այնքան ապահով, նրա սահմաններն այնպես անառիկ չեն եղել, ինչպես այսօր։

Եվ այդ բոլորը նորից ու նորից շնորհիվ այն բանի, որ մեր ժողովուրդը իմաստուն հեռատեսությամբ 156 տարի առաջ իր բախտը կապեց ռուս մեծ ժողովրդի հետ, զինվորագրվեց մեծ Լենինի և Հոկտեմբերի անմահ գաղափարներին, կամավոր անդամագրվեց Սովետական Միության մեծ ընտանիքին և նրա հովանու ներքո ապրեց իր սոցիալիստական վերածնունդը։ Եվ այդ բո-



լորը նորից ու նորից շնորհիվ այն բանի, որ կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը տիտանական ջանքերով անում են հնարավոր ամեն ինչ՝ սովետական ժողովուրդների համար, մարդկության համար խաղաղությունն ապահովելու, մեր մոլորակը միջուկային աղետից փրկելու նպատակով։

Մենք ապրում ենք միջազգային լարված ու բարդ իրադրության պայմաններում։ Հայտնի է, որ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո, խաղաղության լենինյան դեկրետից սկսած, Լենինի հայրենիքն իր ամբողջ պատմությամբ, միջազգային հարաբերություններում իր գործունեությամբ հռչակել և գործով ապացուցել է, որ մեր գլխավոր նպատակը եղել ու մնում է սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը։ Սոցիալիզմը հանդիսացավ այն միակ հասարակարգը, որը կարողացավ ժողովրդական զանգվածների խաղաղասիրական ձգտումները կենդանի գործունեություն դարձնել։

Իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանների, մասնավորապես ԱՄՆ-ի առավել ռազմատենչ ուժերի հրահրումով այսօր մարդկությունը տագնապալի պահեր ու ժամանակներ է ապրում։ Բնական է, որ նման պայմաններում ավելի զորեղ են Սովետական Միության խաղաղասիրական նախաձեռնությունները։ Դրանք պարզ ու հստակ ամփոփված են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, Սովետական Միության Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Յու. Վ. Անդրոպովի հայտարարություններում և ելույթներում։

Բոլորը պետք է հստակ իմանան, որ խաղաղության համար Սովետական Միության պայքարը խաղաղության խնդրանք չէ։ Դա ուժեղի կոչ է հանուն բանականության հաղթանակի։ Դա մարդասիրական կոչ է։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը ի լուր ամենքի հայտարարում են, որ բարի կամքի ոչ մի մարդ բարոյական իրավունք չունի մնալ դիտողի դերում և սպասել, թե ինչ կլինի։ Եվ քանի որ հարցը վերաբերում է մարդկության գոյությանը, ամեն մի անհատի սրբազան պարտքը պետք է լինի իր լուման ունենալ խաղաղության ապահովման նվիրական գործում։ Սովետական Միությունը, սոցիալիստական ընկերակցության երկրներն իրենց պատմական նվաճումները պաշտպանելու համար ունեն անհրաժեշտ ամեն բան։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ինչպես սովետական բոլոր մարդիկ, միահամուռ հավանություն են տալիս սոցիալիզմի համաշխարհային դիրքերն ամրապնդելու, մեր մեծ հայրենիքի պաշտպանական հզորությունը պահանջվող մակարդակի վրա պահելու, իմպերիալիզմի ոտնձգությունները մերկացնելու նպատակով կոմունիստական կուսակցության և սովետական պետության վարած արտաքին քաղաքականությանը։ Որովհետև այդ քաղաքականությամբ են պայմանավորված խաղաղության բախտը, մարդկության ճակատագիրը։

1984 թ. հունվարի 12-ին տեղի ունեցավ ՀԿԿ Կենտկոմի հերթական պլենումը։ Ինչպիսի՞ խնդիրներ են ծառացած մեր հանրապետության կուսակցական կազմակերպության առաջ, որոնք բխում են ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի արդյունքներից, պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթի ծրագրային դրույթներից ու հետևություններից։ Ահա այս հարցն էր մեր պլենումի օրակարգում, որի առթիվ ընդարձակ զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը։ Պլենումում մտքերի լայն փոխանակություն տեղի ունեցավ այն հրատապ խնդիրների շուրջը, որոնք առաջիկայում պետք է լուծվեն։ Իսկ այդ խնդիրները բավականին լուրջ են և կուսակցական, սովետական, տնտեսական բոլոր մարմիններից պահանջվում է սրտացավ ու լուրջ մոտեցում, պահանջվում է գործի նկատմամբ գիտական, ստեղծագործական մոտեցում, պահանջվում է հարգել ու խստիվ պահպանել սովետական օրենքը։

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը հավանություն տվեց ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում արված առաջարկությանը,

որ կոնկրետ խնդիր դրվի հասնել աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս արտապլանային բարձրացման և աշխատանքի ինքնարժեքի կես տոկոս լրացուցիչ իջեցման։ Այս մեկ տոկոսի և կես տոկոսի մեջ մեծ բովանդակություն կա։ Որպեսզի պարզ պատկերացնենք, թե այդ տոկոսներն ինչ են նշանակում, բերենք մի քանի թվեր ու փաստեր։ 1984 թվականին Սովետական Հայաստանում աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի բարձրացնել մեկ տոկոսով և արտադրանքի ինքնարժեքը իջեցնել կես տոկոսով, նշանակում է. լրացուցիչ արտադրել 139 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, պլանից ավելի արտադրել 163 հաստոց, 165 հազար զույգ կաշվե կոշիկ, 855 հազար ռուբլու կահույք, 999 հազար քմ բամբակյա գործվածք, շահագործման հանձնել 40 հազար քմ բնակելի տարածություն։ Դա նշանակում է տընտեսել 40 հազար մարդու աշխատանք, խնայել տասնյակ միլիոն ռուբլիներ։

Ահա թե ինչու հունվարյան պլենումը կուսակցական կազմակերպություններից և տնտեսական ղեկավարներից պահանջեց կոնկրետ ու գործուն միջոցներ ձեռնարկել հնգամյակի պլանային առաջադրանքների անվերապահ կատարումն ապահովելու համար և աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքը կես տոկոսով լրացուցիչ իջեցնելու դեկտեմբերյան պլենումի ցուցումն ընդունել որպես կուսակցության լրացուցիչ առաջադրանքի կատարում։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումներով, հանրապետության աշխատավորները ըստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ, որոնց կատարումը կնպաստի հնգամյակի չորրորդ տարվա պլանների կատարմանն ու գերակատարմանը։

Սոցիալիստական դեմոկրատիայի դրսևորման կոնկրետ ձևերից մեկը ժողովրդական դեպուտատների գործունեությունն է։ Հանրապետության Գերագույն սովետն ունի 340 դեպուտատ։

Նրանցից 173-ը, այսինքն՝ կեսից ավելին, բանվորներ և գյուղացիներ են, 121-ը՝ կանայք։ Դեպուտատական կորպուսում հայերը կազմում են 90 տոկոս։ Դրա հետ մեկտեղ, Սովետական Հայաստանում բնակվող բոլոր ազգությունները պատշաճ կերպով ներկայացված են հանրապետության Գերագույն սովետում և տեղական սովետներում, որոնցում ընդգրկված են ավելի քան 27 հազար դեպուտատներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հավանությամբ, ՀՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունը հանրապետությունում սահմանել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատի միասնական օր։ Ըստ սահմանված կարգի, ամեն տարի ապրիլ, սեպտեմբեր և դեկտեմբեր ամիսներին, միևնույն օրը, բոլոր դեպուտատները լինում են իրենց ընտրական օկրուգներում և հանդիպում ընտրողների հետ։ Այդ հանդիպումների գլխավոր թեմաներից մեկը դեպուտատների հաշվետվությունն է իրենց աշխատանքի մասին։ Միայն անցած տարի հանրապետությունում տեղի է ունեցել 839 դեպուտատական հանդիպում։ Դրանց մասնակցել է 208 հազար ընտրող, որից 6.570-ը անձնական հարցերով ընդունելության են եղել Գերագույն սովետի դեպուտատների մոտ։ Սա հենց արտացոլում է պետական իշխանության մարմինների սերտ կապը ժողովրդի հետ, նրանց աշխատանքը մասսաների աչքի առաջ։

Հանրահայտ է, թե կուսակցությունը և սովետական պետությունը ինչպիսի չթուլացող ուշադրություն են նվիրում քաղաքացիների ընդունելության և դիմում-գանգատների հետ տարվող աշխատանքին։ Նամակների հետ տարվող աշխատանքի գնահատականը պայմանավորված է նրանով, թե ամբողջությամբ վերցրած այդ գործը ինչպիսի հիմքերի վրա է դրված, ինչ խորությամբ են վերլուծվում նամակները, որքանով ճիշտ են բացահայտվում այն իրական պատճառները, որոնք ստիպում են քաղաքացուն գրիչ վերցնելու, ինչպիսի միջոցներ են ձեռնարկվում նամակներում նշված թերությունները վերացնելու համար, ինչպիսի խորությամբ են ընդհանրացվում գրավոր ու բանավոր դիմումների հարցերը։ Գործին պետք է մոտենալ համբերատար ու նրբանկատորեն, քանի որ քաղաքացին դիմում է իր ընտրած իշխանությանը, իսկ դա նշանակում է, որ քաղաքացին հավատում է նրան։

Վերջին ժամանակաշրջանում ստացված փոստի վերլուծությունը ամենից առաջ ասում է այն մասին, որ նկատելիորեն ավելացել է պետական մարմինների աշխատանքի կատարելագործման հետ կապված առաջարկությունների և դիտողությունների թիվը։ Ավելի շատ են բարձրացվում հասարակական նշանակություն ունեցող հարցեր և, որ առավել ուրախալի է, արվում են թերությունների և թերացումների վերացման կոնկրետ առաջարկություններ։

Մենք ձգտում ենք, որպեսզի Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահության ապարատում, տեղական սովետներում և նրանց մարմիններում նամակների հետ տարվող աշխատանքը դրվի ավելի բարձր հիմքերի վրա, անպայմանորեն դառնա նրանց կազմակերպական աշխատանքի բաղկացուցիչ մասը։ Գերագույն սովետի Նախագահությունում սահմանված է քաղաքացիների ընդունելության կարգ, որի համաձայն Նախագահության Նախագահի մոտ ընդունելություն կատարվում է յուրաքանչյուր ամսվա երկրորդ և չորրորդ հինգշաբթի օրերը։ Նախագահության Նախագահի տեղակալը և Նախագահության քարտուղարը ընդունելության օր են ունենում ամեն շաբաթ։ Ընդ որում ընդունելությունը կատարվում է հերթականորեն՝ ցերեկային և երեկոյան ժամերին։ Այդ առթիվ համապատասխան հայտարարությունը փակցված է Նախագահության ընդունարանում։

Դրանից բացի, անմիջապես տեղերում, քաղաքներում ու շրջաններում, ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում կազմակերպված է քաղաքացիների ընդունելություն Նախագահության անդամների, Նախագահության բաժինների վարիչների կողմից։ Տեղերում ընդունելությունը կազմակերպվում է վաղօրոք կազմված և հաստատված եռամսյակային գրաֆիկով, որտեղ նըշված է, թե ով, որտեղ և երբ է ընդունելու քաղաքացիներին։ Այդ ընդունելություններին մասնակցում են տեղական սովետների գործկոմների ներկայացուցիչները՝ քաղաքացիների կողմից բարձրացված և տեղական մարմինների իրավասությանը վերաբերող հարցերի օպերատիվ քննարկման համար։ Վերջին երեք տարում Նախագահության ապարատի կողմից ընդունվել է 18 հազար 583 մարդ, որից 4.313-ը՝ անմիջապես տեղերում։

Քաղաքացիների ընդունելության և դիմում-գանգատների հետ տարվող գործը պատշաճ բարձրության վրա պահելու նպատակով Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի Նախագահությունն իր նիստերում քննարկում է այդ ուղղությամբ տարվող աշխատանքը եռամսյակում, կիսամյակում, ինն ամսում և ամբողջ տարում։

Կասկած լինել չի կարող, որ ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի առաջիկա ընտրությունները կհանդիսանան սոցիալիստական դեմոկրատիայի նոր համոզիչ հաղթանակ, կրկին կցուցադրեն սովետական ժողովրդի սերտ համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը։

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ

**Մ. ՄՋԵԴԼՈՎ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Մարքսի ուսմունքը երևան եկավ XIX դարի 40-ական թվականներին՝ որպես պատասխան այն հարցերին, որ առաջադրել էր պրոգրեսիվ հասարակական միտքը և, դրանով իսկ, հանդիսացավ այդ մտքի հետագա զարգացումը՝ նոր որակական աստիճանում:

Մարքսիզմի ձևավորումը որպես գիտական տեսություն երկու հիմնական փուլ է անցել: Առաջին փուլում Մարքսն ըմբռնեց բոլոր հասարակական գիտությունների՝ փիլիսոփայության, պատմության, քաղաքատնտեսության, սոցիալիստական ուսմունքների բարձրագույն հասումները, դրանք ընկալելով որպես իր ուսմունքի աղբյուրներ: Երկրորդ փուլում նշված աղբյուրները Մարքսը քննադատաբար վերամշակեց, քննադատաբար հաղթահարեց դրանք, վերածեց նոր որակի՝ մարքսիզմի բաղկացուցիչ մասերի:

Անդրադառնալով Մարքսի ու Էնգելսի ստեղծած ուսմունքի բաղկացուցիչ մասերին, քանզի Էնգելսի ներդրումը մարքսիստական տեսության մեջ այնքան մեծ է, որ նրա անունն անբաժանելի է իր մեծ բարեկամի անունից՝ մենք ի նկատի ունենք և՛ հասարակական մտքի ընդհանուր ուղղությունները, և՛ այն գիտնականներին, որոնց ստեղծագործության մեջ բաղկացուցիչ մասերն առավել լիովին են արտահայտված: Ընդ որում մենք ելնում ենք մարքսիզմի երեք հիմնական մասերի վերաբերյալ այն արմատավորված պատկերացումից, թե դրանցից յուրաքանչյուրին համապատասխանում է որոշակի պատմական աղբյուր: Այդ բաժանումը, մի կողմից, բավականին հստակ է, իսկ մյուս կողմից էլ որոշ չափով պայմանական է, քանի որ բոլոր այդ բաղկացուցիչ մասերը միմյանց հետ անքակտելիորեն կապված են, ասենք՝ Մարքսի ուսմունքն իսկ ոչ մի կերպ չի կարելի մեխանիկորեն մասնատել, խցկել քարացած շըրջանակների մեջ:

Մարքսիզմի երեք բաղկացուցիչ մասերի բուն հասկացությունն առաջին անգամ Էնգելսն է կիրառել Անտի-Դյուրինգում, բաժանելով այդ, իր իսկ խոսքերով ասած, «փիլիսոփայական, բնագիտական և պատմական պրոբլեմների մեր ըմբռնման հանրագիտական ակնարկը» երեք բաժինների. փիլիսոփայության, քաղաքատնտեսության, սոցիալիզմի (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 36, стр. 119): Էնգելսը շեշտում էր բոլոր այդ մասերի միասնությունը, Անտի-Դյուրինգը բնութագրելով դրա երկրորդ հրատարակման նախաբանում որպես «Մարքսի և իմ կողմից ներկայացվող դիալեկտիկական մեթոդի ու կոմունիստական աշխարհայացքի շատ թե քիչ կապակցված մի շարադրանք» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967 թ., էջ 10): Մարքսը, ինչպես հայտնի է, Անտի-Դյուրինգը կարդացել է ձեռագիր վիճակում և ինքն էլ գրքի բաժիններից մեկի հեղինակն էր, ուստի և ոչ մի կասկած չկա, որ մարքսիզմը բնութագրելով որպես նրա երեք բաղկացուցիչ մասերի ամբողջություն, Էնգելսն արտահայտում էր իրենց երկուսի տեսակետը:



Բուն Անտի-Դյուրինգի վրա էր առաջին հերթին հենվում Վ. Ի. Լենինը Մարքսիզմի երեք աղբյուրներն ու երեք բաղկացուցիչ մասերը հայտնի հոդվածում, տարածելով այդ բաժանումը նաև Մարքսի ուսմունքի աղբյուրների վրա:

Խորապես ուսումնասիրելով հասարակական մտքի պատմությունը, Մարքսը ըն ամենից առաջ առանձնացրեց այն հեղինակներին, որոնց աշխատությունները ներկայացնում էին այդ մտքի բարձրագույն հասումները: Փիլիսոփայության մեջ դա նախ և առաջ Հեգելն էր՝ իր համակողմանի մշակած դիալեկտիկայով, ու Ֆոյերբախը, որի երկերում բնության նկատմամբ մատերիալիստական հայացքներն առավել լիովին էին զարգացված: Մարքսիզմի փիլիսոփայական աղբյուրների թվին են պատկանում և՛ հին աշխարհի փիլիսոփաների աշխատություններն ու XVII—XVIII դարերի փիլիսոփայական մտքի խոշորագույն ներկայացուցիչները, և՛ ֆրանսիական լուսավորիչներն ու XVIII դարի մատերիալիստները, և՛ գերմանական մեծ փիլիսոփաները՝ Հեգելի նախորդներն ու ժամանակակիցները: Նշելով նրանց հսկայական դերը հասարակագիտության զարգացման ասպարեզում, Մարքսը միևնույն ժամանակ բացահայտում է նրանց բոլորին հատուկ սկզբունքային թերությունը՝ անհետևողականությունը, հասարակական պրոցեսները լուսաբանելիս անհրաժեշտ համակողմանիության և ամբողջականության բացակայությունը: Հաղթահարելով նշված արմատական թերությունները, Մարքսի տեսությունը փիլիսոփայական միտքը բարձրացրեց որակապես նոր աստիճանի:

Այսպես, Մարքսը քննադատաբար վերաիմաստավորեց Ֆոյերբախի փիլիսոփայական մատերիալիզմը, որը մեխանիստական, ոչ դիալեկտիկական, ոչ պատմական մատերիալիզմն էր, օրգանապես այն միացրեց Հեգելի մատերիալիստորեն վերամշակված դիալեկտիկայի, առաջին հերթին, զարգացման մասին նրա ուսմունքի հետ, մատերիալիզմը տարածեց նաև մարդկային հասարակության իմացության, հասարակական, պատմական երևույթների վրա: «Մարքսը և ես,— գրել է Էնգելսը Անտի-Դյուրինգի երկրորդ հրատարակության առաջաբանում,— գրեթե միակ մարդիկն էինք, որ գիտակցական դիալեկտիկան փրկեցինք գերմանական իդեալիստական փիլիսոփայությունից և այն փոխադրեցինք բնության ու պատմության մատերիալիստական ըմբռնման բնագավառը» (Նույն տեղը, էջ 12): Մարքսի և Էնգելսի ստեղծած պատմության մատերիալիստական ըմբռնումն էլ հանդիսացավ նրանց առաջին մեծ հայտնագործությունը, որով նշանավորվեց իրոք հեղափոխական հեղաշրջում փիլիսոփայության մեջ:

Բայց այդ հեղաշրջումը չէր կարող կատարվել միայն զուտ մտահայեցողական դատողությունների և ապացույցների հիման վրա: Այն կատարելու համար բավական չէր միայն տիրապետել նախկին փիլիսոփայական ուսմունքներին և պատմական պրոցեսի վերաբերյալ բազմաթիվ տեսություններին: Պատմության մատերիալիստական ըմբռնման մշակմանը նախորդեց նաև Մարքսի կողմից համաշխարհային պատմության կոնկրետ փաստերի, հատկապես դրա բեկումնային պահերի և ամենից առաջ ֆրանսիական մեծ հեղափոխության պատմության խորազնին ուսումնասիրումը: Բավական է նշել, որ միայն 1843 թ. կազմված այսպես կոչված «Կրոյցնախյան տետրերում» պարունակվում են գրեթե բոլոր եվրոպական երկրների և ԱՄՆ-ի պատմությանը վերաբերող, ինչպես նաև հատկապես ֆրանսիական հեղափոխությանը նվիրված տասնյակ գրքերի կոնսպեկտներ: Այսպիսով, համաշխարհային պատմության ուսումնասիրումը նույնպես ծառայել է որպես Մարքսի առաջին մեծ հայտնագործության կարևորագույն աղբյուրներից մեկը:

Պատմական մատերիալիզմի մշակումը, պատմական պրոցեսի դիալեկտիկամատերիալիստական իմաստավորումը օրգանապես կապված են դիալեկտիկամատերիալիստական մեթոդի բուն էության հետ, մեթոդ, որը քննարկում է բնության, հասարակության և մտածողության համընդհանուր օրենքներն իրենց ամբողջականության մեջ: Իսկ քանի որ այդ ամբողջականությունն իրականում ձեռք է բերվում միայն հասարակական զարգացման վերլուծու-

թյամբ, ապա բուն պատմական մատերիալիզմն է հանդես գալիս որպես Մարքսի փիլիսոփայական մատերիալիզմի գագաթ։

Պատմության դիալեկտիկամատերիալիստական ըմբռնումից բխում է հիմնարար հետևությունը քաղաքական հայացքների, փիլիսոփայական ուսմունքների և այլ խնդիրներում տնտեսակարգի, այսինքն՝ արտադրահարաբերությունների սիստեմի, ինչպես և հասարակական-տնտեսական ֆորմացիաների հաջորդական, պրոգրեսիվ զարգացման գործում արտադրաուժերի վճռական դերի մասին։ Այս հետևությունը Մարքսի համար նշանակում էր խորազնին տնտեսագիտական ուսումնասիրությունների առաջնահերթ անհրաժեշտություն։ Վերջինս հանգեցրեց նրան, որ տնտեսագիտական ուսմունքը կարևոր տեղ գրավեց մարքսիզմի մեջ։ Միևնույն ժամանակ նշված հետևությունը պատմության դիալեկտիկամատերիալիստական ըմբռնումը վերածում էր մարքսիստական քաղաքատնտեսության մեթոդաբանական հիմքի, շեշտելով արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկական փոխազդեցությունը որպես տնտեսական և վերջին հաշվով նաև ողջ հասարակական զարգացման աղբյուր։ «Հետազոտման առարկան,— գրում էր Մարքսը 1857—1859 թվականների տնտեսագիտական ձեռագրերում (Կապիտալի նախնական տարբերակը),— նախ և առաջ նյութական արտադրությունն է... Երբ խոսքը վերաբերում է արտադրությանը, ապա այն մշտապես հասարակական զարգացման որոշակի աստիճանի արտադրության մասին է» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 46, ч. I, стр. 17, 21)։

Հասարակության առաջընթաց զարգացման պրոցեսում միմյանց փոխարինող հասարակական-տնտեսական ֆորմացիաների բուն տեսությունը պատմության մատերիալիստական ըմբռնման անքակտելի մասն է։ Մարքսի և Էնգելսի առաջին համատեղ աշխատություններից մեկում՝ Գերմանական գաղափարախոսությունում առաջին անգամ ձևակերպված այդ տեսության մշակման ու զարգացման համար նրանք շարունակում էին աշխատել իրենց ողջ կյանքի ընթացքում։

XIX դարի 70-ական թվականների վերջին հնագիտության, ազգագրության և գիտության մի շարք այլ ճյուղերի հաջողությունները նորովի լուսաբանեցին մարդկության պատմության վաղ շրջանները։ Դրա շնորհիվ գտնվեց այն բազմաթիվ պրոցեսների ընկալման բանալին, որոնք տեղի էին ունենում, այսպես ասած, կապիտալիստական աշխարհի «ծայրամասերում»՝ տնտեսապես և քաղաքականապես հետամնաց գաղութային և կախյալ երկրներում։ Այդ երկրները ենթարկվում էին կապիտալիստական տերությունների անխնա շահագործմանը և միևնույն ժամանակ դրանց միջև պայքարի օբյեկտ էին ծառայում։

Այդ նոր գիտական տվյալներն ավելի սևեռեցին Մարքսի և Էնգելսի ուշադրությունը, ժամանակակից լեզվով արտահայտված, երրորդ աշխարհի ժողովուրդների ճակատագրի վրա։ Այլևայլ պատճառներից բացի, մասնավորապես դրանով իսկ պետք է բացատրել նրանց հետաքրքրությունը 70-ական թվականների վերջին և 80-ական թվականների սկզբին նախնադարյան հասարակության պատմության նկատմամբ, որի մասին են վկայում տարբեր հեղինակների (Կովալևսկու, Մորգանի, Մայնի, Լեբբոկի) մի շարք աշխատությունների՝ մեզ հասած կոնսպեկտները այդ շրջանի վերապրուկների ուսումնասիրման առթիվ, վերապրուկներ, որոնք գյուղական համայնքի ձևով դեռևս այդ ժամանակ գոյություն ունեին Արևելյան և Հարավ-Արևելյան Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի որոշ երկրներում։ Այդ հետաքրքրությունն անհիմն չէր։ Արդեն 50-ական թվականներին, ջերմ կարեկցանքով վերլուծելով Հնդկաստանի և Չինաստանի ժողովրդական զանգվածների ազատագրական պայքարն ընդդեմ գաղութարարների, Մարքսն արտահայտեց մի շարք խոր մտքեր, որոնք վկայում էին, թե նա ինչպիսի կարևորություն էր տալիս այդ «ծայրամասի» ժողովուրդների ազգային-ազատագրական շարժմանն ապագայում և դրանց դերի պարզաբանմանը մարդկության հասարակական պրոգրեսի գործում։

Ո՛չ Մարքսը, ո՛չ էլ նրանից հետո Էնգելսը չտեսան կապիտալիզմի գաղութային սիստեմի փլուզումը։ Նրանք, բնականաբար, չէին կարող կանխա-



տեսել այն կոնկրետ ուղիները, որոնցով ընթանալու էր այդ ժողովուրդների զարգացումը։ Բայց նրանց համար պարզ էր. վաղ թե ուշ «ծայրամասի» երկրների անկախությունը կվերականգնվի և, վերջիվերջո, ինչպես 1882 թ. գրում էր Էնգելսը, նրանք «ևս կհասնեն սոցիալիստական կազմակերպության» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 3, «Հայաստան» հրատ., 1972 թ., էջ 637)։

Ինչպես հետևում է, մասնավորապես Վ. Զասուլիչին ուղղված Մարքսի նամակի հայտնի ուրվագծերից, նա չէր բացառում նաև զարգացման ոչ կապիտալիստական ուղու հնարավորությունը դեռևս կապիտալիզմի փուլը չանցած երկրների համար՝ արդյունաբերական երկրներում սոցիալիզմի հաղթանակի և նրանց կողմից օգնության դեպքում։

Պատմության դիալեկտիկամատերիալիստական ըմբռնումը Մարքսն ու Էնգելսը մշակել էին արդեն XIX դարի 40-ական թվականներին, և այդ ժամանակ էլ ծավալվեցին Մարքսի քաղաքական-տնտեսագիտական ուսումնասիրությունները, որոնց ընթացքում շուտով պարզվեց բուրժուական քաղաքատնտեսության դասականներ Ֆրանկլինի, Պետիի, Սմիթի, Ռիկարդոյի և ուրիշների ստեղծած արժեքի աշխատանքային տեսության հիմնարար նշանակությունը։ Այդ տեսությունը, մինչմարքսյան մատերիալիզմից ու դիալեկտիկայից հետո, նույնպես հանդես է գալիս որպես մարքսիզմի աղբյուր։ Դրա արմատական թերությունը, ինչպես ցույց տվեց Մարքսը, կայանում է նրանում, որ հիշյալ տնտեսագետների մեկնաբանությամբ այն չէր արտացոլում բուն կապիտալիստական արտադրաեղանակի առանձնահատկությունը, բուրժուական հասարակությունում աշխատանքային հարաբերությունների բնույթը։ Սմիթը, օրինակ, այն կարծիքին էր, որ արժեքի օրենքն առհասարակ չի գործում կապիտալիստական էկոնոմիկայում, իսկ արժեքի աշխատանքային տեսության շրջանակներում աշխատանքի և կապիտալի միջև փոխանակությունը բացատրելու Ռիկարդոյի փորձն ավարտվեց անհաջողությամբ։ Միայն Մարքսը խստորոշ հիմնավորեց և հետևողականորեն զարգացրեց այդ տեսությունը, բացատրեց հավելյալ արժեքի ստեղծման մեխանիզմը արժեքային հարաբերությունների շրջանակներում։ «Կապիտալը... ներկայացնում է այն ուժը,— ասում է Մարքսը 1857—1859 թվականների տնտեսագիտական ձեռագրերում,— որը յուրացնում է ուրիշի աշխատանքն առանց փոխանակման, առանց համարժեքի, սակայն փոխանակման տեսքով» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 46, ч. II, стр. 45)։

Հավելյալ արժեքի մասին ուսմունքն իսկ, որի ստեղծումը 1857—1858 թթ. հանդիսացավ Մարքսի երկրորդ մեծագույն հայտնագործությունը, հեղափոխական հեղաշրջում քաղաքատնտեսության մեջ, սահմանում է կապիտալիստական հասարակության շարժման տնտեսագիտական օրենքը, նրա զարգացման արմատական միտումները։

Մինչմարքսյան սոցիալիստական ուսմունքները, որոնք նույնպես ծառայեցին որպես մարքսիզմի աղբյուրներից մեկը, ուտոպիական էին։ Նույնիսկ դրանցից ամենախորիմաստները, սկսած Մաբլիի և Մորելիի կոմունիստական գաղափարներից XVIII դարում և վերջացրած Սեն-Սիմոնով, Ֆուրիեով, Օուենով և մյուսներով, ի վիճակի չէին դուրս գալու ապագայի հասարակարգի վերաբերյալ մտահայեցողական պատկերացումների շրջանակներից, որը նրանց պատկերանում էր որպես համընդհանուր բարօրության և արդարության թագավորություն, որպես յուրատեսակ երկրային դրախտ։ Սոցիալիզմին հասնելու ուղիների մասին հարցը նրանք կա՛մ ամենևին չէին առաջադրում, կա՛մ դրանք տեսնում էին յուրատեսակ կոոպերատիվ ընկերությունների՝ «կոմունաների», «ֆալանստերների» և այլնի ստեղծման մեջ, որոնք պետք է դառնային գալիք հասարակության պատրաստի բջիջները։ Քննադատելով կապիտալիզմը, ապացուցելով շահագործման անբարոյականությունն ու անարդարացիությունը, բացահայտելով մասնավոր սեփականության վրա հենվող հասարակական կառուցվածքի անմարդկային բնույթը, երազելով լավագույն հասարակարգի մասին, սոցիալիստ-ուտոպիստները չկարողացան բացահայտել հասարակական զարգացման օրենքները, տեսնել այն հասարակական ուժը, որն ունակ

էր դառնալու նոր հասարակության ստեղծողը։ Այդ ամենը կարող էր իրականացնել միայն Մարքսի և Էնգելսի գիտական սոցիալիզմն այն բանից հետո, երբ դա ստացավ փիլիսոփայական (պատմական մատերիալիզմ) և տնտեսագիտական (հավելյալ արժեքի տեսություն) հիմնավորում։ Այդ հայտնագործությունների շնորհիվ,— գրել է Էնգելսը Անտի-Դյուրինգում,— սոցիալիզմը գիտություն դարձավ (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, էջ 34)։ Մարքսն ու Էնգելսը, պատմության դիալեկտիկամատերիալիստական ըմբռնումը կիրառելով իրենց ժամանակակից բուրժուական հասարակության նկատմամբ, ծանոթանալով առաջին հերթին Անգլիայի՝ այն ժամանակ արդյունաբերական առումով առավել զարգացած երկրի, բանվոր դասակարգի գոյության պայմանների հետ, շահագործողներին նրա ցույց տված դիմադրության, առաջին պրոլետարական կազմակերպությունների և հօգուտ բանվորների շահերի նրանց գործունեության հետ, արդեն 40-ական թվականներին ձևակերպեցին գիտական սոցիալիզմի տեսության հիմնադրույթները։ Նրանք բացահայտեցին բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական դերը որպես գլխավոր ուժի, որն ունակ է ոչնչացնելու շահագործման ու կեղեքման հասարակարգը, և որպես ապագա հասարակության ստեղծողի։

Մարքսի համար սոցիալիստ-ուտոպիստների աշխատություններից բացի գիտական սոցիալիզմի տեսության աղբյուր հանդիսացավ դասակարգերի պայքարի պատմության ուսումնասիրումը՝ առաջին հերթին ռեստավրացիայի շրջանի ֆրանսիական պատմաբաններ Թիերրի, Գիզոյի, Մինյեի, Թիերի կողմից, որոնք այդ պայքարում գտան ողջ Ֆրանսիական պատմության ընկալման ու բացատրման բանալին։ Այս բնագավառում ևս Մարքսի կատարած հեղափոխական հեղաշրջումն այն էր, որ նա, հենվելով պատմության դիալեկտիկամատերիալիստական ըմբռնման վրա, դասակարգային պայքարի տեսությունը հետևողականորեն զարգացրեց՝ հասցնելով նոր հասարակության կառուցման սոցիալիզմին անցնելու գործում բանվոր դասակարգի վճռական դերի վերաբերյալ հետևության։

Կապիտալիստական հասարակությունում բանվոր դասակարգի իրական դրությունը պարզաբանելու և նրան սպասող գալիքի գիտական կանխագուշակումը կատարելու համար անհրաժեշտ էր բացատրել այդ հասարակության զարգացման արմատական միտումները, դրա գործունեության մեխանիզմը։ Մարքսն այդ իրականացրեց 50-ական, 70-ական թվականներին Կապիտալի հատորներում։

Բուն Կապիտալում նրա ուսմունքն առավել լիովին մարմնավորվեց։ Այդ աշխատությունը դարաշրջան կազմեց հասարակական մտքի պատմության մեջ, առավել լիարժեք արտացոլեց մարքսիզմի էությունը՝ որպես աշխարհի գիտական ճանաչման և հանուն մարդկային բարօրության այն հեղափոխականորեն վերակառուցելու միջոցի։ Կապիտալում իսկ առավել լիովին մարմնավորվեցին Մարքսի թևավոր խոսքերը. փիլիսոփաները միայն տարբեր կերպ բացատրել են աշխարհը, բայց խնդիրն այն փոխելն է։

Մարքսի գլխավոր աշխատությունը հիրավի մի հանրագիտական գործ է, որն արտացոլում է գիտելիքի ամենաբազմազան ճյուղերին վարպետորեն տիրապետող հեղինակի գիտական հետաքրքրությունների արտակարգ լայնությունը։ Մարքսի կիրառած մատերիալիստական դիալեկտիկայի մեթոդը մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը ձուլել է մի միասնական ամբողջության մեջ՝ արտահայտված Կապիտալի բովանդակությունում։

Մարքսն ու Էնգելսը գիտական սոցիալիզմի տեսության զարգացումը, մասնավորապես պրոլետարիատի դասակարգային պայքարի ձևերի ու միջոցների հարցի, նրա կուսակցության, իր վերջնական նպատակին՝ կապիտալիզմի տապալման և նոր հասարակարգի հաստատման, այդ հաղթանակին հանգելու պայմանների վերաբերյալ, մի խոսքով, հեղափոխական բանվորական շարժման, պրոլետարիատի ազատագրական պայքարի ստրատեգիական ու տակտիկական հիմունքների վերաբերյալ հարցի մշակումը շարունակեցին իրենց ողջ կյանքի ընթացքում։ Այդ բանի համար ամենահարուստ նյութը տալիս էր բուն դասակարգային պայքարի պրակտիկան։ Դասակարգային, երբեմն խիստ կատաղի պայքարի ընթացքում պատմական ստուգման ենթարկվեցին Մարքսի և Էնգելսի կատարած հետևությունները, նրանց մշակած դրույթները, միևնույն ժամանակ հեղափոխական մարտերի և իր իրավունքների ու շահերի համար բանվոր դասակարգի ամենօրյա պայքարի փորձը հնարավորություն ընձեռեցին զարգացնելու և կոնկրետացնելու արդեն ձևավորված տեսությունը։ Նման ընդհանրացման շնորհիվ առաջադրվող նոր դրույթներն իրենց հերթին դառնում էին մարտնչող պրոլետարիատի սեփականությունը և նպաստում նրա դասակարգային գիտակցության ու կազմակերպվածության՝ կապիտալի դեմ հաջող պայքարի հիմնական երաշխիքի աճին։

Դեռևս 40-ական թվականներին, կազմակերպված բանվորական շարժման արշալույսին պրոլետարիատի ինքնուրույն քաղաքական կուսակցության ստեղծման անհրաժեշտության վերաբերյալ Մարքսի և Էնգելսի առաջադրած դրույթն սկզբնապես ընկալվեց բանվորական շարժման միայն մի ոչ մեծ խմբի կողմից և կարող էր իրականացվել սոսկ ամենասահմանափակ չափերով, որպես կոմունիզմի աննշան թվով կողմնակիցների ինտերնացիոնալ միավորում (Կոմունիստների միություն)։ Բանվորների միջազգային ընկերության՝ I Ինտերնացիոնալի (1864—1874 թթ.), որի ոգին Մարքսն էր, ծավալած գործունեության շնորհիվ այդ գաղափարը աստիճանաբար հասնում էր մարտնչող պրոլետարիատի առավել լայն խավերի գիտակցությանը, և նրանք դասակարգային պայքարի պրակտիկայով հետզհետե համոզվում էին դրա ճշմարտացիության մեջ։ Այդ գաղափարը համապատասխանում էր այդ պայքարի տեսական պահանջներին և այդ իսկ պատճառով բանվորների միջազգային ընկերության գոյության վերջում ընկալվեց նրա առաջադեմ մասնակիցների կողմից և Ինտերնացիոնալի 1872 թ. Հաագայի կոնգրեսում միահամուռ ընդունվեց որպես դասակարգային առումով գիտակից պրոլետարիատի առաջնահերթ խնդիր։ Իսկ հետագա տարիներին կապիտալիստական երկրների մեծ մասում պրոլետարական կուսակցությունների արագ ստեղծումը և 80-ական թվականների վերջին նոր՝ II Ինտերնացիոնալում դրանց միավորումը վերջնականապես հաստատեցին այդ գաղափարի ճշմարտացիությունը, պրոլետարիատի դասակարգային պայքարի իսկական շահերին ու նպատակներին դրա համապատասխանելը։

Գիտական սոցիալիզմի տեսության զարգացման համար մեծ նշանակություն ունեցան XIX դարի երկու խոշորագույն հեղափոխական իրադարձությունները՝ 1848—1849 թթ. հեղափոխությունները Ֆրանսիայում, Գերմանիայում ու մի շարք այլ եվրոպական երկրներում, և, հատկապես, 1871 թվականի Փարիզի կոմունան։ Այդ իրադարձությունները, որոնցում գիտական սոցիալիզմի տեսության ստեղծողներն ամենագործուն մասնակցությունն ունեցան, խորհելու հսկայական նյութ տվեցին, մղեցին նորովի տեսնելու հասարակական շատ պրոցեսներ։ Դրանց խոր ու համակողմանի վերլուծության շնորհիվ Մարքսն իր ուսմունքը լրացրեց հույժ կարևոր հետևություններով։ Դա, ամենից առաջ, սոցիալիստական հեղափոխության հաջողության համար բուրժուական պետական մեքենան ջարդելու և պրոլետարական իշխանության մարմիններ ստեղծելու անհրաժեշտության վերաբերյալ հետևությունն էր։ Դա, այնուհետև, հետևությունն է խոշոր կապիտալի կողմից շահագործվող գյուղացիության և աշխատավոր բնակչության մյուս խավերի հետ բանվոր դասակարգի դաշինքի մասին՝ որպես պրոլետարիատի կողմը ժողովրդական լայն զանգվածներին գրավելու, հեղափոխական նվաճումների ամրապնդման ու զարգացման անխախտ պայմանի։ Դա եզրակացությունն է այն մասին, որ միայն պրոլետարիատը կարող է լինել հետևողական մարտիկ հանուն դեմոկրատիայի և իր հեղափոխության ընթացքում լուծել նաև ընդհանուր դեմոկրատական խնդիրները։ Դա՝ պրոլետարական պետության բնույթի և դրա խնդիրների վերաբերյալ, սուբյեկտիվ գործոնի՝ բանվոր դասակարգի գիտակցականության ու կազմակերպվածության դերի մեծացման, նրա ավանգարդի գաղափարական միասնության ու համախմբվածության, միջազգային համե-

բաշխության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի... վերաբերյալ դրույթներն են։

Այս և պրոլետարիատի հեղափոխական կռիվների փորձից բխած մյուս հետևությունները այս կամ այն չափով արտացոլվեցին այն ժամանակ ստեղծվող սոցիալիստական կուսակցությունների ծրագրային փաստաթղթերում և գործունեության մեջ ու այդպիսով դարձան բանվոր դասակարգի ազատագրական պայքարի լծակներից մեկը։ Պրակտիկայի, փորձի, գիտական մտքի նորագույն հասումների հիման վրա նման մշտական զարգացումը հատուկ է ոչ միայն գիտական սոցիալիզմին, այլև Մարքսի ուսմունքի մյուս բաղկացուցիչ մասերին, ամբողջությամբ մարքսիզմին։

Լայնորեն հայտնի է, թե ինչպիսի հսկայական նշանակություն էին տալիս Մարքսն ու Էնգելսը Դարվինի ուսմունքին, նրա հետևորդների աշխատություններին։ Դրանք, բնական գիտությունների մյուս հասումների կողքին, հիմք ծառայեցին մատերիալիստական դիալեկտիկայի կատեգորիաների մշակման համար։ Մորգանի, Կովալևսկու և մարդկության պատմության վաղ փուլերի ուսումնասիրմամբ զբաղվող մյուս գիտնականների հայտնագործությունները Մարքսին հնարավորություն ընձեռեցին զգալիորեն ճշգրտելու և զարգացնելու հասարակական-տնտեսական ֆորմացիաների իր տեսությունը, իսկ Էնգելսին՝ պետության ծագման և էության մասին մարքսիստական ուսմունքը։

Աշխատելով Կապիտալի II և III հատորների տպագրության նախապատրաստման վրա, Էնգելսը շարունակում էր ուշադրությամբ հետևել կապիտալիզմի զարգացման նոր երևույթներին ու միտումներին, որոնք նրա ներթափանցող մտքին ավելի ու ավելի նկատելի էին դառնում 80-ական թվականներին և 90-ական թվականների առաջին կեսին։ Այդ տարիների մի շարք աշխատություններում, հատկապես Կապիտալի III հատորի լրացման մեջ, Էնգելսն արդեն տվեց այդ նոր երևույթների բնութագիրը՝ բիրժայի դերի մեծացումը, բաժնետիրական ձեռնարկությունների աճի և դրանց գործունեության ոլորտի ընդլայնման հետզհետե մեծացող միտումը, խոշորագույն կապիտալիստական տերությունների միջև ավերիչ ռազմական ընդհարումներով հղի տնտեսական պատերազմի առավել սաստկացումն ու դաժանացումը և այլն։

Մարքսիստական տեսության՝ որպես ամբողջական ուսմունքի ստեղծումն անփոփոխ կերպով տեղի է ունեցել նրա բաղկացուցիչ մասերի օրգանական միասնության և փոխգործողության մեջ։ Գիտական սոցիալիզմի հիմնադրույթները ձևակերպվել են որպես հետևություն պատմության մատերիալիստական ըմբռնման և որպես արդյունք տնտեսագիտական ուսումնասիրությունների։ Իր հերթին, պատմական մատերիալիզմը մեթոդաբանական հիմք ծառայեց Մարքսի կողմից քաղաքատնտեսության հետագա մշակման համար, իսկ գիտական սոցիալիզմի տեսության հետագա զարգացումը կենսականորեն անհրաժեշտ դարձրեց տնտեսագիտական ուսումնասիրությունները։ Վերջապես, տնտեսագիտական տեսության մշակումն էապես հարստացրեց պատմական պրոցեսի մատերիալիստական ըմբռնումը։ Նման փոխգործողություն տեղի է ունեցել Մարքսի տեսական ողջ գործունեության ընթացքում, այն գոյություն ունի նաև մարքսիզմի զարգացման արդի փուլում։

Զարգացնելով արժեքի աշխատանքային տեսությունը բուն կապիտալիստական հարաբերությունների կիրարկմամբ, Մարքսը, ինչպես ասվեց, ստեղծեց հավելյալ արժեքի տեսությունը, որը բացահայտում էր կապիտալիստական շահագործման մեխանիզմը և հնարավորություն ընձեռում մատնանշելու բուրժուական հասարակության զարգացման հիմնական միտումները։ Բանվոր դասակարգի շահագործման օբյեկտիվ բնույթից անմիջապես բխում էր այդ շահագործման ոչնչացման համար սոցիալիստական հեղափոխության անհրաժեշտության վերաբերյալ հետևությունը։ Բայց կապիտալիզմի զարգացումն ստեղծում է նաև սոցիալիզմին անցնելու նյութական նախադրյալներ, և դրանում է այդ արտադրաեղանակի պատմական պրոգրեսիվությունը։ Որոշակի պատմական պայմաններում կապիտալիզմը հանդիսանում է արտադրաուժերի զարգացման անհրաժեշտ հասարակական ձևը։ Սակայն նրա հատուկ հակամարտ հակասությունները հանգեցնում են այն բանին, որ արտադրաուժերի



զարգացմանը զուգընթաց կապիտալիստական արտադրահարաբերություններն ավելի ու ավելի պակաս չափով են ունակ դառնում խթանելու այդ զարգացումը, ընդհակառակը՝ նրանք ավելի ու ավելի մեծապես են վերածվում դրա արգելակի։

Կապիտալում Մարքսը բացահայտեց բուրժուական հասարակությունում տնտեսական պրոցեսների օբյեկտիվ, օրինաչափ բնույթը։ XIX դարի համար դասական՝ անգլիական կապիտալիզմի օրինակով նա ապացուցեց, որ հասարակական-տնտեսական ֆորմացիայի զարգացումն իրենից ներկայացնում է մի բնապատմական պրոցես, որ այդ ֆորմացիայի տնտեսական օրենքները, դրա զարգացման միտումները, գործում և իրականանում են «երկաթյա անհրաժեշտությամբ», անկախ այս կամ այն երկրի զարգացման մակարդակից։ «Արդյունաբերականորեն առավել զարգացած երկիրը պակաս զարգացած երկրին միայն նրա սեփական ապագայի պատկերն է ցույց տալիս» (Կ. Մարքս, Կապիտալ, հատոր առաջին, գիրք I, էջ 7)։ Մարքսի տնտեսագիտական տեսության մեջ կապիտալիստական արտադրաեղանակի տնտեսական օրենքների ներգործման ընդհանուր բնույթը բացատրվում է այն բանով, որ կապիտալիստական շահագործման, արտադրաեղանակի և կապիտալիստների կողմից բանվորների չվարձատրված աշխատանքի յուրացման էությունը վճռորոշ ազդեցություն է գործում հասարակության ողջ տնտեսական և քաղաքական կառուցվածքի վրա։ Իսկ քանի որ կապիտալիստական յուրացման էությունը միանման է թե՛ զարգացած, թե՛ հետամնաց կապիտալիստական երկրներում, ապա և զարգացման օրենքները պետք է միանման լինեն և՛ այստեղ, և՛ այնտեղ։

Ուսումնասիրելով կապիտալիստական էկոնոմիկան, Մարքսը կոնկրետացրեց պատմական մատերիալիզմի դրույթը հասարակության օրենքների ներգործության յուրահատուկ բնույթի մասին, օրենքներ, որոնք, ի տարբերություն բնության օրենքների, իրականանում են մարդկային գործունեության միջոցով, որը տեղի է ունենում դասակարգային հակամարտ հասարակությունում դասակարգերի գործունեության ու պայքարի ձևով։ Այդ իսկ պատճառով մարքսիզմի ամենաբնորոշ առանձնահատկություններից մեկը նրա վառ արտահայտված սոցիալական բնույթն է, նպատակաուղղվածությունը գործողության, պրակտիկային։ Մարքսը մասնավորապես ցույց տվեց, որ կապիտալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքներն իրականանում են համառ դասակարգային պայքարի ընթացքում, որն այդ օրենքների վրա ներգործող կարևոր գործոն է և որն ունակ է, բուն օրենքները չվերացնելով, էապես կերպափոխել դրանք, իսկ երբեմն էլ չլատել դրանց ներգործությունը։ Այդպիսով, մարքսիզմի աղբյուրների և բաղկացուցիչ մասերի ամենասերտ փոխկապվածության բացահայտումը կարևոր է ոչ միայն Մարքսի կողմից իր տեսության մշակման իրական ընթացքը հասկանալու, այլև անհրաժեշտ է այդ տեսության բուն բովանդակությունը ճիշտ ըմբռնելու համար։

Մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերի ամենասերտ ներքին կապով է բնորոշվում նրա բազմակողմանի, համապարփակ բնույթը։ Իրոք որ, չկա գիտության այնպիսի բնագավառ, ամենից առաջ հումանիտար մարզում, որի համար Մարքսի կարևորագույն, հիմնարար հետևություններն ու դրույթները չունենային հիրավի վճռական նշանակություն։ Բնական գիտությունների բնագավառում ևս Մարքսի մեթոդաբանությունը հաճախ հանդիսանում է այն բանալին, որը հնարավորություն է ընձեռում գտնելու ամենաբարդ հարցերի լուծման ճիշտ մոտեցումը։

Մարքսիզմի այս համապարփակության մեջ արտացոլվում է նրա ստեղծողների հանրագիտակությունը։ Թե՛ Մարքսը, թե՛ Էնգելսը եղել են, և սա կարելի է ասել առանց չափազանցության, առանց սխալվելու երկյուղի, իրոք հանրագիտակներ։ Մարքսի մեզ հասած կարդացած գրքերի բազմաթիվ կոնսպեկտները (քաղվածքները) և նշումները կազմում են տասնյակ ստվար տետրեր՝ գրված ամենամանր, սեղմ, հաճախ դժվարընթեռնելի ձեռագրով։ Դրանք գրքեր են քաղաքատնտեսության ու փիլիսոփայության, պատմության ու իրավագիտության, բանասիրության ու գրականագիտության, քիմիայի ու

*մաթեմատիկայի, կենսաբանության ու հողագիտության վերաբերյալ, վիճակագրական տեղեկություններ և վավերագրերի հրատարակումներ են։ Դրանք հենց նոր լույս տեսած և, այսպես ասած, թարմ հետքերով ընթերցված գրքեր են և XVII, XVIII դարերի ու XIX դարի սկզբի հրատարակություններ՝ երբեմն չափազանց հազվադեպ և միայն ամենախոշոր գրապահոցներում պահվող։ Այդ մեծաթիվ գրքերի ընթերցումը Մարքսի համար պարապ հետաքրքրասիրության բավարարում, փաստերի ու ամեն կարգի տեղեկությունների պարզ կուտակում չէր։ Ո՛չ, այդ երկերի վրա թափած աշխատանքը կարևորագույն անհրաժեշտ մի փուլն էր նրա ստեղծագործության, լինի դա նրա կյանքի հիմնական աշխատության՝* Կապիտալի *վրա բազմամյա աշխատանքը, լինի դա պատմական շարադրանք կամ բանավիճային երկ։ Հաշված է, որ միայն* Կապիտալում *գրեթե հազար տարբեր գրքերի և այլ հրատարակումների վկայակոչում կա։ Իսկ որքա՜ն են նման հղումներն ու հիշատակումները մյուս աշխատություններում, պամֆլետներում և լրագրային հոդվածներում, նույնիսկ մասնավոր նամակներում։ Մոսկվայի մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի և Բեռլինի մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կողմից հրապարակվող Մարքսի ու Էնգելսի ողջ գրական ժառանգության բնագրերի լեզուներով վիթխարի հրատարակության մեջ քաղվածքների հրապարակումն զբաղեցնում է հատուկ բաժին, որը կպարունակի մեկից ավելի տասնյակ հատորներ։*

*Բայց մարքսիզմի բազմակողմանիությունը ոչ միայն նրանում է, որ այն ներգործել և ներգործում է գիտության զանազան ճյուղերի զարգացման վրա։ Նրա հիմնական սկզբունքներն ամենևին էլ կապված չեն որևէ մեկ աշխարհագրական գոտու, ասենք, Եվրոպայի հետ։ Նրանք հիրավի համընդհանուր բնույթ են կրում։ Քանզի Մարքսի ու Էնգելսի կողմից հայտնագործված պատմության զարգացման օրինաչափությունները տարածվում են բոլոր երկրների ու ռեգիոնների վրա։ Այդ հայտնագործությունների հիմքում ընկած է ողջ մարդկության, երկրագնդի բոլոր ժողովուրդների անցյալի ու ներկայի ուսումնասիրումը։*

*Այսպիսով, չի կարելի Մարքսի ուսմունքի համապարփակությունը սահմանափակել ժամանակի ինչ-որ որոշակի շրջանակներով, այն կապել բացառապես XIX դարի հետ։ Իհարկե, անհեթեթություն կլիներ ժխտել անցած հարյուր տարվա ընթացքում աշխարհում տեղի ունեցած վիթխարի փոփոխությունները։ Դրանից բացի, արագանում է այդ փոփոխությունների թափը։ Պակաս անհեթեթություն չէր լինի Մարքսին ու Էնգելսին վերագրել այդ փոփոխությունների կանխագուշակումը՝ դրանց բոլոր մանրամասներով հանդերձ։ Սակայն, Մարքսի երկու մեծագույն հայտնագործությունները ոչ միայն չեն հերքվել այդ փոփոխություններով, այլ, ընդհակառակը, դրանցում իրենց հաստատումն են գտնում։ Կարևոր է մշտապես հաշվի առնել նախ այն, որ բուն մարքսիզմը ևս անընդհատ զարգանում է ազատագրական պայքարի պրակտիկայի ազդեցությամբ, գիտական հայտնագործությունների, հասարակական կյանքում նոր երևույթների վերլուծության հիման վրա։ Թերևս կարելի է ասել, որ մշտական զարգացումը մարքսիզմի գոյության յուրատեսակ ձևն է։*

*Մարքսի հանճարով ստեղծված տեսությունն ապրում է. նոր պատմական պայմաններում զարգացվելով Լենինի, մյուս մարքսիստների կողմից, այն գործում է նաև արդի բարդ պայմաններում, նրանում պարունակվում է հսկայական ներքին տեսական ու մեթոդաբանական պոտենցիալ, որը հնարավորություն է ընձեռում այն հաջողությամբ կիրառելու ժամանակակից հասարակական զարգացումն ուսումնասիրելու գործում։*

---



# ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԴՊՐՈՑԸ

**Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ**
**Վ. Յ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստիտուտի մանկավարժության ամբիոնի դոցենտ, մանկավարժական գիտությունների թեկնածու**

ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՄԱՆ է դրված հանրակրթական և պրոֆեսիոնալ դըպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների նախագիծը։ Այդ ռեֆորմը պետք է նպաստի դպրոցի աշխատանքների մակարդակի այնպիսի բարձրացմանը, որը պահանջվում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման համար։

Նախագծով որոշված հիմնական ուղղությունները առավել հստակ պատկերացնելու համար անհրաժեշտ է խորությամբ բացահայտել դպրոցի գործունեության մեջ առկա մի շարք բացասական երևույթներն ու թերությունները։

Միջնակարգ ընդհանուր պարտադիր կրթության անցնելու ընթացքում բացահայտվեցին մանկավարժության ասպարեզի մի շարք թերություններ։ Կրթության բովանդակությունը սահմանելիս, ուսուցման միջոցներն ու մեթոդները մշակելիս հիմնականում նկատի էին առնվում սովորել ցանկացողներին և առաջնորդվում էին բուհերում սովորողներ նախապատրաստելու պահանջներով։ Նշված բովանդակությունը, միջոցներն ու մեթոդները ի վիճակի չեղան ապահովելու ուսուցման անհրաժեշտ արդյունավետությունը, երբ դպրոցն սկսեց սովորեցնել բոլորին և սովորեցնել կյանք մտնելու համար։ Չհաջողվեց արմատական փոփոխություն կատարել աշակերտության այն մասի հոգեբանության մեջ, որը նախկինում թողնում էր դպրոցը, իսկ այժմ հարկադրված է նստել դասերին և ավարտել միջնակարգ կրթությունը։ Նման աշակերտները ոչ միշտ են սովորում ինչպես հարկն է, սակայն դասարանից դասարան փոխադրվում և ավարտում են դպրոցը։ Այս հանգամանքը բացասաբար անդրադարձավ այն դպրոցականների վրա, որոնք սովորում էին հիմնականում դպրոցն ավարտելու համար։ Վերջիններս զգացին ու հասկացան, որ նոր պայմաններում երկտարեցի չի լինում, որ համարյա բոլորն էլ ավարտում են դպրոցը։ Այդ թուլացրեց նրանց ջանքերը, որոնք նախկինում անհրաժեշտ էին բավարար գնահատականներ ստանալու համար։ Եվ ահա ստեղծվել է այնպիսի վիճակ, որ հիմնականում լավ են սովորում բուհ գնալու մտադրություն ունեցողները։ Նրանք ևս մեծ մասամբ ուշադրություն են դարձնում համապատասխան առարկաներին միայն։ Հասկանալի է, որ նման պայմաններում զգալիորեն նվազում է առաջադիմությունը։

Այսպիսով, մենք կանգնել ենք մի այնպիսի փաստի առջև, որը կարելի է բնութագրել երկու նախադասությամբ։ Դպրոցականների շրջանում բավականին տարածված է անտարբերությունը ուսման նկատմամբ։ Առաջադիմության ներկա մակարդակը չի բավարարում երկրի հարաճուն պահանջները։

Կենտրոնական մամուլը վերջերս անհանգստությամբ է գրում ստեղծված իրավիճակի մասին։ Խոսվում է հարցասեր աշակերտների սակավության և ուսման նկատմամբ անտարբեր ու բացասական վերաբերմունքի, ինչպես

և սովորողների մի մասի անբավարար առաջադիմության մասին: ՀՍՍՀ լուսավորության մինիստրության կազմակերպած ստուգումները հաճախ բացահայտում են աննախանձելի վիճակ այս ասպարեզում: Ուսման նկատմամբ աշակերտության մի մասի անտարբերությանն են անդրադառնում մանկավարժական խորհրդակցություններում: Նման պայմաններում է ձևավորվում մտքի ծուլությունը, որը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում Յու. Վ. Անդրոպովը որակեց որպես մեր գլխավոր արգելակներից մեկը զարգացած սոցիալիզմի կատարելագործման ճանապարհին: Պլենումում լրջորեն խոսվեց նաև այն մասին, որ աշխատանքի նկատմամբ ազնիվ, գիտակցական վերաբերմունքը՝ մեր ապրելակերպի առաջնային հիմքը, դեռևս ոչ բոլորին է բնորոշ, որ դպրոցականների հոգում պետք է պատվաստել օգտակար աշխատանք կատարելու սովորույթ և սեր: Անգործության մատնըվելով դասերին՝ աշակերտն աստիճանաբար վարժվում է ոչինչ չանելուն և այդպես էլ կյանք է մտնում:

Մեր երկարամյա ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշակերտի անտարբերության պատճառներից մեկը պետք է որոնել կրթության բովանդակության մեջ, այն ունի էական թերություններ, որոնց մասին լրջորեն խոսվեց դպրոցին վերաբերող ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թ. դեկտեմբերի 22-ի հայտնի որոշման մեջ: Կուսակցության XXVI համագումարում ևս նշվեց այդ մասին— ծրագրերի և դասագրքերի ծանրաբեռնվածության և ընդհանրապես կրթության բովանդակության չարդարացված բարդացման մասին: Համագումարը մանկավարժական գիտությունների ակադեմիայից պահանջեց վերացնել նշված թերությունները:

Որո՞նք են այդ թերությունների պատճառները: Ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության իրագործման ժամանակ կրթության բովանդակությունը (որ տարիներ առաջ դըպրոց էր մտել բուհում սովորողներ ձևավորելու նպատակով) ավելի բարդացվեց ու պարտադիր համարվեց բոլոր դպրոցականների համար՝ անկախ նրանց հետանկարային մտադրություններից: Մինչդեռ պարտադիր պետք է լիներ միայն ընդհանուր կրթությունը, որն ապահովում է անձնավորության ներդաշնակ զարգացումը, որպես մարդու հասարակական ու պրոֆեսիոնալ գործունեության հիմք: Միջնակարգ ընդհանուր կրթության իրականացման անցնելը կատարվեց առանց այդ կրթության կուռ և ամբողջական տեսություն ստեղծելու: Իսկ դրա հետևանքով դպրոցական ուսումնական առարկաները հագեցվեցին նյութերով, որոնք անհրաժեշտ էին բարձրագույն դպրոցի այս կամ այն ֆակուլտետում սովորելու համար: Այստեղ նվազ դեր չի խաղում և բուհական ընդունելության քննությունների օրավուր աճող պահանջները հաշվի առնելը: Օրինակ, հայոց լեզվի դասավանդման բնագավառում այս երևույթը դրսևորվում է նրանով, որ տեսական գիտելիքները գերիշխող են դարձել լեզվական հմտությունների ու կարողությունների նկատմամբ, աշակերտները հաճախ սերտում են կանոններ, սահմանումներ, իսկ բառապաշարը, ընդ որում և խոսակցականը, չի հարստանում, յուրացվածը չի կիրառվում: Միայն IV դասարանում ուսուցանվում են քերականական 154 կանոններ, որոնց մի զգալի մասը խոսքի զարգացման համար արժեք չունի: Նման վիճակում են բոլոր ուսումնական առարկաները: Օրինակ, անձրևաորդի ներքին կառուցվածքն ուսումնասիրելիս աշակերտը պետք է իմանա 20 նոր տերմին, իսկ հասարակագիտության միայն մի բաժնում թվարկվում է 80 օրենք:

ՍՄԿԿ Կենտկոմի տեսական-քաղաքական «Կոմունիստ» ամսագրի 1980 թվականի 14-րդ համարում արծարծվեց այն հարցը, որ դըպրոցական մաթեմատիկայի բովանդակությունը չի համապատասխանում ընդհանուր կրթության պահանջներին, որ այն անհրաժեշտ է միայն տեսաբան մաթեմատիկոսներին: Բուհական նպատակամետությունը դպրոցին պարտադրում է հաճախ հենց լուսավորության մինիստրությունը: Օրինակ, 1980 թվականին ՍՍՀՄ լուսավորության մինիստրությունն ու մանկավարժական գիտությունների ակադեմիայի՝ կրթության բովանդակության և ուսուցման մեթոդների գիտահետազոտական ինստիտուտը հատուկ պահանջ ներկայացրին դպրոցներին՝ աշակերտներին մաթեմատիկական ֆակուլտետների ընդունելության քննություններին նախապատրաստելու մասին:

Հարց է ծագում, չէ՞ որ ոչ բոլոր աշակերտներն են այդպիսի բուհ և ընդհանրապես բուհ գնալու: Չէ՞ որ կարող են այդպես վարվել և քիմիայի, ֆիզիկայի, կենսաբանության ու այլ առարկաների ուսուցիչները: Իսկ տվյալ դեպքում ինչպե՞ս վարվի բարեխիղճ աշակերտը: Չէ՞ որ նա չի կարող նման մակարդակով սովորել բոլոր առարկաները:

Դպրոցական ուսուցման բուհական նպատակամետությունը մեծ վնաս է հասցնում երիտասարդությանը նրանով, որ կյանքում հիմնականը բուհական կրթություն ստանալը համարելով, դպրոցը նրանց հոգեբանորեն ու գործնականորեն չի նախապատրաստում աշ-



խատանքային գործունեության, մի հանգամանք, որն ի վերջո վնասում է երկրի ժողովըրդական տնտեսությանը:

Այս ամենը վկայում է, որ միջնակարգ պարտադիր կրթության անցնելուց հետո աշակերտության շրջանում ուսման նկատմամբ զգացվող անտարբերության կամ բացասական վերաբերմունքի, անբավարար առաջադիմության պատճառներից մեկը, թերևս կարևորը, կըրթության բովանդակությունն է: Այն ամենը, ինչ մինչև 1972 թվականը յուրացնում էին բուհում սովորելու պատրաստվող 9—10-րդ դասարանցիները, այժմ պարտադիր է բոլորի համար: Այն բոլոր ուսումնական առարկաները, որ հասկանալի պատճառներով բուհական ուղղվածություն ունեին, ամբողջությամբ ներառվեցին ընդհանուր պարտադիր կրթության բովանդակության մեջ՝ ո՛չ միայն չազատվելով իրենց նախկին նպատակամետությունից, այլև առավել ուժգնացնելով այն: Եվ ահա աշակերտության այն մասը, որ մտադիր է դպրոցն ավարտելուց հետո ընդգրկվել աշխատանքային գործունեության տարբեր բնագավառները, բնականորեն իմաստ չի տեսնում նման բովանդակությամբ դասանյութերը և առարկաները ուսումնասիրելու մեջ:

Ուրեմն, անհրաժեշտ է փոխել կրթության բովանդակությունը, ազատել դա այն բոլոր ուսումնական նյութերից, որոնք ծառայում են միայն կրթության շարունակությանը այս կամ այն բուհի կոնկրետ ֆակուլտետում: Այսպես պետք է հասկանալ ռեֆորմի հետևյալ պահանջը՝ ճշտել ուսումնասիրվող առարկաների նյութի ցանկն ու ծավալը, վերացնել ուսումնական ծրագրերի և դասագրքերի գերծանրաբեռնվածությունը, դրանք ազատելով չափից ավելի բարդեցված նյութից: Հանրակրթական դպրոցի կրթության բովանդակությունը պետք է ծառայի սովորողների մտավոր, բարոյական, էսթետիկական, ֆիզիկական և այլ զարգացմանը: Այն չպետք է ծառայի դիմորդներ ձևավորելուն, այլ՝ դպրոցականներին հոգեբանորեն ու գործնականորեն նախապատրաստի ընդհանուր աշխատանքային գործունեության: Բնականաբար հարց է ծագում. իսկ ո՞վ պետք է ձևավորի դիմորդներ:

Մեր կարծիքով, այստեղ կարող է լինել երկու ուղի: Առաջինը հետևյալն է. ռեֆորմը նախատեսում է, որ դպրոցը պետք է ապահովի բուհում ուսումը շարունակելու համար անհրաժեշտ գիտելիքների բարձր մակարդակը: Կարծում ենք, որ դա հնարավոր է ապահովել ֆիզիկամաթեմատիկական, քիմիակենսաբանական և հասարակագիտական ցիկլերի առանձին առարկաների ուսումնասիրությունը ֆակուլտատիվ հիմունքներով կազմակերպելու միջոցով: Այն բոլոր նյութերը, որ հանրակըրթական արժեք չունեն, պետք է հանվեն հանրակրթական ուսումնական պարտադիր առարկաների բովանդակությունից: Ովքեր մըտադիր են անմիջապես շարունակել կրթությունը բուհում, կարող են ընդգրկվել համապատասխան ֆակուլտատիվը: Մնացածները կուսումնասիրեն հանրակրթական առարկաները: Իսկ եթե հետագայում կցանկանան բուհ ընդունվել, պետք է լրացուցիչ գիտելիքներ ձեռք բերեն, ասենք, նախապատրաստական դասընթացներ հաճախելով, որոնք կազմակերպում են բուհերը կամ «Գիտելիք» ընկերությունը: Մոտավորապես այսպիսի ուղի է նախատեսվում ռեֆորմով:

Երկրորդ ուղին, մեր կարծիքով, առավել արդյունավետ է և կիրառելի գյուղական դըպրոցներում անգամ, որտեղ միշտ չէ, որ աշակերտների փոքրաթիվության պատճառով հնարավոր է լինում ապահովել համապատասխան ֆակուլտատիվներ: Մամուլում վաղուց է խոսվում այն մասին, որ գիտնականների մի մասը դպրոցից պահանջում է ապահովել աշակերտների բազմակողմանի զարգացումը, իսկ ֆիզիկան, մաթեմատիկան և քիմիան արդեն իրենք կսովորեցնեն, երբ սովորողը բուհ կընդունվի: Բուհի ընդունելության քննության ժամանակ ստուգվում է աշակերտի զարգացածության, ինչպես և դըպրոցական ծրագրերով նախատեսված գիտելիքների, հմտությունների ու կարողությունների տիրապետման մակարդակը: Իհարկե, այս դեպքում անհրաժեշտ կլինի մշակել զարգացման մակարդակը որոշելու նոր չափանիշներ:

Միջնակարգ դպրոցում VIII—X դասարաններում մաթեմատիկային հատկացվում է համապատասխանաբար շաբաթական 6, 5, 5 և ֆիզիկային 3, 4, 5 ժամ: Ուրեմն, հնարավոր է կրճատել այդ ժամերը՝ մի մասը հատկացնելով գրականությանը և լեզուներին, որոնց հատկացված ժամերը շատ են նվազել նշված առարկաների պատճառով: Երբ երիտասարդը բուհ ընդունվի, միանգամայն հնարավոր է և առավել նպատակահարմար, առաջին կուրսում երեք ամիս շաբաթական 12 ժամ հատկացնել այդ առարկայի դասավանդմանը՝ մասնագիտական կրթություն ստանալու հիմքը դնելու համար: Վաղուց է խոսվում այն մասին, որ առավել նպատակահարմար է ուսումնական առարկան դասավանդել ամեն օր և ավարտել երկուսից չորս ամսում, քան երեք օրը մեկ և ավարտել տարվա վերջում: Չպետք է մոռանալ նաև այն, որ, միևնույնն է, բուհի առաջին կուրսում ստիպված են լինում կրկնել

դպրոցական համապատասխան ծրագրերի շատ բաժիններ:

Խոսելով դպրոցի նպատակների մասին՝ Ն. Կ. Կրուպսկայան շեշտում էր այն միտքը, որ սովետական իշխանությունը դպրոցին առաջադրում է յուրաքանչյուր երեխայի անձնավորության զարգացման, մտահորիզոնի ընդլայնման, ընդունակությունների և ստեղծագործական պոտենցիալի ձևավորման նպատակներ (տե՛ս Ն. Կ. Կրուպսկայա, **Մանկավարժական ընտիր երկեր**, Ե., «Լույս» հրատ., 1982, էջ 90): Սակայն մասնագիտական գիտելիքները դուրս են մղել դպրոցական կրթության բովանդակության մեջ այդ զարգացումն ու ձևավորումն ապահովող շատ տարրեր: Օրինակ, մաթեմատիկայի ծրագրերում և դասագրքերում չկան հակադիր և հակասող դատողությունները գտնելու, մեկ դատողության ճշմարտացիությունը մի այլ դատողությամբ հավաստելու, ընդհանուր և մասնակի դատողությունների հարաբերությունները պարզելու և այլ ունակություններ: Նշված թերությունները ցույց են տալիս, որ մաթեմատիկա ուսումնական առարկայի նման ավանդումը անհրաժեշտ մակարդակով չի զարգացնում սովորողների տրամաբանական մտածողությունը:

Հայոց լեզու ուսումնական առարկան անբավարար է ապահովում սովորողների խոսքի զարգացումը, քանի որ մինչև հիմա էլ չեն առանձնացվել զարգացած խոսքի այն հիմնական չափանիշները, որոնցով պետք է առաջնորդվեն ուսուցիչները:

Դպրոցական դասագրքերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ նույնիսկ այն դեպքում, երբ տրամաբանական այս կամ այն գործողությունն օրգանապես ներառվում է տվյալ դասանյութի մեջ, դասագիրքը պայմաններ չի ստեղծում, որպեսզի աշակերտը խորացնի այդ գործողությունը: Օրինակ, հայոց լեզվի դասագրքերում բազմիցս խոսվում է դասակարգման մասին: Խմբավորվում են նախադասության անդամները, խոսքի մասերը և այլն: Սակայն խմբավորում (դասակարգում) տրամաբանական գործողությունն ուսուցման օբյեկտ չի դառնում, սովորողները չեն տիրապետում դրան: Կամ՝ բուսաբանության դասագրքում 10-րդ գլուխը կրում է «Ծաղկաբույսերը և նրանց դասակարգումը» վերնագիրը: Ուրեմն, աշակերտը ծաղկաբույսերի մասին գիտելիքներ ձեռք բերելով հանդերձ պետք է տիրապետի և դասակարգում գործողությանը: Վերջինս նույնպես կարևոր է: Սակայն դասագրքի 38 էջերը, որտեղ խոսվում է ծաղկաբույսերի մասին, ոչ մի խոսք դասակարգման վերաբերյալ: Իսկ թեմայի վերջում 99 հարցերից ոչ մեկն ուղղված չէ այդ գործողությանը: Աշակերտը յուրացնում է այդ թեման, սակայն այդպես էլ անտեղյակ է մնում դասակարգում գործողությանը: Նույնն է կատարվում և բոլոր ուսումնական առարկաների դասագրքերում: Այսպիսին է վիճակը նաև համեմատում, հակադրում, հիմնավորում, ապացուցում, սահմանում, համադրում, վերլուծում և այլ մտավոր գործողությունների յուրացման խնդրում: Իսկ այդ նշանակում է, որ չի ապահովվում դպրոցականի մտավոր զարգացումը անհրաժեշտ մակարդակով:

Դա չի արվում նաև մի այլ պատճառով: Կրթության բովանդակության մեջ դեռևս կան չճշտված, իրար հակասող հատվածներ, որոնք վնասում են ուսման գործին: Օրինակ VI դասարանի հայոց լեզվի դասագրքում գրված է. «Չեզոք սեռի բայերը ցույց են տալիս այնպիսի գործողություն, որով ենթական ոչ ներգործում է մեկ ուրիշի վրա, ոչ էլ ուրիշից է կրում իր վրա»: Դրանից հետո բերվում է այսպիսի օրինակ. «Թշնամին հարձակվեց մեզ վրա»: Ստացվում է, որ թշնամին հարձակման ժամանակ չի ներգործում որևէ մեկի վրա: Անհավատալի է, սակայն փաստ է: Սովորողների վրա բացասաբար է ազդում նաև այն, որ դասագրքերի առաջադրանքները հաճախ պահանջում են սոսկ մտապահում, սովորական վերարտադրություն:

Կրթության նման բովանդակությունը, ինչպես արդեն ասվեց, ո՛չ միայն չի նպաստում աշակերտի զարգացմանը, այլև զրկում է նրան ստեղծագործական կարողություններից, մտքի բազմաթիվ որակներից (տրամաբանականություն, քննադատողականություն, հիմնավորվածություն): Նման հատվածներ սովորելը տանջանք է մտածող, դատող երեխաների համար, քանի որ նրանք ստիպված են լինում աշխատել միայն մեխանիկական հիշողությամբ:

Այսպիսով, ոչ միշտ է իրականությանը համապատասխանում այն պնդումը, թե միջնակարգ դպրոցը հանրակրթական է, այսինքն՝ նրա կրթության բովանդակությունն անհրաժեշտ է բոլոր դպրոցականներին և ապահովում է նրանց ընդհանուր զարգացումը: Իրականում այդ բովանդակության մի մասն անհրաժեշտ է միայն որոշակի բուհերում սովորողներին և ոչ միշտ է նպաստում սովորողների զարգացմանը: Նման պատկերն արդարացնում է այն աշակերտների վարքը, որոնք, օրինակ, ինչպես հարկն է չեն սովորում մաթեմատիկան, քիմիան և այլն, ասելով, որ իրենք մաթեմատիկայի, քիմիայի և այլ ֆակուլտետ գնալու մտադրություն չունեն:

Ուրեմն, անհրաժեշտ են արմատական փոփոխություններ միջնակարգ կրթության բովանդակության մեջ՝ ազատելով այն բուհական նպատակայնությունից և հագեցնելով այնպիսի բաղադրամասերով, որոնք կարող են ապահովել դպրոցականների մտավոր, բարոյական, էսթետիկական, ֆիզիկական և այլ զարգացումը: Դա պետք է արվի ծրագրերի և դասագրքերի վերակառուցման միջոցով:

Աշակերտների աշխատասիրությունը և ուսման առաջադիմության բարձր մակարդակը ձևավորելու համար մանկավարժական գիտությունները պետք է լուծեն մի լուրջ և դժվարին խնդիր ևս: Եթե մանկավարժական գիտություններն արմատական փոփոխություններ կատարեն կրթության բովանդակության մեջ, այն դարձնելով հանրակրթական, բայց անփոփոխ թողնեն ուսուցման տեսության հիմնական բաժինների բովանդակությունն ու զարգացման ուղղվածությունը, ապա դպրոցում ցանկալի փոփոխություն քիչ կկատարվի: Փոփոխություններ են անհրաժեշտ նաև այդ բնագավառում: Հատկապես աննախանձելի վիճակում է դասի տեսությունը: Ռեֆորմում իրավամբ դասը համարվում է ուսումնական պրոցեսի հիմնական ձևը և պահանջվում է կատարելագործել այն: Այս պահանջը ժամանակին է և արդարացի: Բանն այն է, որ աննախանձելի վիճակում են դասի տեսության մի շարք կարևորագույն, հատկապես դասի նպատակին առնչվող հարցերը: Մինչդեռ նպատակը գործունեության անհրաժեշտ բաղադրամասն է, այսինքն՝ վերջնական արգասիքը: Սակայն մանկավարժական գիտության մեջ և դպրոցական պրակտիկայում հաճախ է անտեսվում այս հանգամանքը: Ասվածը հիմնավորենք միայն մի փաստով: Դասի ժամանակ գործում են ուսուցիչն ու աշակերտը: Առաջինն իրականացնում է ուսուցողական գործունեություն, իսկ երկրորդը՝ ուսումնառական, իմացական: Ուսուցիչն իր նպատակին կարող է հասնել միայն աշակերտի գործունեության միջոցով: Այսինքն, եթե ուսուցչի նպատակն է, օրինակ, տվյալ դասին խթանել աշակերտի քննադատական միտքը, ապա նա պետք է կարողանա աշակերտին ընդգրկել այնպիսի գործունեության ոլորտը, որտեղ աշակերտը կասկածի, տարակուսի, նկատի հակասություններ և որոշակի քննադատական վերաբերմունք ցուցաբերի:

Սակայն մանկավարժական գրականության մեջ և պրակտիկայում անտեսված է դասին մասնակցող աշակերտի նպատակը: Ուսուցիչը սովորողի նպատակի մասին հաճախ չի մտածում՝ դատելով այսպես. նա պարտավոր է սովորել: Նման պայմաններում անհնար է ձևավորել լիարժեք, խելացի անձնավորություն:

Մանկավարժական գիտությունը պետք է լուծի դասի նպատակի պրոբլեմը: Այն պետք է մշակի ուսուցչի և աշակերտի նպատակների ու դրանց հարաբերակցության տեսություն, որի օգնությամբ հնարավոր կլինի աշակերտին դարձնել ուսումնական գործունեության սուբյեկտ: Այդ դեպքում միայն վերջինս կդառնա ակտիվ ու նպատակասլաց գործող անձնավորություն և ոչ թե պատրաստի գիտելիքներ ստացող: Անհրաժեշտ է մղել նրան իմացական գործունեության:

Ուսուցիչն սկսում է ուսուցման պրոցեսի կազմակերպումը՝ նախօրոք ունենալով իր նպատակը, իսկ աշակերտի նպատակը պետք է ձևավորվի ուսուցչի մեթոդի միջոցով: Առայժմ մանկավարժական գիտությունն ընդունում է միայն ուսուցչի և աշակերտի գործունեության փաստը: Անհրաժեշտ է կատարել հետևյալ քայլը. ընդունել նաև, որ դասին պետք է լինի երկու նպատակ: Միայն այդ քայլից հետո կսկսվի դասին մասնակցող աշակերտի իմացական նպատակը ձևավորող մեթոդների մշակումը և այդ դեպքում սովորողները դասին կմասնակցեն սեփական իմացական նպատակներով: Իհարկե, դրանք սեփական են հարաբերական առումով: Սովորողին թվում է, թե այդ նպատակն ինքն է ընտրել, որ ինքն ազատ ընտրություն է կատարել: Իրականում ուսուցիչն այնպիսի իրադրություն է ստեղծում դասապրոցեսում, որ աշակերտի գիտակցության մեջ ձևավորվում է մանկավարժական անհրաժեշտ նպատակը:

Այսպիսով, դպրոցում անհրաժեշտ փոփոխություն կատարելու համար կրթության բովանդակության հանրակրթական բնույթի ապահովումը պետք է զուգորդվի նպատակաձևավորող ուսուցման տեսության և պրակտիկայի զարգացման հետ:

Այս և նման այլ խնդիրների լուծման անհրաժեշտությունն արտացոլվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, ինչպես և «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում:

# ԸՆՏԱՆԵԿԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԸ ԵՎ ՄԱՏԱՂ ՍԵՐՆԴԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 թվականի հունիսյան պլենումը համակողմանիորեն քննարկեց կուսակցության գաղափարախոսական աշխատանքի հրատապ հարցերը: Քննարկման գլխավոր խնդիրը նոր մարդու դաստիարակության հարցն է, որը դիտարկվում է բազմակողմանիորեն, անհատի կազմավորմանը նպաստող կամ խանգարող բոլոր գործոնների հաշվառմամբ: Հատկապես շեշտվեց, որ արդի հասարակական զարգացման բարդ իրադրություններում անհնար է բավարարվել սոսկ գիտության այս կամ այն բնագավառին վերաբերող գիտելիքներով: Մարդը մեզ մոտ պետք է դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ ամենից առաջ որպես նոր հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող՝ իրեն բնորոշ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու շահերով, աշխատանքի և վարվելակերպի պատշաճ կուլտուրայով: Հանգամանորեն արծարծվեց հանրօգուտ աշխատանքի նկատմամբ սերը նոր սերնդի մտահորիզոնի ընդլայնման հետ զուգակցելու, նրանց սոցիալիստական հասարակության քաղաքացու վեհ հատկություններով օժտելու հարցը:

Այդ ամենը կյանքի է կոչվում, նախ և առաջ, ընտանիքում, որը ժառանգորդն է հեղափոխական և աշխատավորական ընտանիքներում ստեղծված ողջ լավագույնի: Մարդու կերպավորումն սկսվում է նրա կյանքի առաջին տարիներից, հասարակության նախնական բջիջում՝ ընտանիքում: Այստեղ առաջին անգամ ձևավորվում են երեխայի համոզմունքները, դաստիարակվում է բնավորությունը: Ընտանիքն սկսվում է երեխաներից, որոնց դաստիարակությունը ոչ թե ծնողների անձնական գործն է, այլ նրանց քաղաքացիական առաջնահերթ պարտքը: Երեխան արդեն իր լույս աշխարհ գալով նոր պարտականություններ է դնում ծնողների վրա և անձնական կյանքից նրանց դուրս բերում հասարակական գործունեության լայն ասպարեզ: Մանկավարժական աշխատանքը կարելի է ճիշտ կազմակերպել, ճիշտ վերաբերմունք մշակել երեխաների նկատմամբ՝ միայն լավ իմանալով նրանց անհատական առանձնահատկությունները: Դրան կարելի է հասնել ո՛չ միայն դպրոցում երեխային լավ ուսումնասիրելով, այլև ինչպես հարկն է իմանալով ընտանեկան դաստիարակության ձևերը:

Դեռևս Միքայել Նալբանդյանը առաջնային էր համարում ընտանեկան մանկավարժությունը: «Տարակույս չկա,— գրել է նա,— որ դպրոցների և համալսարանների մեջ ավանդված գիտությունը և ուսմունքը շատ մեծ խորհուրդ ունի մի աշակերտի կամ մի ուսանողի համար, բայց դրանից եթե մեծ չլինի, գոնե փոքր չէ մի երեխայի սկզբնական, ընտանեկան դաստիարակությունը յուր ծնողի ձեռքով... Ստորին, կամ ծնողական դաստիարակությունը ստանում է երեխան գլխավորապես յուր մոր ձեռքով, ուրեմն, նախ և առաջ հարկավոր է մեծ ուշադրություն դարձնել աղջիկ զավակների կրթության և դաստիարակության վրա, բանագետ և առաքինի մայրեր պատրաստելու համար: Առանց այս հոգատարության սուտ է ամենայն կատարյալ և ընդհանուր լուսավորությունը մի ազգի» (Հիշատակարան, էջ 159):

Երեխաների հասարակական դաստիարակության հարցերին ժամանակին անդրադարձել են Ստեփան Շահումյանը, Սուրեն Սպանդարյանը, Ալեքսանդր Մյասնիկյանը, գտնելով, որ այդ գործում մեծ է ծնողների հեղինակության դերը, որի հիմքը կարող են հանդիսանալ հոր և մոր աշխատանքը, հանրօգուտ գործունեությունը, նրանց քաղաքացիական դեմքն ու վարքը, սեփական երեխաների առանձնահատկությունները գիտենալը: Արծարծելով ընտանեկան կարգապահության հարցը՝ նրանք նշում էին, որ ոչ թե խրատներով, այլ դաստիարակության ողջ համակարգով, ներգործության բոլոր ձևերով պետք է կարողանալ ազդել երեխաների վրա ընտանիքում և դպրոցում:

Ստեփան Շահումյանը գտնում էր, որ ընտանիքում են դրվում անհատի բնավորության հիմքերը, այն շաղախվում է հասարակական դաստիարակության օջախներում, կոփվում և ամրանում է ամբողջ կյանքում: Ընտանիքն առաջին հերթին պատասխանատու է երեխայի բարոյական կերպարի, նրա վարքագծի համար:

Սովետական կրթական համակարգում մշակվեց երեխաների ընտանեկան դաստիարակության նոր տեսություն, որը ներառնում է դաստիարակությանը վերաբերող մարդկային մտքի առաջադիմական հասումները: Այդ տեսությունը խարսխված է առաջավոր ընտանիքներում կուտակված փորձի, տասնյակ տարիներում ստեղծված ընտանեկան, հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթների ու սովորույթների վրա, որոնց ակունքը ժողովրդական մանկավարժությունն է:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1983 թվականի հունիսյան պլենումը խնդիր դրեց մատաղ սերնդի շրջանում արմատավորել ժողովրդի դարավոր լավագույն ավանդույթները, որոնցում խտացված ու ամփոփված են ազգային կենցաղի ու մշակույթի հիմնական կողմերն ու առանձնահատկությունները: Եվ այդ պետք է անել այնպես, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը՝ «ոչ թե արխիվային թղթի նման պահպանել դրանք, այլ հարստացնել նոր ձևերով ու բովանդակությամբ, ազատվելով ամեն տեսակի հնություններից»:

Ժողովրդի առաջադիմական ավանդույթներն իրավամբ դասվում են նրա հոգևոր հարստությունների շարքին և կարևոր դեր են խաղում մշակույթի ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտների վերարտադրության, սերունդների հաջորդականության, հասարակության ու անհատի ներդաշնակ զարգացման գործում: Ավանդույթները կայունորեն հաստատված, նախորդ սերունդներից ժառանգված և հասարակական կարծիքի ուժով պահպանվող գաղափարաքաղաքական սկզբունքներն են, մարդկանց վարվելակերպի և նրանց փոխհարաբերությունների ձևերը: Ավանդույթների համակարգի միջոցով նոր սերունդները ժառանգում են հասարակության կողմից մշակված հարաբերություններն ու սոցիալական փորձը: Դրանք գոյություն ունեն հասարակական կյանքի բոլոր ոլորտներում (աշխատանքային, սոցիալ-քաղաքական, ընտանեկան, կենցաղային, մշակութային): Ընտանեկան կոլեկտիվը համաժողովրդական ավանդույթների անմիջական կրողն ու զարգացնողն է: Ընդ որում, յուրաքանչյուր կոնկրետ ընտանիք նաև սեփական, միայն իրեն ներհատուկ սովորույթներն ունի: Ցանկացած ընտանեկան կոլեկտիվում կան իրադարձություններ, որոնք ավանդաբար նշվում են որպես ընտանեկան-կենցաղային տոներ— ծննդյան օրը, սովորողների ուսումնական տարվա սկիզբն ու ավարտը, երեխաների չափահաս դառնալը, անձնագիր ստանալը, պիոներիայի, կոմերիտմիության, կուսակցության շարքերն ընդունվելը, սովետական բանակ ճանապարհելը, աշխատանքային կյանք մտնելը, աշխատանքի վետերանի կենսաթոշակի անցնելը և այլն:

Դժվար է գերագնահատել հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթների դերն ընտանիքի կենսագործունեության մեջ: Սովետական ընտանիքն իր անդամներին կոմունիստական իդեալների ոգով դաստիարակելու մեծ հնարավորություններ ունի: Մեր ժողովրդի, նրա բանվոր դասակարգի ազատագրական պայքարի ողջ պատմությունը հերոսության, հեղափոխականների արիության ու անձնազոհության պատմություն է՝ հանուն կոմունիզմի իդեալների, հանուն մարդկանց երջանկության: Սովետական մարդիկ սրբազան երկյուղածությամբ հարգում և պահպանում են անցյալի հերոսական ավանդույթները, հիշում օտարերկրյա նվաճողների դեմ մղած պայքարում մեր ժողովրդի անօրինակ սխրանքները, անձնվիրությունն ու արիությունը: Մարտական ավանդույթները ո՛չ միայն անցյալի նվիրական մասունքներն են, այլև մեր ժողովրդի զորավոր զենքը՝ ընդդեմ նրանց, ովքեր կհանդգնեն ոտնձգություն կատարել մեր երկրի դեմ:

Հայրենասիրությունը, հայրենիքի նկատմամբ պարտքի խոր զգացումը, մեր հնագույն ազգային ավանդույթներից է: Այն ամրապնդվել է սերունդների գիտակցության մեջ, թափանցել ժողովրդի մսի և արյան մեջ, ներառնելով և՛ պայքարը հայրենիքի ազատության ու անկախության համար, և՛ հեղափոխական մաքառումները ընդդեմ շահագործողների, և՛ ազգային հպարտության զարգացումը՝ իր երկրի նվաճումների, հերոսների, գիտնականների, մշակույթի գործիչների համար, և՛ քաղաքացիական ողջ ջանքերի գործադրումը հանուն հայրենիքի: Մեր ժողովրդի համար անսահման թանկ է իր բախտը Ռուսաստանի հետ կապող դարակազմիկ տարեթիվը՝ 1828 թվականը, հանդիսավոր նշելու ավանդույթը: Սովետական հայրենասիրությունը որակական նոր փուլ է հայրենասիրության զարգացման գործում: Նրա մեջ ներդաշնակորեն միաձուլ-

վում են մեր երկրի ժողովուրդների սոցիալիստական ապրելակերպն ու հավատարմությունը կոմունիստական կուսակցությանը, սերն ու հարգանքը ազգային վեհ ու գեղեցիկ ավանդույթների նկատմամբ: Սովետական հայրենասիրությունը խարսխվում է անցյալի ավանդույթների վրա, բայց դրա պարզ ու մեխանիկական շարունակությունը չէ: Խոր արմատներով կապված լինելով ժողովրդի պատմական անցյալի հետ, այն կատարելագործվում, նոր որակ է ստանում: Հայրենասիրությունը ևս ծլարձակում է ընտանիքում, աշխատանքային գործունեության ընթացքում, հետո նորանոր դրսևորումներով փոխանցվում սերընդից սերունդ:

Դաստիարակչական անգնահատելի նշանակություն ունեն նաև ժողովրդի աշխատանքային ավանդույթները, ընկերական, անշահախնդիր փոխօգնության սովորույթը: Օրինակ, համագյուղացիներից մեկը որոշել է նոր տուն կառուցել, բայց միջոցները չեն բավականացնում: Օգնության կգա ողջ գյուղը՝ ով ինչով, ինչպես կարող է: Այս հիանալի սովորույթն օրգանապես մտել է սովետական ապրելակերպի մեջ, զարգանում, կատարելագործվում է: Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու մշակույթի բնագավառներում աշխատող հազարավոր թիկունքայիններ իրենց խնայողությունները նվիրաբերեցին հայրենիքի պաշտպանության ֆոնդին, կառուցեցին տանկային շարասյուններ: Սպիտակցի հյուսն Սերգո Ավետիսյանը որդեգրեց ռուս տղայի, որի ծնողները զոհվել էին պատերազմում: Տարիներ անց Ֆյոդոր Գուվինյովն ավարտեց Յուրի Գագարինի անվան օդաչուական ակադեմիան և երբեք չմոռացավ իրեն որդեգրած ծնողներին:

Ստեղծվել են նոր, ուշագրավ ու հետաքրքրական ավանդույթներ. այսպես՝ մայրաքաղաքի «Նաիրիտ», «Հայհաստոց», «Հայէլեկտրալույս» գիտաարտադրական միավորումներում, Կարմիրի, Ստեփանավանի, Վարդենիսի, Մեղրիի շրջաններում ստեղծվել են «Երջանկության տներ»: Այստեղ հանդիսավորությամբ գրանցում են նորածիններին, ամուսնական հանդեսներ են կազմակերպում: Այս ամենը ղեկավարում է նոր սովորույթների և ծիսակատարությունների ներդրման ու արմատավորման խորհուրդը: Ցավոք, դեռևս որոշ ընտանիքներում հարսանեկան տոնախմբությունները վերածվում են յուրօրինակ մրցավազքի, հանդիսավորությամբ ճչացող շքեղության ցուցադրման: Այդ բազմամարդ հանդեսներում ջրի պես հոսում է խմիչքը, մորթվում են անասուններ... Դա, հաճախ, քայքայում է ընտանեկան բյուջեն: Ահա ինչու նորաստեղծ խորհուրդներն իրենց ձեռքն են վերցրել ընտանեկան հանդեսների կազմակերպումը՝ մասնակիցների ուշադրությունը կենտրոնացնելով տոնախմբությունների զգացմունքային հագեցվածության, գեղեցկության, հոգեհարազատության, անկեղծ մթնոլորտի ստեղծման վրա:

Գուգարքում, Գորիսում, Նոյեմբերյանում, Հրազդանում, Ապարանում, Թալինում, Աշտարակում աշնանը ուրախ, բովանդակալից է անցնում բերքի տոնը: Հանդիսությունները սկսվում են հանրային տնտեսություններում, հասնում շրջկենտրոնի և քաղաքի հրապարակները, որտեղ մեծարվում են հանրային դաշտերի առաջավորները, մեխանիզատորները ու անասնապահները:

Հիանալի ավանդույթ է դարձել ամեն տարի վարդի տոնի և Տերյանական օրերի անցկացումը Սայաթ-Նովայի ծննդավայրում՝ Թբիլիսիում և Վահան Տերյանի հայրենի գյուղում: Դրանք նպաստում են երկու եղբայր ժողովուրդների ինտերնացիոնալ կապերի ամրապնդմանը:

Շամշադինի շրջանի Արծվաբերդ գյուղում տասնամյակներ շարունակ խոխոջում է Մեծ աղբյուրը: Այն կառուցել է համագյուղացի Սարգիս Սարյանը՝ բարի հիշատակ թողնելով սերունդներին: Սարգիս պապի թոռներն ու ծոռներն այժմ նոր աղբյուրներ են կառուցում: Աղանքարի ձորի ջրերը նրանք խողովակաշարով հասցրին ընկուզենիներով, չինարիներով ու եղևնիներով ծածկված այս գողտրիկ անկյունը:

Ընտանիքի հոգևոր կյանքում կարևոր տեղ են գրավում օրացուցային և հիշարժան տարեթվերը, հեղափոխական տոները: Մեր ողջ երկիրն ավանդաբար նշում է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության տարելիցը, Մայիսի 1-ը, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի օրը, Հաղթանակի օրը, Մարտի 8-ը, ՍՍՀՄ սահմանադրության օրը, մեր ժողովրդի համար հիշարժան մյուս օրերը: Չափահասների հետ միասին տոների նախապատրաստմանը մասնակցում են նաև անչափահասները. դրա հետ կապված ընդհանուր հոգսերն ու դրանց համատեղ հաղթահարումը միաձուլում է ընտանիքի անդամներին, հոգեհարազատացնում: Արդեն գեղեցիկ ավանդույթ է դարձել հեղափոխական տոները, մեր պետության կյանքի նշանակալից տարեթվերն աշխատանքային նվաճումներով նշելը: Նախապատրաստվելով դրանց՝ սովետական մարդիկ կանգնում են աշխատանքային հարվածային հերթափոխի, ստանձնում



արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու պարտավորություններ:

Մեր ապրելակերպին յուրահատուկ հրաշալի ավանդույթ է սոցիալիստական մրցությունը, որի արդյունավետ ձևեր են դարձել կոմունիստական շաբաթօրյակները, կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների կոչման համար ծավալված շարժումը: Ավագ սերնդի ներկայացուցիչների հեղափոխական, աշխատանքային գործունեությունն ու մարտական սխրանքները վառ օրինակ և գործունեության ուղեցույց են ընտանիքի երիտասարդ անդամների, աճող սերնդի համար՝ դառնալով նրանց և ավագ սերնդի կապի անքակտելիության երաշխիքը: Ինչպես ասաց ընկեր Յու. Վ. Անդրոպովը կուսակցության վետերանների հետ հանդիպման ժամանակ ունեցած ելույթում, «...Ժամանակը սրընթաց առաջ է գնում, և ահա արդեն այսօր վետերանների աստղաբույլին գումարվում են մեր և ձեր ժամանակակիցները, նրանք, ովքեր հերկել են խոպանը, կառուցել աշխարհի խոշորագույն հիդրոէլեկտրակայանները, գրոհել տիեզերքը... Այդպես է հյուսվում ժամանակների կապը»:

Մեր հանրապետության շատ ընտանիքներում արմատավորվել է «Տոհմի օրը» նշելու ավանդույթը: Հրազդանցի հովիվ Գևորգ Պետրոսյանի համար այդ օրը, օրինակ, հունվարի երկրորդ կեսն է, երբ գերդաստանի ապուպապը ավելի քան երկու դար առաջ իր զավակների հետ բնակություն հաստատեց նախկին Ախտայի շրջանում: Հովվի տանն են հավաքվում ընտանիքի անդամները՝ իրենց երեխաներով, զրուցում, ամեն մեկը պատմում է իր հաջողությունների մասին, խորհրդակցում են հուզող, անհանգստացնող հարցերի, երևույթների շուրջ, քննարկում ներընտանեկան կյանքի առաջնահերթ հարցերն ու հոգսերը: Դաստիարակչական առումով այդպիսի պահերն ավելի արժեքավոր ու ազդեցիկ են, քան ամենավարժ ու ճարտար լեզվով ասված հորդորը կամ բարոյական խրատը:

Փոքրուց մարդուն պետք է վարժեցնել բարձր պահել ազգանվան, տոհմի պատիվը: Երկաթուղայինների, հանքափորների, հողագործների, արհեստավորների, ուսուցիչների, բժիշկների գերդաստանների կրտսեր անդամները փոխարինում, համալրում են ավագներին: Օրինակ, Երևանում լավ են ճանաչում լամպագործ Պետրոսյանների գերդաստանին, Լենինականում՝ Մելիք-Ավետիսյանների, Աբաջյանների և Միքայելյանների բանվորական գերդաստաններին, Սպիտակում՝ հողագործ Դիլբարյանների, Օթարյանների և Անեմյանների գերդաստաններին, Ալավերդում՝ հանքափոր Սիրադեղյաններին և այլն: Նրանց ուստրերն ու դուստրերը՝ մեր միջնակարգ դպրոցների և բուհերի շրջանավարտները, արտադրության, հանրօգուտ հասարակական գործունեության մեջ բարեխիղճ աշխատանքի օրինակներ են ցույց տալիս:

Ընտանիքի գաղափարական արժույթների թվում հատուկ տեղ են գրավում ընտանեկան մասունքները՝ անձնական փաստաթղթերը, հիշողությունները, նամակները, պարգևները: Դրանցից յուրաքանչյուրը մտերիմ մարդկանց սխրանքների, կյանքի և գործերի փայլուն վկայությունն է, ապա՝ հիշատակն այն մարդկանց, ովքեր մարտնչել են քաղաքացիական կռիվների ու մեծ Հայրենականի ռազմաճակատներում, աշխատել հնգամյակի կառույցներում: Շատ ընտանիքներում պահվում են ճակատայինների նամակները, պարգևները. այդ ամենը չեն կորցրել մարդու հոգու վրա ներգործելու իրենց ուժը:

Դաստիարակությունն անընդհատ պրոցես է: Հետևապես հանգստի ժամերը, շաբաթ և կիրակի օրերը, արձակուրդները միասին հետաքրքիր անցկացնելու դեպքում փոքրերը շատ բան կարող են սովորել ծնողներից, մոտիկից ճանաչել կյանքը, մեծահասակներին: Խելամիտ հանգստի ու ապրելակերպի ճիշտ կազմակերպումը անչափահասներին հաղորդում է առողջություն, ուժ ու լիցք, հարստացնում նրանց գեղագիտական և իմացական աշխարհը:

Մեր ժողովուրդը հարգում և պաշտպանում է ժողովրդական հիանալի ավանդույթներն ու սովորույթները: Սակայն, ցավոք, կան իրենց դարն ապրած հետամնաց սովորույթներ ու կենցաղային ծեսեր, որոնք ոչ մի ընդհանուր բան չունեն մեր ներկա ապրելակերպի հետ, որոնցից պետք է ընդմիշտ հրաժարվել: Օրինակ, հանգուցյալի հիշատակն անհամեստ ու ճչացող ձևով հարգելը, հարսանեկան շաբաշը, կրոնական ավանդույթներն ու ծիսակատարությունները և այլն, որոնք մեր իրականությունից պետք է դուրս մղել դաստիարակչական ու բացատրական աշխատանքի միջոցով, մեր ժառանգորդներին կյանքի նկատմամբ այնպիսի հայացք պատվաստել, որ նյութական բարիքները չնշեն մարդուն, այլ ծառայեն նրա ամենավեհ պահանջմունքների բավարարմանը: Միայն մարդու հոգևոր հարստությունն է հիրավի անսահման, թեև այն դրամապանակի մեջ չես դնի: Ինչպես նշվեց կուսակցական վետերանների հետ հանդիպման ժամանակ՝ «ներկայիս երիտասարդների գերակշռող մեծամասնությունը կոմունիստա-

կան շինարարության ակտիվ մասնակիցներ են, հայրերի գործի արժանավոր ժառանգորդներ և շարունակողներ: Բայց այս իսկ ընդհանուր ֆոնի վրա առանձնապես աչք են ծակում խնամառության, աշխատանքային ու հասարակական պասսիվության, անկարգապահության փաստերը... Չի կարող անհանգստություն չհարուցել երիտասարդության միջավայր թափանցող քաղքենիության վտանգավոր բորբոսը»: ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թըվականի հունիսյան պլենումում նշվեց, որ դաստիարակության լավ միջոց է ուսուցումը արտադրական աշխատանքի հետ միահյուսելը: Պետք է հաստատակամորեն ջանալ այնպես անել, որ դպրոցականի հոգում պատվաստվեն օգտակար աշխատանք կատարելու սովորույթը, սերը դրա հանդեպ: Այդ կարող է լինել ֆիզիկական կամ մտավոր աշխատանք, բայց անպայման իսկական՝ արտադրողական, հասարակությանը անհրաժեշտ աշխատանք:

Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության միության համառուսաստանյան III համագումարում արտասանած **Երիտասարդության միությունների խնդիրները** հայտնի ճառում Վ. Ի. Լենինը հանճարեղորեն կանխագծում էր մեր երկրում մատաղ սերնդի դաստիարակության ու կրթության համակողմանի ծրագիրը: Հին դպրոցի, կրթության և դաստիարակության հին համակարգի ամենամեծ չարիքներից մեկը Լենինը համարում էր նրանց կտրվածությունը կյանքից, պրակտիկայից: Նոր սերունդը, որ պատրաստվում է կյանք մտնել, կոմունիզմ պետք է սովորի ամենից առաջ աշխատանքում, ստեղծարար գործունեության ընթացքում: «Առանց աշխատանքի, առանց պայքարի՝ կոմունիստական բրոշյուրներից ու աշխատություններից կոմունիզմի գրքային իմացությունը բացարձակապես ոչինչ չարժե, քանի որ դա կշարունակեր տեսության և պրակտիկայի հին խզումը, այն հին խզումը, որը հին բուրժուական հասարակության ամենանողկալի գիծն է» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 41, 359—360):

Մեծ առաջնորդը միաժամանակ շեշտում էր, որ կոմունիստները չեն վստահի այն ուսմանը, դաստիարակությանն ու կրթությանը, որը միայն դպրոցի պատերում է ներփակված, կտրված է կյանքից: Մեր կուսակցությունը միշտ էլ ջանացել է հետևողականորեն կենսագործել ու կենսագործում է մատաղ սերնդի դաստիարակության և կրթության մասին լենինյան ավանդները: ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներն ամբողջովին ներթափանցված են լենինյան պահանջների ոգով: Սովետական դպրոցն աճող սերնդի դաստիարակի իր դերը կարող է կատարել միայն այն դեպքում, եթե իր սաներին զինի ո՛չ միայն տեսական գիտելիքներով, որոնք ինքնին չափազանց կարևոր են, այլև գործնական ունակություններով և հմտություններով: Դպրոցի հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների հիմնական իմաստն այն է, որ նա պատրաստի ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում աշխատելու ունակ, սոցիալիստական հասարակարգի սկզբունքների նկատմամբ խորին հավատով, սիրով ու ականձանքով տոգորված մարդիկ և ոչ թե՝ բազմազան գիտելիքներ սերտած, բայց առօրյա աշխատանքից խորշող, աշխատանքի համար անընդունակ փափկասուններ:

Մեր առաջընթացին համապատասխան՝ մըշտապես աճում են ո՛չ միայն անհատի բազմակողմանի զարգացման հնարավորությունները, այլև հասարակության կողմից նրան ներկայացվող պահանջները: Ընդ որում կարևորն այստեղ այն է, որ յուրաքանչյուր մարդու մեջ դաստիարակվի աշխատանքի պահանջմունք, ընդհանուրի բարօրության համար բարեխիղճ աշխատանքի անհրաժեշտության հստակ գիտակցում: Մարդու հասարակական ճանաչումը և նյութական բարեկեցությունը պետք է որոշվեն նրանով, թե նա ինչպե՛ս է աշխատում, ի՛նչ է տալիս հասարակությանը: Այստեղ կարևոր է նաև աշխատանքի գաղափարական կողմը: Հենց աշխատանքում մարդն ստեղծում է ո՛չ միայն նյութական արժեքներ, այլև կոփում է իր անձնական ունակությունները, կամքը, զարգացնում ստեղծագործական ուժերը, իրեն հաստատում որպես մեր իրավակարգի իսկական քաղաքացի:

Մտովի տեղափոխվենք գյուղական դպրոց, որտեղ վիթխարի փոփոխություններ են տեղի ունեցել. վերջին տասը տարում երկրի դպրոցական նոր շենքերի երեք քառորդը կառուցվել է գյուղում, որոնք հագեցված են ժամանակակից սարքավորումներով, կահույքով: Դպրոցն այսօր վերածվել է ժամանակակից գյուղի սոցիալ-կուլտուրական կենտրոնի, որտեղ մատաղ սերունդը հնարավորություն ունի ստանալու լիարժեք միջնակարգ կրթություն: Իսկ նրանք, ովքեր ավարտում են ութնամյակը, ուսումը շարունակում են պրոֆտեխուսումնարաններում կամ տեխնիկումներում: Այժմ գյուղից քաղաք տեղափոխվելը երիտասարդ մարդու համար արդեն չի նշանակում ավելի երջանիկ ճակատագիր ընտրել իր համար: Կուսակցական, սովետական և հասարակական կազմակերպությունների նպատակն է միջնակարգի կամ ութնամյակի շրջանավարտներին շահագրգռել գյուղում մնալու և աշխատելու, ստեղծել լավագույն պայմաններ նրանց աշխատանքի և կյանքի համար: Աճող սերնդի կոմունիստական դաստիարակության գործում անուրանալի է գյուղական ուսուցչի անձնուրաց աշխատանքի դերը: Գյուղական դպրոցն այսօր առավել բազմակողմանիորեն է հոգում իր սաների հոգեկան և բարոյագիտական պահանջները, համակում նրանց սիրով հայրենի հողի, հետաքրքրությամբ գյուղատնտեսական աշխատանքի նկատմամբ: Դպրոցականներն այդ գործն սկսում են դասարանում, աշխատանքի պարապմունքների ժամերին և ավարտում դպրոցամերձ հողամասում: Գործում են նաև պատանի բնասերների, քիմիկոսների, կենսաբանների, գյուղատնտեսական տեխնիկա ուսումնասիրողների խմբակներ:

Վերջին տարիներս նշանակալիորեն ընդլայնվել է դպրոցական գյուղատնտեսական մեքենաների պարկը. տրակտորներ, կոմբայններ, գործիքներ, առանց որոնց հնարավոր չէ բարձր մակարդակով իրականացնել մասնագիտական ուսուցումը: Եթե երիտասարդությունը չվստահեն տեխնիկան, նրան դժվար է ընդգրկել գյուղատնտեսական աշխատանքում:

Ինչպիսի՞ն կդառնան գյուղի պատանիներն ու աղջիկները, ի՞նչ մասնագիտություն կընտրեն: Այս հարցերը հուզում են ընտանիքին, մանկավարժներին, ողջ հասարակայնությանը: Այս առումով դրական փորձ է կուտակվել Աշտարակի շրջանի Ուջան գյուղում: Դպրոցի մանկավարժական կոլեկտիվը և պետական տնտեսության ղեկավարությունը համատեղ կազմում են աշակերտների մասնագիտական կողմնորոշման միասնական պլան, յուրաքանչյուր տարվա և մասնավորապես այս հնգամյակի համար մշակված է սոցիալ-մանկավարժական համագործակցության ծրագիր: Այստեղ նրանց մասնագիտական հետաքրքրությունները ձևավորվում են ուսման և արտադրական պրակտիկայի ընթացքում: Մասնագիտությունների մասին սովորողները կոնսուլտացիա են ստանում դպրոցի մասնագիտական կողմնորոշման կաբինետում, որտեղ տեղադրված հատուկ քարտարանները հուշում են ո՛ւր գնալ սովորելու, որո՛նք են այս կամ այն մասնագիտության առավելությունները, հարազատ տնտեսությունում ի՛նչ հեռանկարներ կան աշխատելու համար և այլն: Այդ ամենն օգնում է, որ երիտասարդությունը գյուղից չհեռանա. պետական տնտեսությունում աշխատողների 70 տոկոսը դպրոցի նախկին շրջանավարտներն են:

Անասնապահությունը համարվում է գյուղատնտեսական արդյունաբերության հարվածային ճակատը: Աշակերտական շատ բրիգադներում ստեղծվում են անասնապահական օղակներ, որոնք զբաղվում են մատղաշ անասունների խնամքով, անասնակերի կուտակմամբ: Ամռանը Սպիտակի շրջանի Արևածագի պետական տնտեսության աշակերտական բրիգադի անդամները «հանդգնեցին» մրցության հրավիրել իրենց հայրերին ու մայրերին և... հաղթեցին: Դպրոցի շատ շրջանավարտներ սիրով աշխատում են հարազատ տնտեսությունում և աշխատանքային առաջին օրից արդեն սկսնակներ չեն, բրիգադի յուրաքանչյուր անդամ մոտիկից ծանոթանում է տնտեսական հարաբերություններին, գործնականում իմանում ինչ է պլանը, նորման, աշխատավարձը, այսինքն՝ ակտիվորեն ձևավորվում է տնտեսական մտածողությունը: Չպետք է մոռանալ, որ տնտեսագիտական դաստիարակությունն ավելի արդյունավետ ու նպատակային է դարձնում գաղափարաքաղաքական, բարոյագիտական և աշխատանքային դաստիարակությունը: Այդ ամենը նպաստում է, որ աճող սերունդը գիտակցորեն և զգոն վերաբերվի մասնագիտություն ընտրելու գործին, փոքր տարիքից հարգի ժողովրդական ունեցվածքը: Արևածագի դպրոցն այսօր իր սաներին դաստիարակում է որպես հողի հոգատար տերեր ու նրա պաշտպաններ: Բնության նկատմամբ սիրո դաստիարակությունն այստեղ դարձել է հիմք՝ դպրոցականների մեջ էկոլոգիական կուլտուրայի կազմավորման համար: Այդ բանին մեծապես նպաստում են դպրոցի ագրոքիմիական և բնության պատանի պաշտպանների խմբակների պարապմունքները:

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունները» նախագծում նշված է, որ ընթացիկ հարյուրամյակի վերջերի և գալիք հարյուրամյակի սկզբների վիթխարի խնդիրները լուծելու են նրանք, ովքեր այսօր նըստում են դպրոցական նստարանին: Նրանք պետք է շարունակեն մեծ Հոկտեմբերի գործը, նրանց ուսերին է ընկնելու պատասխանատվությունը երկրի պատմական բախտի համար, հասարակության բազմակողմանի առաջադիմության, կոմունիստական շինարարության ուղիով հաջող առաջընթացի համար: Դպրոցի ռեֆորմը, որը նախատեսված է ՍՄԿԿ 1983 թվականի հունիսյան պլենումի ծրագրային հիմնադրույթներին համապատասխան, նպատակ ունի դպրոցի աշխատանքը բարձրացնել զարգացած սոցիալիզմի հասարակու-

թյան պայմաններին և պահանջներին համապատասխանող նոր որակական մակարդակի: Դա մեծ կարևորության գործ է, որը շոշափում է յուրաքանչյուր ընտանիքի, սովետական ողջ ժողովրդի շահերը:

«Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծում հարց է դրվում՝ ուժեղացնել ընտանիքին ցույց տրվող օգնությունը և բարձրացնել նրա պատասխանատվությունը մատաղ սերնդի դաստիարակության գործում: Առաջարկում եմ 5-րդ գլխի 28-րդ կետը լրացնել հետևյալ նախադասությամբ. **Ընտանիքն այն օջախն է, որտեղ երեխան առաջին սոցիալական փորձն է ձեռք բերում, պատկերացում կազմում հասարակական երևույթների մասին:**

Նախագծում չի հիշատակվում ընտանիքում երեխայի օրվա ռեժիմը ճիշտ կազմակերպելու մասին: Մինչդեռ օրվա ռեժիմը դաստիարակության ձև է, միջոց՝ պայմանավորված դաստիարակվողի տարիքով ու նախասիրությամբ և արտաքին մի շարք գործոններով: Ընտանիքն ընտրում է իր համար ամենաընդունելի և նպատակահարմար ռեժիմը:

Սովետական ընտանիքում ձևավորվում է երկրի գիտակից քաղաքացին, որը դաստիարակվում է սոցիալիստական կարգապահության ոգով: Նույն 28-րդ կետում, մեր կարծիքով, անհրաժեշտ է նշել, որ **դա որակապես նոր տիպի կարգապահություն է, վստահության և հարգանքի, բարոյական պարտքի կարգապահություն, մարդկանց միջև հաստատված հասարակական կապերի միանգամայն նոր արտահայտություն:**

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումը խնդիր դրեց նոր սերնդի մեջ արմատավորել ժողովրդական լավագույն ավանդույթները: Դրանք, իրավամբ, դասվում են ժողովրդի հոգևոր հարստությունների թվին և կարևոր դեր են խաղում մշակույթի ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտների վերարտադրության, սերունդների հաջորդականության, հասարակության և անհատի ներդաշնակ զարգացման գործում: Հետևապես առաջարկում եմ նույն 28-րդ կետում նշել, որ **աստիճանաբար արմատավորվում են սովետական նոր բարոյականությունը բովանդակող սովորույթներ, կազմակերպվում է ընտանեկան նոր կենցաղ, ստեղծվում է որոշակի կանոններով ապրելու ռիթմ:**

Դպրոցական ռեֆորմի նախագծի 4-րդ գլուխն ամբողջովին նվիրված է աշակերտների աշխատանքային դաստիարակությանը, ուսուցմանն ու պրոֆեսիոնալ կողմնորոշմանը: Երեխան իր կյանքի առաջին դասերն ընտանիքում է ստանում, աշխատանքի մասին անդրանիկ տեղեկությունները նրան տալիս են ծնողները: Ուրեմն, մասնագիտություն ընտրելու գործում անգնահատելի է ընտանիքի դերը: Առաջարկում եմ այդ նույն գլխի 21-րդ կետում նշել, որ **ծնողները, խորհրդակցելով դպրոցի աշխատողների հետ, հաշվի առնելով հասարակության առաջնահերթ պահանջները, երեխայի հակումներն ու ընդունակությունները, պետք է օգնեն նրան՝ մասնագիտական ճիշտ ընտրություն կատարելու գործում:**

Նրանք, ովքեր այսօր աշակերտ են, դեռահաս, վաղը վետերանների ձեռքից վերցնելու են աշխատանքային էստաֆետը: Նրանք պետք է խորապես գիտակցեն, որ իրենց ամենօրյա աշխատանքով, մասնագիտական գիտելիքների և ունակությունների խորացմամբ պարտավոր են նպաստել հայրենի երկրի առաջընթացին ու վերելքին:

**Լ. ԿԱՆՑՅԱՆ**



# ԱՐԳԱՍԱԼԻ ԿՅԱՆՔ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Ս. Տ. Երեմյանը տասնյակ տարիների իր բեղմնավոր գործունեությամբ էապես հարստացրել է սովետական պատմագիտությունը:

Սովետական պատմագիտության անբակտելի մասը կազմող պատմական քարտեզագրության առաջընթացը պայմանավորված է սովետական պատմաբանների՝ մարքս-լենինյան մեթոդոլոգիայի հիման վրա աղբյուրագիտական և քարտեզագրական նյութերի համակողմանի հետազոտությամբ: Նրանց ջանքերով հետազոտվել են հին ռուսական գծագրեր և քարտեզներ, ստեղծվել են պատմական ատլասներ ու քարտեզներ, դրվել է աղբյուրագիտական-քարտեզագրական ուղղության հիմքը: Սովետական Հայաստանում այդ ուղղության բազմավաստակ հիմնադիրն ու առաջատարն է Ս. Տ. Երեմյանը: Նրա



ջանքերով հայագիտության ոլորտում աղբյուրագիտական-քարտեզագրական ուղղությունն ստացավ մենագրական քարտեզագրության բնույթ: Հատկապես ուշ շրջանում ստեղծած նրա յուրաքանչյուր պատմական քարտեզ իր բովանդակությամբ մի մենագրություն է:

Ս. Երեմյանի մանրակրկիտ աշխատանքի շնորհիվ Հայաստանը կենտրոնական տեղ գրավեց առաջավորասիական ռեգիոնալ պատմական քարտեզներում, որով հայ ժողովրդի պատմական անցյալի տարբեր ժամանակաշրջաններին վերաբերող ուսումնասիրությունների արդյունքներն ավելի առարկայական դարձան: Մոսկովյան գիտնական Բ. Գ. Գալկովիչը իրավամբ գրել է. ««Հետազոտության պատմաքարտեզագրական մեթոդ» հասկացության ձևավորումն ու մեկնաբանությունը անմիջականորեն կապվում են պատմական քարտեզագրության բնագավառում ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ս. Տ. Երեմյանի գիտագործնական աշխատանքի հետ: Գիտնականի առաջին պատմական քարտեզները սովետական ընթերցողը տեսավ 30-ական թվականներին: Այդ քարտեզները, ինչպես և հաջորդները, սկզբնական շրջանում հրատարակվելով կրթական (ուսումնական) նպատակով, ներկայացրին սեղմ ինֆորմացիա հին և միջնադարյան Հայաստանի պատմության խոր ու բազմակողմանի հետազոտությունների արդյունքների մասին՝ քարտեզագրության կիրառմամբ: Առաջին անգամ Հայկական լեռնաշխարհի և դրան հարակից տերիտորիաների ռեգիոնը ներկայացավ դիտողական պատմաքարտեզագրական պատկերի կենտրոնական, այլ ոչ թե ծայրամասային տեղում և բավականին խոշորացված մասշտաբներով: Այն ժամանակվանից մինչև մեր օրերը Ս. Երեմյանի պատմաքարտեզագրական վերականգնումները շարունակում են, մի կողմից՝ զարմացնել ու հիացնել պատմական իրականությանը մոտեցման բարձր աստիճանով և դասական քարտեզագրության նորմերի պահպանմամբ, ու մյուս

կողմից՝ գրավել պատմաբանի պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնող գործելաոճերի ու հմտությունների կիրառման օրինակներով, որոնք առավել կարևոր են հասարակական ու բնական գիտելիքների ինտեգրացման գործում գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում» (Б. Г. Галкович, К вопросу об историко-картографическом методе исследования, «Кавказ и Византия», сборник, вып. 2, Ер., 1980, стр. 48):

Հայ ժողովրդի հին և միջնադարյան պատմության բոլոր բնագավառներն արտացոլվել են Ս. Երեմյանի ստեղծած պատմական քարտեզներում ու քարտեզ-սխեմաներում: Խոսքը լիովին վերաբերում է հայագիտության՝ սոցիալ-քաղաքական, մշակութային, ազգագրական և հնագիտական ոլորտներին: Ակադեմիկոս Վ. Վ. Ստրուվեն Ս. Երեմյանի **Հին Հայաստանի ստրկատիրական հասարակարգը** մենագրության համար գրած առաջաբանում (1953 թ.) նշել է. «Պատմական քարտեզագրությունը գիտության այն բնագավառն է, ուր Ս. Երեմյանն իրեն դրսևորել է որպես առաջնակարգ մասնագետ: Հայաստանի և Անդրկովկասի պատմական աշխարհագրության բնագավառի խոշորագույն մասնագետներից մեկն է նա: Նրան են պատկանում Հայաստանի և Անդրկովկասի մյուս երկրների պատմությանը վերաբերող բազմաթիվ քարտեզներ: Նրա հեղինակությամբ հրատարակված **Հայ ժողովրդի պատմության ատլասը** (Երևան, 1952) արժանի է բարձրագույն գնահատականի: Այդ ամենն արդյունք է նրա կողմից լայն չափով կիրառվող ինչպես պատմաաշխարհագրական, նույնպես և տնտեսաաշխարհագրական՝ տարածական երևույթների քարտեզագրման մեթոդի»: Նշված **Ատլասում** զետեղված են հետևյալ քարտեզները. **Հայկական լեռնաշխարհը, Հայաստանը II—I դդ. մ. թ. ա., Հայաստանը I—IV դդ., Հայաստանը V—VII դդ., Հայաստանը X դ. վերջին և XI դ. սկզբին:** Միաժամանակ այդ **Ատլասը** լույս է տեսել ռուսերեն. դրա երևան գալուն նախորդել էր Ս. Երեմյանի՝ մոտ երեք տասնամյակ տևած քրտնաջան աշխատանքը հայ ժողովրդի պատմության և պատմական աշխարհագրության ու քարտեզագրության բնագավառներում: 30-ական և 40-ական թթ. Ս. Երեմյանի հեղինակությամբ հրատարակվել են հետևյալ քարտեզները. **Անդրկովկասի առևտրական ճանապարհները IV դարի վերջում ըստ Պևտինգերյան քարտեզի և Անանուն Ռավեննացու, Անդրկովկասի պետությունները մ. թ. ա. I դ.—մ. թ. IV դ., Անդրկովկասի պետությունները IV—VII դդ., Անդրկովկասի պետությունները X դ., Անդրկովկասը XI դ. վերջից մինչև XIII դ. սկիզբը** և այլն:

Միջնադարյան հայկական յուրաքանչյուր սկզբնաղբյուր պատմաաշխարհագրական բընույթի տեղեկություններ է պարունակում, որոնք վերաբերում են ինչպես Հայաստանին, նմանապես և հարևան երկրներին: Շնորհիվ հայ միջնադարյան պատմագրության հարուստ ավանդույթների, հայ պատմիչները հիմնականում պահպանում են շարադրվող նյութերի կարգը: Այս գիտական մեթոդը, որ հայ պատմագրության մեջ մշակել էին V դարի մեր պատմիչները, իր զարգացումն ապրեց հետագայում՝ Սեբեոսի, Հովհաննես Դրասխանակերտցու և մյուս պատմիչների երկերում: Շարադրանքի այդ եղանակը ժամանակակից հետազոտողի համար լայն ասպարեզ է բացում պատմական անցքերի լուսաբանման, պատմաաշխարհագրական նյութի վերհանման, համեմատման և քարտեզագրման բնագավառներում:

Հայ պատմիչների հաղորդումների հավաստիությունը ապացուցվում է օտար աղբյուրների հաղորդումներով: Բերենք մի օրինակ, որը վերաբերում է Մեծ Հայքի թագավորության տերիտորիալ կազմին մ. թ. ա. I—մ. թ. I դարերին: Օտար (Պլինիոս Ավագ՝ 23—79, Կլավդիոս Պտղոմեոս՝ 83—168) և հայ (Ագաթանգեղոս՝ V դ., Փավստոս Բուզանդ V դ., Մովսես Խորենացի՝ 410—492) պատմիչների հաղորդած տեղեկությունները բավականին լույս են սփռում այդ հարցի լուսաբանման վրա: Ս. Երեմյանը, մանրամասն հետազոտելով Անանիա Շիրակացու (610—685 թթ.) **Աշխարհացույցը,** կարողացել է ստույգ պարզել խնդրո առարկա ժամանակաշրջանում Մեծ Հայքի թագավորության քաղաքական սահմանները, որից հետո գրում է.

«Մեծ Հայքի թագավորությունն իրենից ներկայացնում էր մի միաձույլ էթնիկական թագավորություն: Այն բնակեցված էր մեկ ժողովրդով, որը խոսում էր մի լեզվով, այդ հայ ժողովուրդն էր, որը, ինչպես վկայում է Ստրաբոնը, միալեզու էր...» (**Հայ ժողովրդի պատմություն»,** հ. 1, Ե., 1971, էջ 707):

Անանիա Շիրակացու հաղորդած տեղեկությունները Մեծ Հայքի թագավորության տարածքի մասին, ինչպես նշում է Ս. Երեմյանը, մնում են անգերազանցելի: Ղեկավարվելով պատմահամեմատական մեթոդով՝ գիտնականը **Աշխարհացույցի** մեջ պարունակված տեղեկությունների լույսի ներքո հետազոտում է Պլինիոս Ավագի հաղորդած տեղեկությունները Մեծ Հայքի թագավորության ներքին վարչական բաժանման մասին: Ս. Երեմյանը որոշ



պարզություն է մտցնում բազմաթիվ վեճեր հարուցած Պլինիոսի հետևյալ հաղորդման առընչությամբ. «Հայաստանը բաժանվում է 120 պրեֆեկտուրաների՝ բարբարոսական անուններով, որոնք կոչվում են ստրատեգիաներ, դրանցից մի քանիսը նախապես առանձին իշխանություններ պետք է եղած լինեն»: Ս. Երեմյանը գտնում է, որ վարչական այդ բաժանման ըսկիզբը դրվել է նախորդ շրջանում, այսինքն՝ Արտաշեսյանների օրոք, նրանցից մեկնումեկի ձեռքով, գուցե և հենց՝ Արտաշես Ա-ի: «Հայկական ստրատեգիաները,— գրել է Ս. Երեմյանը,— համապատասխանել են ավելի շուտ սատրապությունների ստորաբաժանումներին՝ հիպարխիաներին, որոնց թիվը Սելևկյանների մոտ եղել է 72: Այդ դեպքում Հայաստանում պիտի գոյություն ունեցած լինեն նաև ավելի խոշոր, յուրաքանչյուրը մի շարք ստրատեգիաներից բաղկացած միավորներ, որոնք, հավանաբար, կոչվել են սատրապություններ: Թերևս այդպիսի սատրապություններ են Պըտղոմեոսի հիշատակած Հայաստանի քաան մարզերը» (նույն տեղը, էջ 678—679):

Ս. Երեմյանն ամենայն մանրամասնությամբ քննել և գիտական բարձր մակարդակով հայագիտության բնագավառում շրջանառության մեջ...է դրել Պլինիոսի հետևյալ հաղորդումը. «Մեծ Հայքը, որ սկսվում է Պարիադրյան լեռներից (համապատասխանում է Պոնտական— Պարխարյան լեռնաշղթային— Ս. Ե.), ինչպես ասացինք, Կապադովկիայից բաժանված է Եփրատով, և Եփրատից հետո Միջագետքից բաժանված է Տիգրիսով, որը նվազ հայտնի գետ չէ: Այն (Մեծ Հայքը) ծնունդ է տալիս թե՛ մեկին և թե մյուսին և կազմում է սկիզբը Միջագետքի, որը տարածված է երկու գետերի միջև. այնտեղ միջանկյալ տարածությունը բնակեցված է Արոեացի արաբներով (նկատի ունի Արուաստան երկիրը՝ անտիկ հեղինակների Միգդոնիան, որի կենտրոնն էր Մծբին քաղաքը— Ս. Ե.): Այսպիսով, այն ձգում է իր սահմանը մինչև Ադիաբենե, այդ նահանգից բաժանված լինելով լայնակի մի լեռնաշղթայով (անտիկ հեղինակների մոտ կոչվում է Նիփատես— Ս. Ե.). իր ձախ կողմում (Մեծ Հայքը) լայնությամբ տարածվում է մինչև Կյուրոս գետը, անցնելով Արաքս գետից այն կողմ (այս հատվածից Ս. Երեմյանը եզրակացնում է, որ Պլինիոսն իր ձեռքի տակ ունեցել է համապատասխան քարտեզ— Է. Դ.), իսկ իր երկարությամբ (այսինքն՝ արևելքից արևմուտք— Ս. Ե.) տարածվում է մինչև Փոքր Հայք, որից բաժանված է Եվքսինյան Պոնտոս թափվող Ապսարոս գետով (Ճորոխ գետի ստորին հոսանքը— Ս. Ե.) և Ապսարոսին ծնունդ տվող Պարիադրյան լեռներով» (նույն տեղը, էջ 837):

Եվ այսպես, քայլ առ քայլ քննելով, համեմատելով և արժեքավորելով մեզ հասած աղբյուրների տեղեկությունները, Ս. Երեմյանը դրանց քննական վերլուծությունը շարադրում է իր հետազոտություններում, միևնույն ժամանակ մտովի դրանք տեղադրելով քարտեզի վրա: Այնուհետև նա սկսում է քարտեզագրական աշխատանքը: Եվ այստեղ օգնության են գալիս բուն քարտեզագրական աղբյուրները, հատկապես՝ Պտղոմեոսի **Աշխարհագրության ձեռնարկը:** Դրանում պարունակված Հայաստանին վերաբերող տվյալները Ս. Երեմյանը մեծ հմտությամբ կարողացավ համադրել և համեմատել Անանիա Շիրակացու **Աշխարհացույցում** պարունակված տեղեկությունների հետ: Տարիների քրտնաջան աշխատանքի արդյունքը կրկնակի անգամ ոգեշնչող էր. հնարավոր դարձավ ստեղծել ո՛չ միայն Մեծ Հայքի թագավորության քարտեզներ (որոնք վերաբերում են Արտաշեսյանների և Արշակունիների ժամանակաշրջաններին), այլ նաև վերականգնել բնագրի լեզվով և հայերեն թարգմանել Պըտղոմեոսի **Ասիայի երրորդ քարտեզը,** որը բովանդակում է «Կողքիսի, Վիրքի, Աղվանքի, Մեծ Հայքի» քարտեզագրական պատկերը՝ ըստ Պտղոմեոսի կազմած աստիճանացանցի:

Շնորհիվ Ս. Երեմյանի պատմաքարտեզագրական մեթոդի, հնարավոր դարձավ արդի պատմագիտության և քարտեզագրության մակարդակով հետազոտել Պտղոմեոսի և Անանիա Շիրակացու պատմաաշխարհագրական և քարտեզագրական ժառանգությունը: Անանիա Շիրակացու գիտական ժառանգությունը վկայում է նրա հաղորդած տեղեկությունների ճշգրտության մասին: Մաթեմատիկոս, աշխարհագրագետ, աստղագետ, քարտեզագետ, պատմիչ, բնափիլիսոփա Անանիա Շիրակացու աշխատությունների ուսումնասիրությունը կարևոր եզրակացությունների է հանգեցնում, որոնք արժեքավոր են գիտության պատմության շատ բնագավառների համար: Ս. Երեմյանի հետազոտությունների շնորհիվ Անանիա Շիրակացու պատմաաշխարհագրական և քարտեզագրական ժառանգությունը լայն ճանաչում գտավ գիտական հասարակայնության կողմից: Ս. Երեմյանը, բացի քարտեզներից, հրապարակել է հոդվածներ, հանդես եկել զեկուցումներով Միության և միջազգային համաժողովներում: Նրա ջանքերով պատմական քարտեզագրության տեսական կողմը նույնպես բարձրացավ որակական նոր աստիճանի:

Ս. Երեմյանի քարտեզների բացատրությունները մեծ մասամբ գտնում ենք նրա ուսում-

նահիրություններում։ Դրա վառ օրինակն է Պտղոմեոսի վերականգնված քարտեզին տըրված նրա բացատրությունը։

Մեծ Հայքի թագավորության պատմությանը և տարածքին վերաբերող Ս. Երեմյանի աշխատանքների արդյունքը եղավ այն, որ նա իր առաջին ատլասից հետո շարունակեց պատմական քարտեզներ ստեղծել այդ թեմայով։ 1961 թ. լույս տեսած «Հայկական ՍՍՀ ատլասի» (հայերեն և ռուսերեն) պատմական քարտեզների՝ **Ուրարտուի պետությունը և հարևան երկրները մ. թ. ա. VIII—VII դդ., Հայաստանը հելլենիստական ժամանակաշրջանում մ. թ. ա. III—I դդ., Հայաստանը I—IV դդ., Հայաստանը X դ. վերջին և XI դ. սկզբին, Հայաստանը մոնղոլական նվաճումների նախօրյակին, Հայաստանը Ռուսաստանին միավորելու նախօրյակին (1785—1825 թթ), Հայաստանը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի և սովետական իշխանության հաստատման ժամանակաշրջանում (1917—1921 թթ.)** հեղինակը Ս. Երեմյանն է։ Մի հեղինակի կողմից կազմված պատմական քարտեզների ժամանակագրական այդպիսի լայն ընդգրկումը պայմանավորված է պատմական քարտեզագրության առանձնահատկությամբ, որն առավել ցայտուն է դրսևորվում Ս. Երեմյանի աշխատություններում։

Պատմական քարտեզագրությունը, գործ ունենալով տարածական երևույթների հետ, երբ հանդես է գալիս որպես մեկ կոնցեպցիայով գրված բազմադարյան պատմության արտահայտչամիջոց, հետազոտողի առջև քարտեզների դինամիկ շարք ստեղծելու հեռանկար է բացում։ Ահա ինչու Ս. Երեմյանի կազմած յուրաքանչյուր պատմական քարտեզ, անկախ դրա լույս տեսնելու ժամանակից, շարունակությունն է թեմատիկորեն և ժամանակագրորեն իրեն նախորդող քարտեզի։ Պատմագիտության մեջ հայ ժողովրդի պատմության երեմյանական կոնցեպցիան, ելնելով մարքս-լենինյան պատմափիլիսոփայական ուսմունքի մեթոդոլոգիայից, ներառնում է հայ ժողովրդի պատմության բոլոր հիմնական փուլերը։ Այդպիսի լայն ընդգրկումով է բացատրվում նրա կողմից ստեղծված քարտեզների բազմաթեմայնությունը։ Եվ դրանում է Ս. Երեմյանի քարտեզագրական մեթոդի դիալեկտիկական էությունը։ Գիտնականի հետազոտությունների ուղին, անցնելով մասնակիից դեպի ընդհանուրը, կամուրջներ է ստեղծում իրարից հեռու գտնվող դարաշրջանների միջև՝ ընդհանուր շղթայի մեջ դնելով պատմական երևույթները, քարտեզների միջոցով Հայկական լեռնաշխարհի տերիտորիայի վրա վավերացնելով հայ ժողովրդի դարերի խորքից եկող պատմությունը, անհնարին դարձնելով հայոց պատմության կեղծարարների բոլոր ճիգերը։

Ս. Երեմյանի ստեղծած քարտեզները, բըռնելով ժամանակի քննությունը, էտալոնային նշանակություն են ձեռք բերել և որոշ դեպքերում դրանք նույնիսկ հրատարակվում են առանց հեղինակի անվան հիշատակման։ Ս. Երեմյանի ստեղծած քարտեզները տպագրվել և տպագրվում են միութենական բազմահատոր տարբեր հրատարակություններում. **ՍՍՀՄ պատմություն** ակադեմիական հրատարակությունում (1966), **Հին Արևելքի պատմություն** ձեռնարկում և այլ աշխատություններում (История СССР с древнейших времен до наших дней в 12-и томах, т. 1, М., 1966, стр. 191։ Այս հրատարակության հեղինակներից է Ս. Երեմյանը։ История Древнего Востока, М., 1979, Приложение. Карты к учебнику, стр. 7։ Տես նաև Б. Г. Галкович, նշված աշխ., էջ 54)։ Այդ հրատարակություններում օգտագործվել է նաև Ս. Երեմյանի ստեղծած Ուրարտուի քարտեզը։ Ինչպես նշել է Բ. Գալկովիչը, Ս. Երեմյանի կազմած Ուրարտուի քարտեզը երկու նշանակություն ունի. ընդմիջարկող աղբյուրի և պատմագրական ստեղծագործության (Б. Г. Галкович, նշվ. աշխ., էջ 52—53)։

Ս. Երեմյանը երբեք չի մտածել, թե իր ըստեղծած քարտեզները վերջնական են, վերանայման կարիք չեն ունենա։ Զգալով գիտության զարկերակը և համընթաց գնալով գիտության զարգացման հետ, նա իր յուրաքանչյուր հաջորդ քարտեզը, որը վերաբերում է նույն թեմային, հագեցնում է նոր տվյալներով ու եզրակացություններից ստացված արդյունքներով, կատարելով ճշգրտումներ և սրբագրումներ նախորդ հրատարակությունների համեմատ։ Ս. Երեմյանը Ուրարտուի առաջին քարտեզն ստեղծելուց հետո գրել է. «Մեր կողմից կազմված Ուրարտուի քարտեզն արտացոլում է ուրարտագիտության վիճակը մեր օրերում։ Նրա հետագա զարգացումը կհանգեցնի շատ տեղադրությունների վերանայման անհրաժեշտության, սակայն հազիվ թե այդ էական փոփոխություններ մտցնի։ Հիմնական սահմանները և գավառների բաժանումները կարող են փոփոխությունների ենթարկվել միայն դրանց հետագա ճշգրտումների և կոնկրետացման առումով» (Доклады советской делегации на XXV Международном конгрессе востоковедов. Секция III, М., 1960, стр. 311)։ 1980 թ. Ս. Երեմյանը կրկին կազմեց և հրապարակեց Ուրարտուի



պետության (860—590 թթ. մ. թ. ա.) քարտեզը, որտեղ արտացոլվել են հայագիտության, ուրարտագիտության և հնդեվրոպաբանության վերջին տվյալները։

Այդ քարտեզի առանձնահատկություններից մեկն այն է, որ, Վանի թագավորության ժամանակաշրջանից բացի, բովանդակում է տեղեկություններ, որոնք վերաբերում են այն հնագույն ժամանակներին, երբ տեղի էր ունենում հայ ժողովրդի կազմավորումը։ Հիմնըվելով Գ. Ղափանցյանի հետազոտությունների վրա՝ դեռևս 1953 թ. Ս. Երեմյանը գրել է. «Ներկայումս կարելի է ապացուցված համարել, որ Փոքր Ասիայում և Հայկական լեռնաշխարհի տերիտորիայում հնագույն ժամանակներից սկսած ապրել են հնդեվրոպական ընտանիքին պատկանող լեզուներով խոսող ցեղերը։ ...Գր. Ղափանցյանի հետազոտությունները ավելի ու ավելի են մեզ համոզում, որ հայերի նախնիները սերտ կապ են ունեցել խուրիտական աշխարհի հետ։

Հայասա-հայերի ցեղական կազմավորումը դիտելով որպես հայ ժողովրդի հիմք..., մենք հայերի ծագման պրոբլեմը պետք է ուսումնասիրենք պատմական այն պրոցեսի հիմնական երևույթների ֆոնում, որ տեղի է ունեցել Հայկական լեռնաշխարհում բնակվող ցեղերի շրջանում։ Դա նախնադարյան համայնքի քայքայման և դասակարգային հասարակության ծագման շրջանն էր, երբ բարենպաստ պայմաններ էին ստեղծվել էթնիկական մանր կազմավորումների ձուլման և ավելի խոշոր միավորումների գոյացման համար, որը և վերջին հաշվով հանգեցրեց հայ ժողովրդի կազմավորմանը, իսկ դրա հետ միասին՝ նրա լեզվի ստեղծմանը... Հայկական լեռնաշխարհում էթնոգոնիայի (ցեղակազմության) պրոցեսը տեղի էր ունենում այն ժամանակ, երբ առանձնապես ինտենսիվ էին ընթանում ցեղերի ու ժողովուրդների խաչավորման, մասնատման ու անջատման պրոցեսները»։ Ս. Երեմյանի՝ այստեղ պաշտպանած տեսակետի շարունակությունը եղավ Թ. Վ. Գամկրելիձեի և Վ. Վ. Իվանովի հետազոտում առաջ քաշած հիպոթեզը, որի լույսի տակ, անդրադառնալով Գր. Ղափանցյանի հետազոտություններին, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Գ. Ա. Գալոյանը գրում է. «Ուշադրության արժանի է Թ. Վ. Գամկրելիձեի և Վ. Վ. Իվանովի այն եզրակացությունը, որ մի շարք բարբառների ընդհանրության հետ հայոց լեզվի բարբառային ընդհանրությունը ևս արդեն գոյություն է ունեցել ոչ ուշ, քան III հազարամյակը (մ. թ. ա.), և որ հնդեվրոպական համընդհանուր լեզվի բարբառային մասնատումը սկսվել է V—IV հազարամյակում մ. թ. ա.։ «Հայոց ցեղի և լեզվի հիմնական խմորումը», ինչպես մեզ համոզում է Գր. Ղափանցյանը, տեղի է ունեցել Փոքր Հայքում հայասների բնօրրանում, որտեղ նրանք արդեն XV—XIV դարերում (մ. թ. ա.) ցեղային մի ընդհանրություն էին կազմում՝ սկզբնավորելով մի միասնական ժողովուրդ կազմավորվելու պրոցեսը։ Եզրակացությունը պարզ է. հենց այս շրջանից (և ոչ թե մ. թ. ա. VII դարից, ինչպես ընդունված է գրականության մեջ) պետք է հաշվարկվի հայալեզու ցեղերի որպես ժողովուրդ կազմավորվելու պրոցեսի սկիզբը» (Գ. Ա. Գալոյան **Պատմության քառուղիներում**, Ե., 1982, էջ 34—35)։

Ս. Երեմյանը, իր եզրակացություններում անդրադառնալով նախկինում պաշտպանած իր տեսակետին, այժմ ավելի խոր համոզվածությամբ հակված է շեշտելու, որ Հայկական լեռնաշխարհը, լինելով հնդեվրոպական ցեղերի նախահայրենիքի հիմնական մասը, հանդիսացել է հայկական ցեղերի հայրենիքը։ Եվ այս եզրակացությունը նա արդեն արտացոլել է իր ստեղծած Ուրարտուի պետության նոր քարտեզում։ Գիտնականը Հայկական լեռնաշխարհի և դրան հարևան տարածքում նշում է այնպիսի տեղանուններ ու ցեղանուններ (Հայասա, խալդեք, թրակացիներ, գորդիացիներ, ախայոյ և այլն), որոնց տեղադրությունից երևում է, որ Փոքր Ասիայի արևելյան մասը, Հայկական լեռնաշխարհը և Հյուսիսային Միջագետքը եղել են հնդեվրոպական ցեղերի նախահայրենիքը։

Հատկապես հետաքրքրական է «ախայոյ» ցեղանվան հետ կապված Ս. Երեմյանի կռահումը, որը դրական է գնահատել Վ. Ստրուվեն։ «Ես անձամբ,— գրում է Վ. Ստրուվեն վերը նշված «Առաջաբանում»,— ամբողջովին միանում եմ Ս. Տ. Երեմյանի կարծիքին, որ այդ «ա-խայ-ոյները» Կովկասյան լեռների համար սկզբնական «ա»-ի բնորոշ հավելմամբ, հանդիսանում են նույն հայերը և ծագում են հայասա ցեղից։ ...Միգուցե «ախայոյ» էթնիկական անվանը Ս. Տ. Երեմյանի կողմից տրված բացատրությունը ունի ավելի մեծ նշանակություն, քան այն է, ինչ նա ինքը տալիս է»։

Հայ ժողովրդի պատմության հին շրջանին վերաբերող՝ Ս. Երեմյանի հրապարակած քարտեզների հիմքում ընկած են այն բազմաթիվ ձեռագիր վիճակում գտնվող քարտեզները, որոնք նրա քարտեզագրական լաբորատորիայի ոսկե ֆոնդն են կազմում։ Միայն դրանց մի մասի թվարկումը կարող է պատկերացում տալ, թե ինչ ծանրակշիռ գիտական հիմքերի

վրա են ստեղծվում նրա կողմից հրապարակման պատրաստվող պատմական քարտեզները: Օրինակ. Հնդեվրոպական լեզուների տարածման շրջանը մ. թ. ա. IV—III հազարամյակներում, Հայկական լեռնաշխարհի ցեղագրական պատկերը մ. թ. ա. III—II հազարամյակներում, Էգեյա-փոքրասիական ցեղերը մ. թ. ա. II հազարամյակում, Առաջավոր Ասիան մ. թ. ա. XVII—XVI դդ., Միտաննի պետությունը, Արևելյան Միջերկրեայքը մ. թ. ա. XIII—XII դդ., Հայասա-Ազզին և հարևան երկրները մ. թ. ա. XV—XIII դդ., Խաթե-Թորգոմա (Թարխիգամա) երկիրը և հարակից շրջանները մ. թ. ա. XII—VIII դդ., Մանա երկիրը և մերձուրմյան շրջանները, Գամիրա երկիրը, Առասպելական Հայկի և նրա սերունդների բնակեցման վայրերը, Թորգամոսի (Թորգոմի) որդիների բնակատեղիները ըստ հին վրացական ավանդությունների և այլն: Ս. Երեմյանի աշխատություններից կարելի է տեսնել, որ նա Ուրարտուի թագավորության գոյությունը Հայկական լեռնաշխարհի տարածքի վրա դիտում է ոչ թե որպես մի մեկուսացված երևույթ, այլ որպես մի օղակ հայ ժողովրդի հնից եկող բազմադարյան պատմության շղթայում: Բարձր գնահատելով Ս. Երեմյանի ավանդը հայ ժողովրդի հնագույն անցյալի ուսումնասիրության բնագավառում՝ Գ. Գալոյանը գրում է. «Ակադեմիկոս Ս. Տ. Երեմյանը խոշորագույն ծառայություն ունի հայ ժողովրդի պատմության հին շրջանի հարցերի մշակման գործում և ստեղծել է ամբողջ մի դպրոց» (Գ. Ա. Գալոյան, նշված աշխ., էջ 43):

Ս. Երեմյանը մեծ ավանդ ունի նաև ընդհանուր բնույթի պատմաաշխարհագրական քարտեզագրության զարգացման գործում, որի հիմքում ընկած են նրա հետազոտությունները հայագիտության բնագավառում: Իր ստեղծագործական կյանքում նա մեծագույնս պարտական է Անանիա Շիրակացու **Աշխարհացույցի** հետ կապված աշխատանքներին: Ս. Երեմյանը **Հայաստանը ըստ «Աշխարհացույցի»** գրքից և քարտեզից (Երևան, 1963) հետո ձեռնամուխ եղավ **Աշխարհացույցի** սկզբնական բնագրի վերականգնման փորձին: Գիտնականի վերջնական նպատակն է վերստեղծել բնագիրը և դրա հիման վրա կազմված մեզ չհասած **Աշխարհի ատլասը**՝ **Աշխարհացույցը**, որը պարունակել է 15 քարտեզ:

«**Աշխարհացույցի** ուսումնասիրությունը, այսպիսով, վկայում է, որ վաղ միջնադարյան Հայաստանում գոյություն է ունեցել զարգացած քարտեզագրություն, որը նախորդել է արաբական քարտեզագրությանը» (Ս. Տ. Երեմյան, **Աշխարհացույցի** սկզբնական բնագրի վերականգնման փորձ, «Պատմաբանասիրական հանդես», 1972, № 4, էջ 210—211): Ուսումնասիրությունների այս շարքում (տե՛ս նաև ՊԲՀ, 1973, № 1, էջ 238—252, № 2, էջ 261—274) Ս. Երեմյանին հաջողվել է կատարել բազմաթիվ բնագրային սրբագրումներ, բացատրել բնագրում եղած շատ տերմիններ և աշխարհագրական վայրեր, արդի հայագիտության մակարդակով վերականգնել ու թարգմանել բնագրի Հայաստանին վերաբերող հատվածը: **Աշխարհի ատլասի** 15 քարտեզներից մի քանիսն արդեն լույս են տեսել, իսկ մյուսները ձեռագիր վիճակում պատրաստ են: Ս. Երեմյանը **Աշխարհացույցի** բնագիրը և քարտեզները վերականգնելիս մեծագույնս հաշվի է առել նախորդ գիտնականների (Ք. Պատկանյան, Յ. Մարկվարտ, Աշ. Աբրահամյան և ուրիշներ) կատարած աշխատանքը:

**Աշխարհացույցի** քարտեզների և բնագրի վերականգնման հետ մեկտեղ, Ս. Երեմյանը շարունակել է աշխատանքները դրա աղբյուրների հայտնաբերման նպատակով: Նա պարզել է, որ բացի Պտղոմեոսի և Պապպոս Աղեքսանդրացու երկերից, Անանիա Շիրակացին **Աշխարհացույցի** վրա աշխատելիս օգտագործել է նաև Հիերոկլեսի **Սինեկդեմոսը** (Ուղեկից)՝ կազմված 527/8 թթ., որի օգնությամբ հնարավոր եղավ վերականգնել Փոքր Ասիայի (Միջերկրեայք) քարտեզը (տե՛ս ՊԲՀ 1973, № 1, էջ 238): Այդ հարցի կապակցությամբ Ս. Երեմյանը հանդես եկավ զեկուցումով Աթենքում կայացած բյուզանդագիտական միջազգային կոնգրեսում: Անանիա Շիրակացու **Աշխարհացույցի** հիմնական աղբյուրը մընում է Պտղոմեոսի աշխատությունը: Դրա հետ մեկտեղ Անանիա Շիրակացին զգալի չափով ինքնուրույնություն է ցուցաբերել իր հետազոտություններում: Ս. Երեմյանի աղբյուրագիտական աշխատանքի արդյունքը եղավ այն, որ վերականգնելով նաև Պտղոմեոսի քարտեզները (հունարեն), նա կարողացավ բացահայտել այն ինքնուրույնն ու ինքնատիպը, որ գոյություն ունի Անանիա Շիրակացու **Աշխարհացույցում**: Ընդ որում նա կարողացավ ապացուցել, որ այդ ինքնուրույնությունը վերաբերում է ո՛չ միայն Հայաստանի քարտեզին, այլ նաև մյուս երկրամասերին:

Այս առումով կարևոր է Ս. Երեմյանի հետևյալ եզրակացությունը. «Հայաստանից և նրան շրջապատող երկրներից դուրս գտնվող երկրամասերին վերաբերող բաժինները հիմնականում հանդիսանում են Պտղոմեոսի աշխատության համապատասխան գլուխների հա-



մառոտ շարադրանքը, որոնք ունեցել են առանձին քարտեզներ՝ դարձյալ կազմված Պտղոմեոսի քարտեզների հիման վրա: **Աշխարհացույցի** հեղինակը Պտղոմեոսի երկը հագեցնում է նոր նյութերով և համապատասխանեցնում իր ժամանակաշրջանին: Գիտության համար նոր խոսք է Մեծ Հայքի, Վրաց աշխարհի, Աղվանքի, Պարսից աշխարհի, մասամբ և Կողքիսի, Հյուսիսային Կովկասի («Ասիական Սարմատիա») և Փոքր Ասիայի («Միջերկրեայք»), Միջագետքի ու Ասորիքի և, նույնիսկ, Հյուսիսային Աֆրիկայի ծովեզրյա մասի նկարագրությունը, որոնց նվիրված է **Աշխարհացույցի** բնագրի մեծ մասը: Նշված երկրամասերի պտղոմեոսյան նկարագրությունը չի բավարարել հեղինակին, և նա դիմել է այլ աղբյուրների» (Նույն տեղը):

Ս. Երեմյանը գտնում է, որ Մեծ Հայքին, Վիրքին, Աղվանքին և Սասանյան Իրանին վերաբերող գլուխները Անանիա Շիրակացին գրել է VI—VII դդ. գոյություն ունեցած «աշխարհագիր»-ների՝ կադաստրային մատյանների հիման վրա, որոնք սպառիչ կերպով ճըշգրիտ տեղեկություններ են տալիս այդ երկըրների վարչաքաղաքական բաժանումների վերաբերյալ: Ս. Երեմյանն այդ քարտեզները վերականգնում է ժամանակակից քարտեզագրական հիմքի վրա, ղեկավարվելով պատմաքարտեզագրական մեթոդով: Նրա համառ աշխատանքի շնորհիվ հնարավոր եղավ վերջնականապես պարզել, որ ընդարձակ և համառոտ խմբագրություններով մեզ հասած Անանիա Շիրակացու **Աշխարհացույցը** (VII դ. Հայկական աշխարհագրություն) սկզբնապես, բացի այն ժամանակվա հայտնի աշխարհի նկարագրությունը պարունակող աշխարհագրական տեքստից, որպես հավելում ունեցել է նկարագրված բոլոր երկրների աշխարհագրական քարտեզների սիստեմատիկ ժողովածու՝ **Աշխարհացույցը**, որը բովանդակել է «Աշխարհի ատլասը»:

Պտղոմեոսի և Անանիա Շիրակացու երկերի՝ Ս. Երեմյանի կատարած զուգահեռ քննությունը պարզեց, որ բացի քարտեզներից հնարավոր է վերականգնել նաև VII դարի հայկական գլոբուսը, որը Անանիա Շիրակացին ստեղծել էր **Աշխարհի ատլասի** կողքին: Ս. Երեմյանը գտնում է, որ այդ գլոբուսը Անանիա Շիրակացին ստեղծել է մինչև 666 թ., երբ նա իր աշխատությունները ներկայացրեց Անաստաս Ակոռեցի կաթողիկոսին (661—667): Այդ այն ժամանակն էր, երբ իր ավարտին էր մոտենում հայկական վաղ միջնադարյան ճարտարապետական կոթողներից մեկը՝ Զվարթնոցի տաճարի կառուցումը:

Հետաքրքրական է գլոբուսի վերականգնման այն մեթոդը, որ կիրառում է Ս. Երեմյանը: Նա որպես ելակետ է ընդունում Արիստոտել—Պտղոմեոսի երկրակենտրոն ուսմունքից բխող երկրի գնդաձևության գաղափարը, որին անվերապահորեն հետևել է Անանիա Շիրակացին:

Մինչև գլոբուսի մանրակերտի վերականգնումը Ս. Երեմյանը շարադրում է այդ ուղղությամբ տարվող աշխատանքի տեսական հիմքերը: Նա նշում է, որ հին հայկական գլոբուսի վերականգնմանը վերաբերող նյութերը հնարավորություն են ընձեռում վերականգնելու երկրի քարտեզագրական պատկերը, որն ընկած է հյուսիսային լայնության 63° և հարավային լայնության 16°25′ և երկայնությամբ զբաղեցնում է ամբողջ հյուսիսային կիսագունդը (180°): Անանիա Շիրակացին գրում է. «Տիեզերքը նկարագրելու համար պետք է պատկերել մի գունդ, ապա աստղական գործիքով գծանկարել մի շրջագիծ, բաժանել այն երկու մասի, որը կունենա 180 աստիճան. երկրի ահա այս տարածությունն է, որի վրա և տեղադրվում է մարդկային բնակությունը»:

Անանիա Շիրակացին տվյալներ է հաղորդում բնակեցված երկրի, ծովի և ցամաքի, գետային ցանցի մասին: Նա նշում է, որ բացի Պտղոմեոսի երկից իր աղբյուրն է եղել Պապպոս Աղեքսանդրացու **Երկրագրությունը**: Այդ երկերը հիմք են հանդիսացել **Քարտեզ տիեզերացի** համար, որի բովանդակությունը լրիվ համապատասխանում է կազմված գլոբուսի ծանրաբեռնվածությանը:

Ս. Երեմյանը Անանիա Շիրակացու հաղորդած տվյալները տեղադրում է ժամանակակից քարտեզագրական հիմքով կազմված վեցը սեգմենտի վրա, որոնք այնուհետև փակցվում են գնդին: Արդյունքը լինում է Արևելյան կիսագնդի պատկերը: Այդպիսով, Ս. Երեմյանը, կարողացավ ապացուցել, որ Անանիա Շիրակացին ստեղծել է ինչպես **Աշխարհի ատլաս**, նույնպես և Հին հայկական գլոբուս: Այդ երկուսը վառ ապացույց են անտիկ-հելլենիստական և վաղ միջնադարյան հայկական գիտությունների միջև եղած կապերի:

Ս. Երեմյանն իր եռանդը նվիրում է ինչպես գիտությանը, այնպես էլ ապագա գիտնականներ դաստիարակելու գործին: Եթե առաջներում նա այդ զուգահեռաբար իրականացնում էր բուհում դասավանդելու միջոցով, ապա այժմ՝ հիմնականում ասպիրանտուրայի, գիտական կոնսուլտացիաների, բուհական և դպրոցական ատլասներ ու քարտեզներ ըստեղծելու միջոցով:

Ս. Երեմյանի քարտեզագրական մեթոդը բյուրեղացել է նրա գիտաստեղծագործական լաբորատորիայում: Իր մշակած պատմաքարտեզագրական մեթոդով նա ստուգում է իր եզրակացությունները և արծարծած դրույթները, պատկերավոր դարձնելով հետազոտվող գիտական պրոբլեմները: Նա կատարել է բազմաթիվ հայտնագործություններ և ճշգրտումներ հայկական տեղանունների և դրանց տեղադրության, առևտրական երթուղիների, վարչաքաղաքական բաժանումների, միջպետական սահմանների որոշման և այլ ընդհանուր պատմաաշխարհագրական հարցերի բնագավառում: Օրինաչափորեն, հայ ժողովրդի հին և միջնադարյան պատմության հիմնական փուլերը (էթնոգենեզ, հայկական ցեղամիավորումներ, Ուրարտուի պետություն, Երվանդունիների, Արտաշեսյանների, Արշակունիների թագավորություններ, V դարի լուսավորական շարժում և հայ ժողովրդի պայքարը սասանյան, բյուզանդական և արաբական տիրապետության դեմ, Բագրատունիների թագավորությունը, հայկական առանձին իշխանական տների բարձրացումը և այլն) արտացոլվել են Ս. Երեմյանի ստեղծած քարտեզներում: Դրանց հիմքում ընկած են տեսական այն դրույթները, որոնք Ս. Երեմյանը մշակել է հին և միջնադարյան Հայաստանի պատմության բնագավառում. հայ հասարակության պատմության պարբերացումը մարքս-լենինյան մեթոդոլոգիայի հիման վրա (С. Т. Еремян, Опыт периодизации истории Армении феодальной эпохи, «Вопросы истории», 1951, № 7), հին Հայաստանում գոյություն ունեցած ստրկատիրական հասարակարգի բնույթը, սոցիալ-տնտեսական և հասարակական-քաղաքական զարգացման ուղիները ֆեոդալական դարաշրջանում, դասակարգային պայքարի ձևերը և այլն:

Ս. Երեմյանն զգալի աշխատանք է կատարել հայ-վրացական հարաբերությունների և ընդհանուր կովկասագիտության բնագավառներում, որոնք արտացոլվել են նաև նրա կողմից ստեղծված Անդրկովկասին վերաբերող քարտեզներում:

Կովկասագիտությամբ Ս. Երեմյանը կարողացավ զբաղվել շնորհիվ Հայաստանի, Վրաստանի, Աղվանքի, Բյուզանդիայի, Սասանյան Պարսկաստանի ու կովկասյան ժողովուրդների պատմության և պատմական աշխարհագրության փայլուն իմացության: Նրա գիտելիքները հին վրացերենի բնագավառում խորապես օգնում են կովկասագիտությամբ զբաղվելուն: Տարբեր երկրների պատմության առանձին հանգուցային հարցեր Ս. Երեմյանը կարողանում է լուսաբանել այնպես, որ հնարավոր է լինում խորությամբ ուսումնասիրել դրանց հետ առնչվող այն պրոբլեմները, որոնք անմիջականորեն կապված են հայ ժողովրդի պատմության հետ: Դրանով դյուրանում է հարևան երկրների հետ ունեցած Հայաստանի կապերի ուսումնասիրությունը: Այսպես, օրինակ, Յուրի Բոգոլյուբսկուն նվիրված հոդվածում Ս. Երեմյանը պարզեց մի շարք հարցեր, XII դարում հայ-վրաց-ռուսական, հայ-վրաց-բյուզանդական, հայ-վրաց-ղփչաղ-ալանական հարաբերությունների պատմությունից, ինչպես նաև մի շարք հարցեր՝ կապված Զաքարյանների, Մահկանաբերդի Արծրունիների տոհմագրության և պատմության ուսումնասիրության հետ:

Ս. Երեմյանի համար կարևոր են գիտության բոլոր հարցերը, որոնցով ինքն զբաղվում է: Նա կաթիլ առ կաթիլ հավաքում և իր գիտական լաբորատորիայով անց է կացնում բոլոր այն փաստերը, որոնք ծառայում են հայ ժողովրդի պատմության լուսաբանմանը: Հետազոտելով հայերեն, վրացերեն, հունարեն, լատիներեն և այլ լեզուներով պահպանված սկզբնաղբյուրները, ինչպես նաև վիմագիր արձանագրությունները, Ս. Երեմյանն ստեղծում է մնայուն արժույթներ: Ս. Երեմյանի պատմագիտական հետազոտությունների խոշորագույն նվաճումը հանդիսացավ **Հայ ժողովրդի պատմության** 1-ին (1971 թ.) և 2-րդ հատորների համար գրված բաժինները և դրանց համար կազմած պատմական քարտեզները (**Հայ ժողովրդի պատմության** 2-րդ հատորը, որի պատասխանատու խմբագիրն է Ս. Երեմյանը, այժմ տպագրվում է: Այս հատորի 24 գլուխներից՝ Ս. Երեմյանը գրել է Ներածականը և 10 գլուխ):

Ս. Երեմյանը նաև բազմաթիվ պատմական քարտեզներ է կազմել **Հայկական սովետական հանրագիտարանի** համար:

Հանդիսանալով Ն. Մառի և Հ. Օրբելու աշակերտը, շարունակելով Ն. Ադոնցի և Հ. Մանանդյանի գործն ու մշակած ավանդները՝ Ս. Երեմյանն իր հերթին ստեղծել և այժմ գլխավորում է հին և միջնադարյան Հայաստանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պատմության պրոբլեմների հետազոտությունը և պատմական աշխարհագրության ու պատմական քարտեզագրության գիտական դպրոցը:

**Է. ԴԱՆԻԵԼՅԱՆ**

## Դասական ժառանգության արդիականությունը

# ՄԵԾ ԼՈՒՍԱՎՈՐՉԻ ԿՅԱՆՔԻ ԵՎ ԳՈՐԾԻ ՀՈՒՄԱՆԻՍՏԱԿԱՆ ՊԱԹՈՍԸ

ԽԱՉԱՏՈՒՐ ԱԲՈՎՅԱՆԸ XIX դարի առաջին կեսի հայ լուսավորական շարժման ամենականավոր ներկայացուցիչն է, նոր գրականության ու մանկավարժության հիմնադիրը: Իր գրական, հասարակական բազմաբեղուն գործունեությամբ նա մի նոր էջ է բացել հայրենական մշակույթի պատմության մեջ: Աբովյանը վիթխարի, լուսավոր մի դեմք է— բանաստեղծ, վիպասան, դրամատուրգ, պատմաբան, արվեստագետ, լեզվաբան, աշխարհագրագետ, մանկավարժ: Բոլոր բնագավառներում արտահայտած նրա մտքերը, արծարծած խնդիրները ցողված են հայրենասիրության ջերմ շնչով:

Խաչատուր Աբովյանը անցյալ դարի 20-ական թվականների ռուս-պարսկական պատերազմի և Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման պատմական իրադարձությունների ականատեսն ու գեղարվեստորեն առաջին արտացոլողն է: Իր ժողովրդի ազատագրությունը, ճակատագիրն ու բախտը աներկբայորեն նա կապել է ռուս մեծ ժողովրդի հետ: Ռուսական կողմնորոշման հարցը ցայտուն արտահայտություն գտավ Աբովյանի ողջ ստեղծագործության մեջ, մասնավորապես **Վերք Հայաստանի** վեպում: Այն բացառիկ տեղ է գրավում հայ գրականության մեջ, խոր ազդեցություն է գործել սերունդների վրա, տոգորել նրանց հայրենասիրական ու ազատասիրական վեհ գաղափարներով: Այս հենքի վրա էլ ակնբախորեն արտացոլվեց հայ-ռուս ժողովուրդների բարեկամության վեհ գաղափարը: Կարելի է աներկբա ընդունել, որ դա **Վերքի** հիմնաթեման է: Եվ պատահական չէ, որ երկու ժողովուրդների համատեղ թափված արյամբ զոդված սրբազան բարեկամությունը, որը գեղարվեստական վիթխարի ուժով ներբողել է Աբովյանը, տարեցտարի հորդացել, ծովացել և այսօր դարձել է մի հզոր, անխորտակելի, հավիտենական դաշինք: Ամեն անգամ վերընթերցնելով մեծ հայրենասերին՝ վերստին համոզվում ես, որ այդ գետերի ու վտակների ակունքի մոտ կանգնած է եղել ինքը՝ Աբովյանը:

Բարձր գնահատելով Աբովյանի դերը՝ հեղափոխական դեմոկրատ Միքայել Նալբանդյանն իր **Մեռելահարցուկ** անավարտ վեպի ծանոթագրություններից մեկում նշում է, որ **Վերք Հայաստանի** վեպում, որպես մի կախարդական հայելու մեջ, բանաստեղծը ցույց է տալիս հայոց ազգի ընտանեկան կյանքի անշուք ու անմխիթար պատկերները «...տեսնում ենք այդ ապոլոնյան հայելու մեջ հայկական կյանքի մեռած պատկերը, տեսնում ենք պարսիկների բարբարոս վարվեցողությունը մեր խեղճ ազգի հետ, մեր ազգի հարստահարված վիճակը...» (Մ. Նալբանդյան, **Ընտիր երկեր**, հ. 1, ԳԱ, 1953, էջ 279):

Ուշագրավ է Ա. Տերտերյանի **Աբովյանի ստեղծագործությունը** ուսումնասիրությունը, որտեղ գնահատելով Աբովյանի աշխարհայացքը, գրականագետը նշում է, որ Աբովյանը մեծ լուսավորիչ է, որը «մարտնչել է բռնության և ֆեոդալական ճնշման դեմ... Նա դեմ է արտահայտվել կղերին և միստիցիզմին, պաշտպանելով բանականության իշխանությունը»: Նրա իդեալը մարդկայնությունն էր, հումանիզմը: Դուրս գալով նեղ, ազգային և անդրկովկասյան խնդիրների ոլորտից, նա ձեռք է մեկնում ռուս այն լուսավորիչներին, որոնց մասին հիացմունքով է խոսում Լենինը... Նրա նորարարության հիմքը հասարակական կյանքում ժողովրդի տեսակարար կշռի գիտակցումն է: Ժողովուրդը նրա վեպում հանդես է գալիս որպես մի առաջատար, գերազանց ուժ, որպես պատմության կերտող... (տե՛ս Ա. Տերտերյան, **Աբովյանի ստեղծագործությունը**, Ե., Պետհամալսարանի հրատ., 1941, էջ 5—9):

1828 թ. Թուրքմենչայի պայմանագրով Արևելյան Հայաստանն ազատագրվեց պարսկական լծից և միավորվեց Ռուսաստանին:

Այդ բախտորոշ իրադարձությունը հզոր արձագանք գտավ հայ հասարակական-քաղաքական կյանքում: Այդ առիթով Հ. Թումանյանը գրել է. «Եվ «Վերք Հայաստանին» ամենից առաջ նրա համար է սիրելի մեր ժողովրդին, որ հանդիսանում է հրաթափ բերան ամբողջ ազգի բողոքի ընդդեմ ասիական կոպիտ ու խավար բռնակալության, հարազատ թարգման հայի պատմական տրամադրության, մի հին ցանկություն՝ տեսնել ռսին իրենց գլխին տեր— պատմությունը էդ անմոռանալի ժամանակի» (Հ. Թումանյան, **Երկերի ժողովածու,** հ. 6, Հայպետհրատ, 1959, էջ 259):
Ի դեպ, Աբովյանի ռուսասիրությունը, նրա ռուսական կողմնորոշումն ի հայտ է եկել դեռևս **Վերքից** առաջ գրված մի շարք ստեղծագործություններում, ինչպես **Կարօտութիւն Ճախնի վայելչութեանց հայրենեաց իմոց,** որ գրել է 1824 թվականին, Երևանում: Նա վըստահ է և հավատում է, որ ռուս ժողովրդի հետ հաստատված բարեկամությամբ և նրա օգնությամբ իր ժողովուրդը կփրկվի օտար բռնության կապանքներից:

Ոտանավորներից մեկում, որ կրում է **Մուտ Հայկայ ի Հայաստան և արհաւիրք երևակայութեան նորա ի ժամ պատերազմին, որ ի 1826 ամին** խորագիրը, Աբովյանը ռուսական կողմնորոշման իր տրամադրությունն է արտահայտում, շեշտելով այն մեծ խանդավառությունը, որ համակել է բովանդակ հայ ժողովրդին: Քառասուն քառատողից բաղկացած քերթվածում հորդում է ռուս ժողովրդի նկատմամբ տածած իր և հայ աշխատավոր զանգվածների սերն ու խանդաղատանքը:

**Մուտ ի Հայրենիս**-ում ներբողված է ռուս և կովկասյան աշխատավոր ժողովուրդների բարեկամությունը, ժողովուրդներ, որոնք նույնպես հեծում էին պարսկական տիրապետության տակ: Այս առումով բնորոշ է նաև **Վերջին հրաժարական բաջազոր արքային Հերակլի** քերթվածը: Այստեղ պատկերված է վրաց ժողովրդի ծանր վիճակը պարսկական ավերածությունների հետևանքով:

Աբովյանի առաջին իսկ ոտանավորները նվիրված են Հայաստանը ազատագրողներին, բարձրաստիճան զինվորականների (կոմս Պասկևիչին), հոգևորականների (Ներսես եպիսկոպոսին, Կարապետ արքեպիսկոպոսին) և անվանի այլ անձանց: Երիտասարդ հեղինակը ոչ թե նրանց անձնական բարեմասնությունները կամ դիրքն ու պաշտոնն է գովերգում, այլ՝ արարքը, ժողովրդի ազատության գործին նրանց մասնակցությունը: Պատմական այդ անձնավորությունները մեծ դեր են խաղացել այն իրադարձություններում, որոնց ականատեսն ու մասնակիցն է եղել Աբովյանը:

Դրանցից մեկը՝ **Խնդամիտ զգացմունք երախտագէտ Հայկազին յազատութիւն հայրենեաց իւրոց,** նվիրված է Կովկասյան զորքերի ընդհանուր հրամանատար Պասկևիչին, որ արժանացել էր «Երևանի կոմս» տիտղոսին: Դա երախտագետ հայորդու անկեղծ զեղումն է, հորդացող զգացումների արտահայտությունը: Նա գիտե, որ իր ժողովրդի պատմությունն արյունոտ է եղել, որ իր հեռու հեռավոր նախնիները դիմագրավել են և՛ արևելքից, և՛ հարավից, և՛ արևմուտքից եկած ազգերին ու ցեղերին, գիտե նաև, որ տասնամյակներ շարունակ այդ ժողովուրդը ակնդետ սպասել է իր ազատարարներին՝ առաքված հյուսիսից: Ռուսիայի քաջարի որդիների մուտքով կենդանացան Հայաստանի ավերակները. կյանք առան դաշտերն ու անդաստանները, կտրվեց ժողովրդի լացը, փրկության արև ծագեց հյուսիսից:

Այս տարիների բանաստեղծություններում աչքի է ընկնում տաղերի մի փունջ, որ նա գրում է՝ հետևելով իր նախորդներին՝ XVIII դարի հայ լուսավորիչ գրողներ Բաղդասար Դպիրին, Պետրոս Ղափանցուն, Պետրոս Աղամալյանին, Սիմեոն Երևանցուն և ուրիշներին: Վերջիններիս բանաստեղծական արվեստը շատ էր զիջում հայ միջնադարյան տաղերգուների կամ գուսանական տաղերի այն արվեստին, որ ճշմարիտ հիացմունք պիտի պատճառեր համաշխարհային պոեզիայի մեծ գիտակ Վ. Յա. Բրյուսովին՝ կորզելով նրանից զարմանքի ու հիացմունքի տողեր: Դրանք՝ այդ տաղասացները, չունեին նաև Սայաթ-Նովայի զորավոր տաղանդը: Ծատերն ուշագրավ էին պարզապես իբրև անցման շրջանի գրողներ, բանաստեղծներ, որոնք իրենց կարողության սահմաններում երգում էին միջնադարյան մտածողության կապանքներից ազատագրված մարդու ապրումներն ու հույզերը: Թող որ այդ հույզերն անվստահ ու ամոթխած լինեին, բայց սերում էին կյանքից, իսկ ավելի ճիշտ՝ գրքերից պոկվելով՝ մտնում էին կյանք:

Այն, որ բոլորովին անփորձ Աբովյանը հետևում էր իր նախորդներին՝ միանգամայն բնական է: Էականն այն է, որ գնալով իր նախորդների ուղեկցությամբ, նա շարժվում է ոչ թե նրանց հետքերով, այլ համընթաց, իր ոտնահետքերը թողնելով: Գրված լինելով Հայաստանի ազատագրության օրերին կամ դրանից անմիջապես հետո՝ այդ տաղերը տոգորված են նույն բարձր տրամադրությամբ, արտահայտում են բանաստեղծի խնդուն հոգեվիճակը, շրջապատող բնությամբ հիանա-



լու, այդ բնության մեջ գեղեցիկը տեսնելու, գեղեցկությամբ համակվելու անզուսպ ցանկությամբ:

Աբովյանի՝ փոքր կտավի գործերից կա մեկը, որ յուրատեսակ գլուխգործոց է, անգերազանց ո՛չ միայն զգացումների հորդառատությամբ, այլև մտքերի հարստությամբ: Հումանիզմի արտահայտման գեղարվեստական պատմությունն այդպիսի փայլուն էջեր քիչ ունի: **Թուրքի աղջիկը** պատմվածքում մեծ հումանիստ-գրողը ծառանում է պարսկա-տաճկական բիրտ օրենքների, կնոջ ստրկական վիճակի, առհասարակ մարդկային իրավունքի ոտնահարման դեմ: Դա հումանիզմի անհեղագոչ մի մարտահրավեր է, որ հնչում է կընոջ ստրկացման կապակցությամբ: Այստեղ հորդում է Աբովյանի՝ մարդու նկատմամբ տածած անհուն սիրո, նաև կարեկցության զգացումը, զգացում, որը վերանում է մինչև բողոքի ու ցասման՝ ուղղված թրքուհու անլուր ստրկության, նրա տարրական իրավունքների ոտնահարման, մարդկային արժանապատվության անպատում քամահրանքի դեմ: Աբովյանի հումանիզմն այնպե՛ս ուժգին է պոռթկում այստեղ, մոռացության տալով թուրքական ու պարսկական վամպիրների հասցրած վերքերը. նա արտահայտում է այն մեծ գաղափարը, թե մարդուն բնորոշողը ոչ թե ազգությունը կամ կրոնն է, այլ՝ նրա մարդկային էությունը: «Հավատներս մեկ չի, սիրտներս հո մեկ ա, մեր ժամը չէիր գալիս՝ մեկ երկընքի տակի, մեկ երկրի երեսի էիր հո ինձ հետ կենում, ման գալիս. լեզուդ իմը չէր, պատկերդ, հոգիդ հո իմի՞նն էր» (Աբովյան, **ԵԼԺ,** հ. 4, ԳԱ, 1948, էջ 25):

Վեր բարձրանալով այն բոլոր մղձավանջային կոտորածներից ու բռնություններից, որոնց ենթարկվել էր հայ ժողովուրդը, բարձրանալով վրեժխնդրության միանգամայն մարդկային զգացումից, Աբովյանն ապրում է լքված ու որբացած թրքուհու վիճակով, դրսևորելով այնպիսի մարդասիրություն, որը դժվարըմբռնելի էր այդ ժամանակների համար:

Աբովյանի հերոսների բարոյական բարձր հատկանիշները համահնչուն են հայ ժողովրդի ազատատենչ զգացումներին, նրա ջերմ հայրենասիրությանը: Դրանք անբաժանելի են ինտերնացիոնալիզմի գաղափարներից, այդ ժողովուրդների նկատմամբ տածած անկեղծ բարեկամությունից: Այս գաղափարներն ավելի թանձր վրձնումներով են դրսևորվում **Վերք Հայաստանի** վեպում: Ճիշտ է, **Վերքի** գաղափարական առանցքը Արևելյան Հայաստանի ազատագրումն է ռուսների կողմից, հեղինակի կրակված սիրտը ափեափ լցրած հայրենասիրությունը, բայց վեպն ունի նաև երկրորդ լեյտմոտիվը, որ անբաժան է առաջինից: Դա ժողովուրդների բարեկամությունն ու ինտերնացիոնալիզմն է, որոնք առկա են վեպի ողջ հյուսվածքում: Աբովյանի հերոսներից և ոչ մեկը վատ չի արտահայտվում պարսիկի, թուրքի կամ քրդի մասին որպես աշխատավոր մարդու, ընդհակառակը, վեպի բոլոր ազնիվ հերոսներն ըմբոստանում են աշխատավորությանը կեղեքող ամեն տեսակի հարստահարիչների դեմ:

Գիտակցելով հայ եկեղեցու պատմական դերն ազգապահպանության գործում, այսուամենայնիվ, Աբովյանը մերկացրել է եկեղեցու արատները, պաշտոնյաների չարաշահությունը: **Վերք Հայաստանի** վեպում գյուղացի Հարությունի լեզվով Աբովյանը քողազերծում է հոգևորականության արատավոր կողմերը: **Վերքում** քննադատվում է և կղերականությունը, որ պատուհաս է դարձել ազատագրական պայքարի քաջարի մասնակիցների գլխին: Այս առիթով Աբովյանը ծաղրանքով ձաղկում է հոգևորականությանը՝ մեր ազգի խեղճության պատճառներից մեկն էլ համարելով «ինչ ավետարանի կողքին գրած ա, սուրբ ա...»:

**Վերք Հայաստանի** վեպում արտահայտված այս մտքերն անմիջականորեն բխում են նրա հիմնական գաղափարից և սյուժետային զարգացումից: Սա չի նշանակում բնավ, թե Աբովյանի մտածումները լիովին ամփոփվել են վեպում, որ վեպը նրա «խոստովանությունն» է: Աբովյանի աշխարհայացքը շատ ավելի լայն է, քան կարող ենք այն մակաբերել մի երկից, թեկուզ դա լինի հեղինակի գլուխգործոցը: Անդրադառնանք թեկուզ Անդրկովկասում տիրող վարչակարգի հարցին: Հայկական մարզի վերացմամբ (1840) խորտակվում էին հայկական ինքնավարության այնքան փայփայած պատրանքները: Ազգային առանձնահատկություններն անտեսելով՝ ցարիզմն անցնում էր անսքող գաղութային քաղաքականության: Կարո՞ղ էր Աբովյանը չգիտակցել այդ և չդժգոհել:

Ավելին. և՛ Ա. Բակունցը, և՛ Ս. Հովհաննիսյանը վկայակոչում են Մորից Վագներին, որն իր գրառումներում, օգտվելով Աբովյանից վերցված փաստերից ու մեկնաբանություններից, սրտի ցավով է գրում Հայկական մարզի վարչապետ գեներալ-մայոր Վ. Բեհբութովի դաժան քաղաքականության մասին: «...Մի քանի տարի ռուսական նահանգապետի պաշտոն վարելով, նա վատթարագույնն էր նահանգի գլխին պատուհաս դարձած կողոպտիչներից և բռնակալներից, որոնց ճզմվում է ժողովուրդը...» (Ս. Հովհաննիսյան, **Աբովյան,** Պետհրատ, 1933, էջ 37):

Աբովյանը տեղյակ էր շատ ավելի աղաղակող հակասությունների և այնուամենայնիվ գրեց իր վեպը: Գրեց, քանի որ լավ էր պատկերացնում Արևելյան Հայաստանի ազատագրության դարակազմիկ նշանակությունը: **Վերքը** չէր գրվում պատասխանելու համար առաջին կամ երկրորդ տասնամյակի առաջադրած հարցերին: Հեղինակը յուրովի հաշվետու էր լինում ապագայի առաջ: Եվ ճիշտ այնպես, ինչպես դեկաբրիստներից ամեն մեկը, չբաժանելով իշխող տեսակետը Ռուսաստանի ապագայի մասին, մնում էր իր երկրի քաղաքացին, այդպես էլ Աբովյանը մնում էր ռուսական կայսրության քաղաքացի՝ ունենալով ինքնուրույն մտածողություն ո՛չ միայն ուսման, դաստիարակության, կրոնի, այլև հասարակական կյանքի շատ արմատական հարցերի վերաբերյալ:

Աբովյանագիտական նորագույն ուսումնասիրություններն աներկբա են դարձնում, որ նրա Երևան տեղափոխելը պետք էր դիտել իբր պաշտոնի իջեցում: Երրորդ բաժանմունքի ցուցումով **Նախաշավիղն** այրելը ազատամիտ Աբովյանի նկատմամբ կիրառվող լուրջ քայլ էր, բայց ոչ վերջինը: Դորպատի համալսարանում գաղափարական մկրտություն ստացած Աբովյանը համարվում էր կրթված, դաստիարակված, ջանասեր, բայց իր պաշտոնի համար անհամապատասխան մի մարդ: Երևան տեղափոխվելով՝ նա դուրս չէր մնում քաղաքական հսկողությունից: Այսքանից հետո Աբովյանը չէր կարող փառաբանել ցարական վարչակարգը: Այդ վարչակարգի նկատմամբ իր վերաբերմունքը Աբովյանն արտահայտել է նաև Ն. Աշտարակեցուն գրած նամակում. «...Ընդէ՞ր խաբեն զմեզ կեղծաւոր լրագիրք Կովկասի փառօք և բարեբախտութեամբ ազգի, որ յիսկութեան շինդ է միայն օդաձայն: Զի՞նչ օգուտ և փառք մերազնեայց յազատութենէ Հայաստանեայց, մինչ նույն ինքն Հայաստան առաւել ևս ի խաւարի տգիտութեան դանդաղչէ քան յաւուրս յադաճինս ընդ բռնութեամբ բարբարոսաց» (Աբովյան, ԵԼԺ, հ. 10, ԳԱ, 1961, էջ 295):

Այս տողերը չէին կարող վրդովված մի պահի ասված խոսք լինել: Տասնամյակ շարունակ Աբովյանի միտքն այս ուղղությամբ պիտի աշխատած լիներ: Ի՞նչ էինք երազում ձեռք բերել պարսկական լծից ազատվելով և ինչի՞ ենք ականատես հետայդու: Ո՞ւր են ռուսական այն օրենքները, որ տենչում էինք կամայականությունների երկիր Պարսկաստանում: Չկա ո՛չ հինը, ո՛չ նորը, կա մի հարըստահարություն, որ անուն չունի: Դրա հետ միասին բարքերի ապականություն, վերացումն ամեն տեսակ սրբությունների:

Որոշ հետազոտողներ այն տեսակետն են հայտնել, թե այս նամակը պետք է որ գրված լինի Բելինսկու՝ Գոգոլին ուղղված հըռչակավոր նամակի ազդեցությամբ: Այդ տեսակետը հիմնավորելու համար ոչ մի փաստ չի բերվում, թե ինչպես և ինչ ճանապարհով կարող էր Բելինսկու նամակի պատճենը Երևան հասնել, եթե նույնիսկ ընդունենք, որ Աբովյանի դեկաբրիստ բարեկամները սերտ կապ կարող էին ունեցած լինել Բելինսկու բարեկամների հետ: Էականը երկու նամակների իրոք ապշեցուցիչ նմանությունն է, տրամաբանական այն անցումները, որոնցով հյուսված են երկու գրությունները: Այդպիսի նմանություն հազվադեպ է պատահում: Մենք պետք է ընդունենք, որ իրենց ապրած ժամանակաշրջանում նույնը կամ գրեթե նույնն էին մտածում Բելինսկին և Աբովյանը, քանզի երկուսն էլ իրենց ժողովրդի քաղաքական ու գեղարվեստական իդեալների արտահայտիչներն էին:

Խաչատուր Աբովյանի համար ռուսական կողմնորոշումն իր ժողովրդի դիրքորոշումն էր և ոչ միայն այդ դարի, այլև նախորդ դարերի դիրքորոշումը: Դա հայ ժողովրդի հավաքական ձայնն էր, որ մենք լսում ենք մեծ լուսավորչի շուրթերից:

Աբովյանի աշխարհայացքի վրա, անշուշտ, խոր կնիք են դրել դեկաբրիստները: Հնարավոր է, որ նա վերապահությամբ է մոտեցել դեկաբրիստների տակտիկային, բայց որ մեծ լուսավորիչ-դեմոկրատը հարել է նրանց հումանիստական գաղափարախոսությանը, անվիճելի է. դեկաբրիստների գաղափարների առանցքը ճորտատիրական իրավունքի վերացումը և գյուղացիների ազատագրությունն էր՝ հողով հանդերձ: Նույն կերպ էր մտածում և երիտասարդ, դեռ նոր Դորպատը թողած Աբովյանը:

Դեկաբրիստների և ռուս առաջավոր գրականության ու մշակույթի բարերար ազդեցությունը երևում է նաև Աբովյանի գիտական, գրական-մանկավարժական ողջ գործունեության վրա: Այդ են վկայում ռուս առաջավոր գործիչների, գրողների ու մտածողների նկատմամբ տածած սերը, ջերմ կարծիքները և լուսավորական-հումանիստական հայացքները: 1836 թ. փետրվար—ապրիլ ամիսներին, Մոսկվայում եղած ժամանակ, բարձրաստիճան մեկը առաջարկում է Աբովյանին՝ գրի առնել իր մտորումները Հայաստանի և հայ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական վիճակը բարելավելու ուղիների մասին: Խանդավառված Աբովյանը կատարում է այդ հանձնարարությունը: Նկարագրելով հայ գյուղացու սաստիկ հետամնացությունը, նա կարծես ի



միջի այլոց, գրում է. «Հայ երկրագործը թեև, ի բարեբախտություն յուր, ուրիշի ճորտ չէ և ունի իր սեփական հողակտորը, սակայն ի՞նչ օգուտ կարող է նա ունենալ այդ բոլորից, եթե նրան չտանեն այն ուղիով, որպեսզի նա կարողանա, ինչպես հարկն է, օգտվել այդ առավելություններից» (Աբովյան, **ԵԼԺ**, հ. 8, ԳԱ, 1958, էջ 86):

Որքան էլ միջանկյալ ասված լինի (թերևս դա էլ նրա հեղինակին փրկել է հետագա անախորժություններից), դարձյալ այս միտքը բխում էր նրա ձևավորվող աշխարհայացքից: Այնուհետև նախագծի մեր հեղինակն անցնում է Անդրկովկասյան ժողովուրդների հոգևոր վերածնությունն իրականացնելու հարցին (տե՛ս նույն տեղը, էջ 93):

Չի կարելի չխոստովանել, որ այս նախագիծը վերափոխումների մի լայն ծրագիր էր պարունակում, ծրագիր, որ հենվում էր այն նախադրյալի վրա, թե հայ գյուղացին ազատ է ճորտական կախումից, որ կարող է ընդառաջել արդյունագործության և տեխնիկայի զարգացմանը: Մենք գիտենք, որ խոսքն առավել առաջավոր արտադրաեղանակի մասին է, հենց այն եղանակի, որ արդեն արմատավորվել, արմատավորվում էր Արևմտյան Եվրոպայում: Բայց չէ՞ որ սա հենց այն է, ինչի մասին երազում էին դեկաբրիստները: Չէ՞ որ նրանք ևս կրքոտ լուսավորիչներ էին, պայքարում էին հանուն առաջադեմ գաղափարների կյանքի բոլոր ոլորտներում, նաև մանկավարժության մեջ, գտնում էին, որ լուսավորությունը պետք է դառնա ողջ ժողովրդի սեփականությունը: Բայց վերադառնանք ճորտության հարցին:

**Պատմություն Տիգրանի** մանկավարժական վեպում Աբովյանը կրկին անդրադառնում է սոցիալական այս չարիքին, ու թեև որոշակի նկատառումներով չի ծավալվում, այնուամենայնիվ, այն տեսակետն է զարգացնում, որ ճորտը ևս մարդ է, որ նրա նկատմամբ մարդկային վերաբերմունքը պարտադիր է և ոչ ցանկալի: «Միթե ճորտը հայվանից վատ է: Նա էլ էնպես մարդ է, ինչպես ես: Ինչ անի ինքը, որ ճորտ ա ծնվել: Նրա հերը, որ ազնիվ ըլեր ու իմը՝ ճորտ, կարելի է ես ըլեի նրա ռահաթը» (**ԵԼԺ**, հ. 4, ԳԱ, 1948, էջ 202):

Սա նույն հումանիստ-դեմոկրատն է գրում, նույն անձը, որ չի ճանաչում ո՛չ սոցիալական, ո՛չ էլ ազգային խտրականություն: Նրա համար նույնն է՝ քաղաքակիրթ է մարդը, թե ոչ: Բավական է, որ նա մարդ է:

Աբովյանը քողազերծ է անում ամերիկյան տիրակալների՝ մարդասիրության շղարշով սքողված բռնությունները սևամորթ ժողովրդի նկատմամբ և ցույց տալիս, որ բնիկների նկատմամբ ամերիկյան իշխանությունը նույն բարբարոս բռնակալն է, ինչ պարսկական տիրապետությունը հայերի համար:

Աբովյանը յուր ժամանակի հայ գրականության մեջ առաջինը, Ջորջ Բայրոնի օրինակով, բարձրացրեց իր ձայնը գաղութային ժողովուրդների ճնշման ու ստրկացման դեմ: **Ամերիկու լիս քցիլը, Օրինակ վեհանձնության և հայրենասիրության, Ազատասիրություն, Միխիխպի** ստեղծագործությունների մեջ դատնաշունչ լեզվով ձաղկում է ԱՄՆ-ի, Անգլիայի, Իսպանիայի և այլ երկրների գաղութային քաղաքականությունը, թալանը, կողոպուտը, բռնությունները, «բնիկների ոչնչացումը, ըստրկացումը և հանքերում կենդանի մարդկանց թաղումը»: Աբովյանը ո՛չ միայն մերկացնում էր այդ երկրների գաղութարարների բարբարոսությունները և հակամարդկային արարքները, այլև արտահայտում իր կարեկցությունը և համակրանքը գաղութային ժողովուրդների նկատմամբ:

Նա զայրույթով է խոսում նեգրերի ճընշման ու լլկման մասին. «Ոսկու հարաթը ամենի սիրտն էլ վառեց, ամենն ոտները բարձրացրին, նավ մտան, որ առաջ գնան... Ամենն էլ ուզում էին էնպես աշխար գտնիլ, որ ոսկու գետ ունենար» (Աբովյան, **ԵԼԺ**, հ. 5, ԳԱ, 1950, էջ 237):

Աբովյանը լուսավորիչ էր՝ բառիս բուն իմաստով, առաջադեմ մտածող, իր (և ոչ միայն իր) ժողովրդի ազատության համար ողջակիզվող մի Պրոմեթևս, ժողովուրդների բարեկամության մեծ պատգամախոս, որ իրավամբ դարձավ «վաթսունականների» գաղափարական, գեղարվեստական, բարոյահոգեբանական ըմբռնումների «նախակարապետը», և ինչ երազում, զգում ու ինչին ձգտում էր նա, հիմնարար կերպով արտահայտեցին ու կիրառեցին անցյալ դարի 60-ական թվականների հեղափոխական-դեմոկրատները:

Աբովյանի ստեղծագործական, մանկավարժական-լուսավորական, քաղաքացիական ու մարդկային-անհատական, ինտերնացիոնալ-հումանիստական դիմանկարը նրա գրական հունձքը, մասնավորապես՝ **Վերքը**, բարձր է գնահատել ականավոր մարքսիստ-լենինյան Ստ. Շահումյանը, համարելով այն հազվագյուտ երևույթ, սրբազան ոգևորություն՝ շաղախված հեղինակի արյունով, որն ամբողջովին բանաստեղծության ու անկեղծ ոգևորության արգասիք է...

**Կ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**Խ. Աբովյանի տուն-թանգարանի գիտաշխատող**

# ԳՐՈՂԻ ԴԻՄԱԳԻԾԸ

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳՐՈՂ» հրատարակչությունը լույս է ընծայել սովետահայ ականավոր բանաստեղծ, արձակագիր, դրամատուրգ, հասարակական գործիչ Նաիրի Զարյանի կյանքին ու ստեղծագործությանը նվիրված հանգամանալի մի աշխատություն, որի հեղինակն է գրականագետ Ս. Կ. Դարոնյանը*: Առաջին անգամ չէ, որ հեղինակն զբաղվում է իր նախընտրած գրողի ստեղծագործության ուսումնասիրությամբ: Զարյանին է նա նվիրել մի քանի հոդվածներ, **Նաիրի Զարյան: Ստեղծագործական ակնարկ** գիրքը, որը լույս է ընծայել «Սովետսկի պիսատել» հրատարակչությունը: Անա այդ գիրքն է ընկած ներկա աշխատության հիմքում, որը լրացվել է բանաստեղծի արխիվի նոր, առավել մանրակրկիտ ուսումնասիրությամբ, նախկինում չօգտագործված նյութերով:

Զարյանի գրվածքները գրականագետը վերլուծել է ազգային, ռուս դասական և սովետական գրականության լայն համայնապատկերի վրա, ցույց տվել փոխազդեցություններն ու դրանց դերը նրա ստեղծագործական վերելքի գործում: Գրողի ստեղծագործությունները ներկայացված են ազգային և համամիութենական գրական պրոցեսի ընդհանուր պրոբլեմների հետ սերտ առնչությամբ:

**Երկու դարերի սահմանագծին: Ակունքները.** այսպես է վերնագրված տասը գլուխներից բաղկացած գրքի առաջին գլուխը, ուր Ս. Դարոնյանը հանգամանորեն պատմում է գրողի հայրենի գյուղի, ընտանեկան միջավայրի, ժամանակի քաղաքական-հասարակական իրադրության մասին, վեր է հանում այն հողը, որը հիմք հանդիսացավ գրողի ստեղծագործական կյանքի համար: Տալիս է պատմական մթնոլորտը, ժամանակի հոգեբանությունը: Անդրադառնալով Նաիրի Զարյանի՝ որպես գրողի ձևավորման շրջանին՝ Ս. Դարոնյանն իրավամբ նշում է, որ «Նաիրի Զարյանի վաղ շրջանի քնարերգության մասին գրեթե ոչինչ չի ասված: Մինչդեռ բանաստեղծի ստեղծագործական այդ շրջանը հետաքրքրություն է ներկայացնում գաղափարագեղագիտական զարգացման տեսակետից»: Եվ նա ձգտում է լրացնել այդ բացը, կատարելով կարևոր ճըշգրտումներ:

Իր **Ինքնակենսագրության** մեջ Ն. Զարյանը գրել է, որ 1917—1920 թվականներին ինքը գտնվում էր Վ. Տերյանի ուժեղ ազդեցության տակ: Ճիշտ է հեղինակը. «Վշտի ու թախծի, հիասթափության ու միայնության մոտիվները, որոնք արտացոլում էին գտել Տերյանի քնարերգության մեջ, ծնվել էին բուն իրականությունից և լայն արձագանք էին գտնում ընթերցողների սրտերում...»:

Նաիրի Զարյանի վաղ շրջանի քնարերգության մեջ արտացոլվել են նրա տառապագին ապրումներն ու խոհերը, ծանր վիշտը, դեռևս չամրապնդված հոգու խռովքը, միայնության զգացումը, անբաժան թախիծը, անպատասխան սիրո դառնությունը, պատանեկան երազները... Այդ ամենը երիտասարդ բանաստեղծին կապում էին այսպես կոչված «թախծի ու հուսալքության» քնարերգությանը:

Մանկուց Ն. Զարյանի կյանքն այնպես է դասավորվել, որ այն միշտ գտնվել է մեր ժողովրդի կյանքի «խաչմերուկներում», հանգուցային, տիպական հանգամանքներում, ուստի և բնությունից բանաստեղծական ձիրքով օժտված երգչի պոեզիայում ժողովրդի ողբերգական ճակատագրին միաձուլված է նրա անձնական ճակատագիրը:

20-ական թվականները նրա համար հանդիսացան հոգեկան հասունացման և հանրապետության հասարակական-քաղաքական կյանք մտնելու, սոցիալիստական արվեստի սկըզբունքների յուրացման տարիներ: Ն. Զարյանի ստեղծագործությունը, նրա ողջ գրական կյանքի ընթացքը Ս. Դարոնյանը հետևողականորեն քննում է ժամանակի հասարակական-քաղաքական, գրական կյանքի ֆոնի վրա, հայ գրականության պատմության ընդհանուր շըղթայում, խոսում տիպաբանական ընդհանրությունների մասին: Սա գրքի կարևոր արժանիքներից է:

**Ջրանցքների կապույտ երկրում** բանաստեղծությունների առաջին ժողովածուն արտահայտում էր դարաշրջանի շինարարական պաթոսը: 20-ական թվականների քնարերգությունն էպիկական շնչով լցրեցին նաև նրա պոեմները («Հրանուշ», «Նոյեմբերյան օրերին», «Զին աղջիկը», այնուհետև՝ «Ապստամբություն», «Տաթևի ժայռից»): Սովետահայ քնարերգության մեջ Զարյանն առաջիններից էր, որ դիմեց հեղափոխության և քաղաքացիական պատերազմի թեմային:

Ժողովածուն լույս տեսավ Շիրակի՝ Լենինի անվան ջրանցքի շինարարության ավարտից հետո. ««Շիրակի դաշտերում» բանաստեղծությունը,— իրավամբ գրում է հեղինակը,— դարեր շարունակ արևատապ, քարքարոտ հողի ծարավը հագեցնել երազող հայ ժողովրդի կյանքում տեղի ունեցած այդ պատմական իրադարձության առաջին արձագանքներից մեկն էր»: Այս ժողովածուի մասին խոսելիս գրականագետը քննադատում է Զարյանին ֆուտուրիզմին տուրք տալու, «ջարդված տողով» գրելու, դասական հանգից հրաժարվելու, «նորաբար» գրելու համար: Մի բան, որը հետագայում Զարյանն ինքը համարել է իր «երիտասարդության մեղքը»:

Ապրելով սովետական մարդկանց աշխատանքային սխրանքների խանդավառության մթնոլորտում, նա ձգտում էր քայլել ժամանակի հետ, լինել սոցիալիստական նորի երգիչը: Նրա **Աղաղակը** բանաստեղծությունն այդ տարիների հայկական քնարերգության լավագույն գործերից է, ուր հնչում է ժամանակի մեծ «երաժշտությունը»:

Հ. Հակոբյանի **Բոլշևիկ է Շիր-Կանալը** (1924), **Վոլխովստրոյ** (1925) պոեմներից հետո հնչեց Ն. Զարյանի **Կառուցողները** (1927) պոեմը, որը ջերմորեն ընդունվեց:

**Ռուշանի քարափը** պոեմով նոր փուլ է ըսկըսվում Զարյանի ստեղծագործության մեջ: Գիտենք, որ 20-ական թվականների վերջին, 30-ական թվականների սկզբին գրողը լինում է հանրապետության շատ գյուղերում, որտեղ ծավալվում էր կոլեկտիվացման շարժումը: «Կոլտնտեսային շինարարության ճակատագրի համար ես ինձ պակաս պատասխանատու չէի զգում, որքան ամեն մի շրջկոմի քարտուղար և կոլտնտեսության նախագահ: Կոլտնտեսային շինարարությունը դարձավ իմ անձնական գործը»,— ասել է Ն. Զարյանը:

«...Նաիրի Զարյանն առաջինը եղավ, որ շրջադարձ կատարեց դեպի գրական նոր շարժում,— գրել է Դ. Դեմիրճյանը 1951 թ. իր **Պոետ-տրիբունը** հոդվածում:— Նա կերտեց «Ռուշանի քարափը», որի մեջ լուծեց կոնկրետության և ռեալիզմի հիմնական խնդիրը... Նա տվեց կենդանի իրականության՝ ապրող, գործող մարդիկ, նրանց ճշգրիտ կերպարը»:

Գրական ձիրքին միացել էին հարուստ կենսափորձը, կյանքի իմացությունը: ««Ռուշանի քարափում» նկարագրված մարդկանց կյանքը ես հինգ մատի պես գիտեի, ամեն մի հերոսին գիտեի այնպես, ինչպես կարելի է իմանալ սեփական ընտանիքի անդամներին»,— գրել է Զարյանը: Հենց այս է նրա գործերի հաջողության, կերտած հերոսների կենսունակության, ընթերցողի առջև կենդանի հառնելու գաղտնիքը: Պոեմում հեղինակը ցույց է տվել կուսակցության ղեկավար դերը կոլտնտեսային կարգի հաղթանակի համար մղված պայքարում, վեր հանելով նաև դժվարությունները, այդ գործում տեղ գտած շեղումներն ու սխալները: «Պոեմը Զարյանի՝ որպես էպիկական բանաստեղծի վարպետության աճի վկայությունն է,— եզրակացնում է Դարոնյանը,— ...որը էական դեր խաղաց սովետահայ գրականության մեջ պոեմի ժանրի զարգացման գործում»:

Աշխատության հեղինակն զգալի տեղ է հատկացրել բանաստեղծի՝ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ստեղծած գործերին, ցույց է տվել, որ ինչպես սովետական բոլոր գրողները, Զարյանը ևս իր գրչով ծառայել է սոցիալիստական հայրենիքը ֆաշիզմից պաշտպանելու գործին: Իբրև արկի շառաչ, իբրև մրրիկ հնչում է բանաստեղծի **Մարտակոչը**: Որքա՜ն անկեղծ հույզ կա այս տողերում, որն ասես հայրենիքը կրծքով պաշտպանելու համար ոտքի ելած ժողովրդի սրտի խոսքն է.

*Դու քաղցր ես, հող իմ հայրենի,*
*Չկա քեզնից անուշ անուն,*
*Բայց վտանգի ահեղ ժամին*
*Դու ավելի ես քաղցրանում:*

Նա կամեցել է չորս տոննանոց ֆուգասային ռումբի դղրդոցով գոռալ, ոսոխին ոչնչացնելու, հրեշին զարկելու կոչ անել: Բանաստեղծ-հրապարակախոսի գրական գործունեության այս շրջանն արտահայտող էջերում Դարոնյանը ցույց է տվել, թե ինչպիսի համախմբող, մարտի կոչող, գոռհի տանող նշանակություն ուներ նրա հերոսական, խորապես մարդկային ու հումանիստական քնարերգությունը: Ամենուրեք՝ և՛ ռազմաճակատում, և՛ թիկունքում ընթերցվող, արտասանվող նրա բանաստեղծությունները սովորեցնում էին ատել թըշնամուն, համակում նրա դաժանությունների հանդեպ վրիժառության բուռն զգացումով:

Միաժամանակ հեղինակը նշել է, որ պատերազմի ահեղ օրերին շատ գրողների բազում գործերի հետ Զարյանի՝ զգալի թվով բանաստեղծություններ ևս խաղացին իրենց մեծ դերը, ապրեցին իրենց ժամանակը և մոռացվեցին: Այդ, սակայն, անակնկալ չէր բանաստեղծ-տրիբունի համար: Այդ առիթով հիշելով Մայակովսկու հանրահայտ խոսքերը, նա գրել

* *Սերգեյ Դարոնյան. «Նաիրի Զարյան. կյանքը և գործունեությունը». «Սովետական գրող» հրատ., Ե., 1982:*

է. «Ես ինձ չեմ օրորում այն երջանիկ մտքով, թե ինձ միշտ հաջողվել է մի գրամ ռադիում հանել մեկ տոննա հանքանյութից: Իմ ոտանավորներից շատերն այժմ մոռացված են և չեն դիմանում ժամանակի պահանջներին... Այսօր ես տեսնում եմ, որ այդ ոտանավորները մեռան իբրև շարքային զինվորներ պատերազմի դաշտում՝ կատարելով, անշուշտ, իրենց ազնիվ դերը»:

**Զայն հայրենականի** հեղինակը այդ «շարքային զինվորների» գլուխ կանգնեցրեց այնպիսի հարամնա գործեր, ինչպես՝ **Հայոց լեզուն, Մարտակոչը, Ինչո՞ւ չես խոսում հայերեն** և շատ այլ բանաստեղծություններ, և «սովետական դրամատուրգիայի լավագույն ստեղծագործություններից մեկը՝ Նաիրի Զարյանի բանաստեղծական արվեստի բարձրակետը»՝ **Արա Գեղեցիկ** պատմական դրաման: Այդ և նման ստեղծագործություններն օգնում էին «խոր արմատ, բարձրագնա հոգի» ունեցող մեր ժողովրդի հայրենասիրական ոգու կոփմանը, ազգային հպարտության ու արժանապատվության բարձրացմանը, դաստիարակում նրան անցյալի հերոսական ավանդույթներով:

Այստեղ ճիշտ է ասված, որ «պատմական թեմայի նկատմամբ սովետական գրողների բուռն հետաքրքրությունը Հայրենական մեծ պատերազմի տարիներին առաջ էր եկել հայրենասիրության խոր զգացումից, նախնիների գործերով մեր երկրի մարդկանց հպարտությունից, պատերազմում ՍՍՀՄ ժողովուրդների ցուցաբերած սխրագործության պատմական, սոցիալական և բարոյական ակունքները խորապես ըմբռնելու ձգտումից»: Ս. Դարոնյանը համակողմանի քննարկում է գրողի գլուխգործոցը, ցույց տալիս, որ Զարյանը պատմությունը վերաիմաստավորում է ներկայի բարձունքից, նպատակ ունենալով այն ծառայեցնել ժամանակակից իրականության հրատապ պրոբլեմներին: Ճիշտ է հեղինակը, ընդգծելով, որ հերոսականը, որպես գլխավորը ողբերգականում, կազմում է **Արա Գեղեցիկ** ողբերգության էությունը, և դրանում Զարյանը հետևել է ազգային ավանդույթներին: Ընդ որում, պատերազմի ծանր պայմաններում, երբ ստեղծվում էր պիեսը, հերոսականն առավել ևս մեծ չափով էր մղվում առաջին պլան, սրելով պիեսի արդիական հնչեղությունը: Սքանչելի հայերենով գրված այս գործը Զարյանը համարում է իր լավագույն չափածո ստեղծագործությունը և խոստովանում, որ այն չէր գրվի, եթե ինքը չապրեր հիտլերիզմի նկատմամբ հաղթանակի կրքոտ ցանկությամբ: **Արա Գեղեցիկի** քննությունը, մեր կարծիքով, գրքի ամենահաջողված մասն է:

Նույն բարեխղճությունը, հանգամանալից վերլուծությունն ենք տեսնում գրքի ութերորդ գլխում, ուր խոսվում է **Հացավանի** և **Փորձադաշտի** մասին:

«Համաշխարհային գրականությունը դեռևս շատ տարիներ է ձգտելու ստեղծել մեր օրերի գեղարվեստական էպոպեան: Սովետական գրականությունն ստեղծում է այդ էպոպեայի փառահեղ գլուխները»: Բանաստեղծի այս խոսքերն է իբրև բնաբան ընտրել այդ գլխի համար գրականագետը: **Ռուշանի քարափի**, **Սաքո Միկինյանի** հեղինակը կոլեկտիվացման ժամանակաշրջանի բարդ ու հակասական պրոցեսներին անդրադարձավ դրանք գրելուց շատ տարիներ անց, իր արձակում: Մ. Շոլոխովի **Հերկած խոպանի**, շատ այլ գրողների գործերի հետ մեկտեղ այդ ամենի մասին իր խոսքն ասաց և Ն. Զարյանը՝ **Հացավան** վեպում, որի գործողության ժամանակաշրջանը 1933 թվականն է: «Այժմ գերի եմ արձակին,— գրել է Զարյանը Ս. Գորոդեցկուն,— դեռևս կյանքում երբեք այդքան ուժգին չէի զգացել ստեղծագործական աշխատանքից ստացած հիացմունքի այդպիսի զգացում: Ես այնպես եմ սիրում և ատում իմ հերոսներին, որ ասես նրանք կենդանի մարդիկ լինեն»: Ինքը՝ հեղինակը, այսպիսով, բացահայտել է իր գործի հաջողվածության գաղտնիքը:

Հանգամանորեն խոսելով վեպի՝ բանաստեղծի գրած այդ արձակ գործի մասին, արժեքավորելով, բարձր գնահատելով այն, գրականագետն անդրադառնում է վեպի բեմականացմանը, բանիմացորեն քննադատում, լուրջ դիտողություններ է անում դրա վերաբերյալ:

Երգիծանքի ժանրին Զարյանը դիմել է դեռևս 20-ական թվականներից. նա փորձել է կերտել ժամանակակից Խլեստակովի կերպարը **Ընկեր Վարդան Վարազյան** երգիծական պոեմում: Նա դիմել է և երգիծանքի ամենադեմոկրատական ժանրին՝ առակներին, որոնցում ծաղրել է մարդկային արատներն ու թերությունները: Մեծ է Զարյանի կատակերգությունների դերը հայ դրամատուրգիայի զարգացման գործում: Ե. Սուրկովը «հայկական Օստապ Բենդեր» է անվանել վարպետորեն կերտված, հասարակ անուն դարձած Բալաբեկին: **Փորձադաշտը**,— գրում է Դարոնյանը,— Ն. Զարյանի՝ կոլտնտեսային գյուղի մասին գրած լավագույն երկերից է: «Նաիրի Զարյանի լավագույն պիեսները (**Արա Գեղեցիկ, Աղբյուրի մոտ, Փորձադաշտ**), անկասկած, կարևոր դեր խաղացին սովետահայ դրամատուրգիայի և ազգային թատրոնի հետագա զարգացման գործում»,— եզրակացնում է հեղինակը:

«...Շատ ժամանակակից կլիներ անցյալի լավ նկարագրությունը՝ ապագայի ուղիները լուսավորելու նպատակով». ասես Մ. Գորկու այս խոսքերն են եղել Ն. Զարյանի ուղենիշը **Պարոն Պետրոսն ու իր նախարարները** և **Երկրորդ կյանքը** գրելիս: Առաջինում նա ներկայացրել է իր պատանեկան շրջանը, հայ ժողովրդի պատմությունը՝ ամենաողբերգական տարիներին: Իսկ երկրորդում՝ անավարտ մնացած կարապի երգում, ինչպես ինքն է գրել, ուզեցել է հյուսել իր կյանքի սև ու սպիտակ թելերից կազմված պարանը, որը «թերևս պետք լինի մեր պատմության քարավանի ուղտապաններին»»:

1958 թ. լույս տեսավ Ն. Զարյանի **Պարոն Պետրոսն ու իր՝ նախարարները**, որը հեղինակը համարել է «պատմահեղափոխական վեպ»՝ ինքնակենսագրական պատմության ժանրի զուգակցմամբ: Նա գրել է. «Այստեղ դուք կգտնեք և՛ իմ կենսագրությունը պատանության շրջանում, և՛ ժողովրդի պատմությունը ամենաողբերգական տարիներին»: Քննելով վեպը, որն ընդգրկում է 1918 թ. ապրիլից մինչև 1919 թ. ապրիլն ընկած ժամանակամիջոցը, գրականագետը գրում է. «Ընդամենը մեկ տարի: Բայց ինչպիսի՜ սահմռկեցուցիչ իրադարձություններով էր լի այդ տարին Հայաստանի պատմության մեջ— թուրքական զորքերի ուխտադրուժ ներխուժում, դաշնակների տիրապետություն, խմբապետների ու մաուզերիստների կամայականություններ...»: Ն. Զարյանը տվել է ժողովրդական աղետի ցնցող պատկերը, աղետ, որն այդ ժամանակ ընդգրկել էր ողջ Հայաստանը, այն դարձնելով գաղթականների ու որբերի երկիր, քաղցի ու ավերածության, նոր ջարդերի ու դառն արցունքների երկիր...

Անցնելով **Սասնա Դավիթ** վիպակի հայկական առաջին արձակ վերաշարադրանքի քննությանը, Ս. Դարոնյանն իրավամբ գտնում է, որ հեղինակը պահպանել է ո՛չ միայն էպոսի չորս ճյուղերի սյուժետային հիմնական գծերը, այլև, որ գլխավորն է, վերարտադրել է էպիկական պատումի ժողովրդական ոգին, որը մարմնավորված է էպոսի գործող անձանց բնութագրության, լեզվի, շարադրանքի ոճի մեջ...

Մեծ է Զարյանի դերը նաև որպես բանաստեղծ-թարգմանիչ: Թարգմանությունը նա համարում է ժողովուրդների հոգևոր հաղորդակցման ու մերձեցման միջոց: Հրապուրված ռուսական դասական գրականությամբ, նա թարգմանել է Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի, Բրյուսովի, Եսենինի, Մայակովսկու և այլոց բանաստեղծությունները: Նա թարգմանում էր և ժամանակակից գրողների, որոնց հետ սերտ բարեկամական կապերի մեջ էր:

Աշխատության մեջ Ս. Դարոնյանն զգալի տեղ է հատկացրել կոմունիստ-բանաստեղծի խմբագրական-ժուռնալիստական, հասարակական-կազմակերպչական աշխատանքին: Դեռևս 1929—1931 թթ. նա եղել է «Աշխատանք», «Անաստված» ամսագրերի, ապա Հայաստանի պրոլետգրողների միության օրգան «Գրական դիրքերում»-ի պատասխանատու քարտուղարը:

1934 թ. Ն. Զարյանը դառնում է Հայաստանի ՍԳՄ վարչության անդամ, ինչպես և ՍՍՀՄ գրողների միության վարչության անդամ: Նա 1934—1936 թթ. խմբագրել է «Գրական սերունդ» ամսագիրը, մեծ եռանդ ներդրել երիտասարդ գրողների հետ տարվող աշխատանքում: 1936 թ. պարգևատրվել է Լենինի շքանշանով: Առաջին հայ գրողն էր, որ արժանացավ հայրենիքի բարձրագույն պարգևին: 1939 թ. պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով: **Ընտիր բանաստեղծությունների** և **Հավերժական գագաթների** հրատարակմամբ Ն. Զարյանի անունը լայն ճանաչում է գտնում Միությունում:

Եվ աստիճանաբար նա դառնում է հանրապետության գրական-հասարակական կյանքի կենտրոնական դեմքերից մեկը— ՀՍՍՀ գրողների միության վարչության նախագահ, ՍՍՀՄ գրողների միության վարչության անդամ: Պատերազմի տարիներին հայ գրականության զարգացման մարզում ունեցած ծառայությունների համար 1945 թ. պարգևատրվում է Հայրենական պատերազմի երկրորդ աստիճանի շքանշանով:

Հետպատերազմյան տարիներին, մինչև իր կյանքի վերջը նա ղեկավարել է խաղաղության պաշտպանության հայկական կոմիտեն:

Հարթ, միայն ծաղիկներով զարդարված չի եղել Ն. Զարյանի՝ քնարաէպիկական խառնվածքի բանաստեղծի ճանապարհը, բայց բոլոր դեպքերում նա իրեն զգացել է իբրև իր ժողովրդի զինվորը և նրան է տվել իր ողջ տաղանդն ու հոգու կրակը...

Եվ, վերջապես, «Սպասում եմ քեզ» գիրքը: Գրքի վերջին գրախոսականում, գրված հեղինակի մահից անմիջապես հետո, քննադատ և Ն. Զարյանի բանաստեղծությունների ռուսերեն թարգմանիչ Նելլի Սահակյանը նկատում է. «Նա մահացավ: Գիրքը կարդացին: Նրա թախծոտ իմաստից մտածմունքի մեջ ընկան: Բայց այն բանի իսկական ըմբռնումը, թե ինչ էր տեղի ունեցել արդեն ոչ երիտասարդ բանաստեղծի հետ, եկավ ավելի ուշ: Այժմ կրկին վերադարձան գրքին ու իսկույն ներ ուրախ սահմանեցին՝ շռայլ Զարյան, մաշտաբային Զարյան՝ քնարերգու, փիլիսոփա, մտածող, որը դեռևս երեկ ապրում էր մեր կողքին»:

Ս. Դարոնյանի այս աշխատությունը 1978 թ. հրապարակվել է Մոսկվայում, ռուսերեն: Ներկա մենագրությունը փաստորեն այդ գրքի

թարգմանությունն է: Այդ առիթով ուզում ենք ցավով նշել, որ գրքում տեղ են գտել թարգմանական շատ սխալներ, որոնք, անշուշտ, նըվազեցնում են գրքի տպավորությունը, կոտրում հեղինակի՝ թեմայով հրապուրվածության, ոգևորության թափը: Թարգմանական և այլ սխալներին անդրադառնալը զգալի տեղ կգրավեր, ուստի և բավարարվենք միայն նշելով, որ գրքի ավելի բանիմաց ու խնամքով խմբագրության դեպքում կարելի էր շատ բան կանխել:

Մի դիտողություն ևս. ճիշտ է, Զարյանի ըստեղծագործությունները հայ դասականների և ռուս ժամանակակից գրողների առնչություններում քննարկելը, դրանց հետ կատարված համեմատությունները նաև փոն են բազմատեղծի գործերի որպիսությունը ցուցահանելու համար, սակայն կան և անհարկի համեմատություններ ու զուգահեռներ:

Ամփոփենք. Սերգեյ Դարոնյանի այս ամբողջական ու համակողմանի ուսումնասիրությունը Նաիրի Զարյանի հարուստ գրական ժառանգության գիտական իմաստավորման լավագույն օրինակներից է:

**Ա. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

Թբիլիսի

---



**Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ**

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 18.1.84 թ.: Ստորագրված է տպագրության 21.2.84 թ.: ՎՖ 02316: Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16482: Պատվեր՝ 87:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении. Ереван-23, пр. Орджоникидзе, 2.